# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1 ՀՈՒՆՎԱՐ · 1967
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 46-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угнов»-теоретический и политический журнал ЦК КП Армении



## Բովանդակություն

# Содержание





# ՈԳԵՇՆՉՈՂ ՏԱՐԵԹՎԵՐ

Պատմության գիրկն անցավ աշխատանքային սխրանքներով, հերոսապատումներով լի 1966 թվականը: 1966 թվականի ամենանշանակալից իրադարձությունը Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIII համագումարն է, որը հսկայական և բարենպաստ ազդեցություն գործեց մեր երկրի քաղաքական, տնտեսական և հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա: Ոգեշնչված համագումարի պատմական որոշումներով, սովետական ժողովուրդը աշխատանքային նոր սխրագործություն կատարեց. նա 1967 թվականի բնագիծը դուրս եկավ հնգամյակի առաջին տարվա առաջադրանքները պատվով կատարած: Գերակատարվեց արդյունաբերական արտադրանքի թողարկման և աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանները, լուրջ հաջողությունների հասան մեր գյուղատնտեսությունը, գիտությունը, սոցիալիստական կուլտուրան:

Անցնող տարին մեր սոցիալիստական պետության հետագա ամրապնդման ու կարգացման տարին էր: Է՛լ ավելի կոփվեց ու ամրապնդվեց սոցիալիստական կարգի քաղաքական հիմքը՝ բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, մեր երկրի ժողովուրդների բարեկամությունը, բոլոր աշխատավորների գաղափարական միասնությունը, նրանց համախմբվածությունը կոմունիստական կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը:

Սովետական հերոս ժողովուրդը քաղաքական բարձր ակտիվության պայմաններում, ապագայի նկատմամբ անհողդողդ հավատով թևակոխեց 1967 թվականի հոբելյանական տարին՝ իր ուսերին ունենալով մեծ պայքարի և համաշխարհային պատմական հաղթանակների կեսդարյա վաստակ:

Կես դար առաջ՝ 1917 թվականի հոկտեմբերին, լեգենդար «Ավրորայի» համազարկերը բովանդակ աշխարհին ազդարարեցին համաշխարհային պատմության նոր դարագլխի՝ կապիտալիզմի կործանման ու սոցիալիզմի հաղթանակի դարագլխի սկիզբը:

Կես դար է բաժանում մեզ մեծ հոկտեմբերից, սակայն որքան էլ այն, ժամանակի իմաստով, հեռանում է մեզանից, ոչ թե ստվերում, այլ ավելի ու ավելի պայծառորեն է ուրվագծում վեհությունն այն համաժողովրդական, անձնուրաց հերոսության, որը տեղի ունեցավ 1917 թվականի հոկտեմբերին, վառ ու ակնառու են դրսևորվում այն կենդանի թելերը, որոնք հոկտեմբերը կապում են արդիականության հետ, ավելի լիակատար ու խոր է դրսևորվում մարդկության բախտի վրա Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության վիթխարի ներգործությունը:

Նախապատրաստվելով իր նվիրական տոնին՝ Հոկտեմբերյան հեղափոխության 50-ամյակին, սովետական ժողովուրդը ջերմ սիրով ու անհուն երախտագիտությամբ է հիշում իր մեծ առաջնորդին՝ Վլադիմիր Իլյիչ Լենինին, որը մարդկության համար բախտորոշ պատմական մեծ գոտեմարտերի ժամանակ, անհուն հավատով ժողովրդի ստեղծագործական ուժի նկատմամբ, անհողդողդ կանգնած էր հեղափոխության ղեկի մոտ: Նա իր ողջ հիանալի կյանքը, գիգանտ հանճարը և վիթխարի էներգիան ամբողջությամբ նվիրաբերեց ստրկության դարավոր շղթաներից մարդկության ազատագրության վեհ գործին: Սովետական մարդիկ սրտի անհուն թրթիռով, քաղաքական ու աշխատանքային նոր վերելքով են նախապատրաստվում նշելու ճնշված ու հարստահարված մարդկության ամենամեծ բարեկամի, հոկտեմբերյան հեղափոխության առաջնորդի, կոմունիստական կուսակցության և սովետական պետության հիմնադրի՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը, որը լրանում է 1970 թվականին:

Պատմական այդ երկու անմոռաց տարելիցները մոտ ու հարազատ են աշխատավոր ամեն մի մարդու. դրանք դարձել են ոգեշնչման, խիզախության անսպառ աղբյուր և պատահական չէ, որ սովետական ամեն մի մարդ ձգտում է անձնական ներդրում կատարել այդ նվիրական տարեդարձները արժանավայել դիմավորելու գործում:



Սովետական ժողովուրդը, միջազգային բանվոր դասակարգը, ողջ պրոգրեսիվ մարդկությունը նախապատրաստվելով Հոկտեմբերյան հեղափոխության 50-ամյակին, վառ կերպով տեսնում են, թե հոկտեմբերը ինչպիսի վիթխարի էներգիա արթնացրեց բոլոր երկրների ու մայր ցամաքների ժողովրդական մասսաների մեջ, ինչպիսի գիգանտ ուժեր բարձրացրեց սոցիալական ու ազգային-ազատագրության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պատմական պայքարում:

Հոկտեմբերյան հեղափոխությունն անարդարության հին աշխարհի վրայով անցավ որպես մաքրող մի մեծ ամպրոպ՝ ավետելով մարդկության գարունը: Հոկտեմբերով սկսվեց մարդկային հասարակության այն իսկական պատմությունը, որը հանճարեղորեն կանխատեսել էին գիտական կոմունիզմի հիմնադիրները:

Խորապես ուսումնասիրելով և բազմակողմանիորեն վերլուծության ենթարկելով կապիտալիզմի զարգացման օրինաչափությունները, Մարքսը և Էնգելսը հանգեցին այն անվիճելի հետևությանը, որ իր զարգացման անկասելի օրենքների անմիջական ներգործությամբ բուրժուական հասարակարգը անխուսափելիորեն և անվերադարձ կերպով մոտենում է իր պատմական ավարտին: Նրանք ոչ միայն գիտականորեն բացահայտեցին այդ ճշմարտությունը, այլև որոշեցին սոցիալիստական հեղափոխության խնդիրները, մատնանշեցին նրա շարժիչ ուժերը, հիմնավորեցին բանվոր դասակարգի մարտական ավանգարդի՝ կոմունիստական կուսակցության ստեղծման անհրաժեշտությունը:

Պատմական նոր դարաշրջանում՝ իմպերիալիզմի կործանման և սոցիալիստական հեղափոխությունների դարաշրջանում, մարքսիստական ուսմունքն իր հետագա ստեղծագործական զարգացումը ստացավ մեծ Լենինի կողմից: Լենինը կռեց ու կոփեց բանվոր դասակարգի գաղափարական կենքը, պատմական նոր իրադրությանը, պրոլետարիատի դասակարգային պայքարի նոր պայմաններին համապատասխան մարքսիստական ուսմունքը հարստացրեց նոր հետևություններով,



պատասխան տվեց դարաշրջանի առաջադրած հրատապ ու կենսական հարցերին: Մարդկությունը Լենինին է պարտական պատմական նոր դարաշրջանում սոցիալիստական հեղափոխության գիտական տեսության համար, տեսություն, որը ճնշված ու հարստահարված աշխատավոր մասսաներին ցույց է տալիս կապիտալիստական ստրկության շղթաներից ազատագրվելու ճշմարիտ ուղին:

Լենինը ոչ միայն խոշորագույն թեորետիկ էր, այլև աննկուն հեղափոխական, այդ բառի բուն իմաստով: Նա հեղափոխության քաղաքական ղեկավարն ու կազմակերպիչն էր: Լենինը հազարավոր թելերով կապված էր ժողովրդի հետ, անբաժանելի էր նրանից, անսահմանորեն հավատում էր նրա հեղափոխական էներգիային ու ստեղծագործական ուժին: Հեղափոխությունները, սովորեցնում էր Լենինը, կատարում են ոչ թե առաջնորդները, կուսակցությունները, այլ դասակարգերը, ժողովուրդը: Հեղափոխությունը ոչ թե փաթաթվում է վերևից, այլ բռնկվում է ժողովրդական մասսաների ընդերքում, կատարվում է նրանց կողմից՝ կուսակցությունների, առաջնորդների ղեկավարությամբ:

Լենինը ստեղծեց և դաստիարակեց հեղափոխության կազմակերպչին ու ղեկավարին, բոլշևիկների պանծալի կուսակցությունը, նրան պինեց աշխարհը վերափոխող մարքսիստական գաղափարներով, քաղաքական դաժան մարտերի բովով նրան առաջնորդեց դեպի հոկտեմբերի փառապանծ հաղթանակը: Աշխատավոր մարդու կենսական շահերին իր նվիրվածությամբ, իմպերիալիստական պատերազմների ու արյունահեղությունների դեմ իր անողոք պայքարով, սոցիալական ու ազգային ամեն կարգի ճնշման ոչնչացման, կապիտալի լուծը թոթափելու, առանց շահագործման հասարակարգ ստեղծելու համար մղվող պայքարում իր խիզախությամբ ու համարձակությամբ, սոցիալիստական շինարարության բնագավառում իր տիտանական գործունեությամբ Լենինի ստեղծած կուսակցությունը նվաճել է ժողովրդական ամենալայն զանգվածների անսահման սերն ու համակրանքը, իրավամբ դարձել է դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճը:

Հոկտեմբերյան հեղափոխությունը հիմքից ցնցեց կապիտալիզմի ամբողջ շենքը: Եթե կես դար առաջ Ռուսաստանը միակ սոցիալիստական երկիրն էր աշխարհում, ապա պատմական կարճ ժամանակամիջոցում հոկտեմբերյան հեղափոխության, մարքսիզմ-լենինիզմի կենսահաստատ գաղափարների ներգործությամբ ազգային-ազատագրական շարժումների, սոցիալիստական հեղափոխությունների հզոր ալիքն արմատական հեղաշրջումներ հարուցեց շատ երկրներում, հիմնովին փոխեց հողագնդի քաղաքական քարտեզը: Աշխարհը պառակտվեց երկու հակադիր համաշխարհային սիստեմների, ըստ որում՝ սոցիալիստական սիստեմի անընդհատ զարգացումն ու հզորացումը դարձել է բովանդակ մարդկության առաջադիմության հիմնական ցուցանիշը: Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը սոցիալական, տնտեսական ու քաղաքական համագործակցությունն է ազատ, սուվերեն ժողովուրդների, որոնք միավորված են շահերի ու նպատակների ընդհանրությամբ, միջազգային սոցիալիստական համերաշխության սերտ կապերով:

Համաշխարհային զարգացումը հաստատեց, որ արդի դարաշրջանում՝ երկու հակադիր հասարակական սիստեմների պայքարի դարաշրջանում, պատմական զարգացման գլխավոր ուղղությունը որոշում են համաշխարհային սոցիալիստական սիստեմը, իմպերիալիզմի դեմ պայքարող ուժերը: Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը միջազգային բանվոր դասակարգի պատմական մեծագույն նվաճումն է, մեր դարաշրջանի գլխավոր հեղափոխական ուժը, խաղաղության, ազգային-

ազատագրության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար պայքարող բոլոր ժողովուրդների ամենահուսալի հենարանը:

Հոկտեմբերյան հեղափոխությունը դրեց ճնշված ժողովուրդների ազատագրության դարագլխի սկիզբը: Ներկայումս աշխարհն ապրում է ազգային-ազատագրական հեղափոխությունների պատմական մեծ դարաշրջան: Այդ հեղափոխությունների հզոր ալիքը սրբում, տանում է գաղութային ամոթալի սիստեմը, քայքայում իմպերիալիզմի հիմքերը: Արդեն համարյա ամբողջ Ասիան ու Աֆրիկան դեն են նետել գաղութային ստրկության շղթաները, դա ժողովուրդների մեծագույն նվաճումն է իմպերիալիզմի դեմ նրանց ազատագրական պայքարում: Նախկին գաղութների և կիսագաղութների տեղում առաջացել ու առաջանում են երիտասարդ սուվերեն պետություններ, որոնց ժողովուրդները թևակոխել են իրենց զարգացման նոր ժամանակաշրջանը, ոտքի են ելել որպես նոր կյանքի կերտողներ, միջազգային քաղաքականության ակտիվ մասնակիցներ, որպես իմպերիալիզմի կործանման հեղափոխական ուժ:

Հոկտեմբերի գաղափարների, մարքսիզմ-լենինիզմի գաղափարների բարերար ներգործությամբ ամբողջ լայնությամբ և խորությամբ զարգանում է բանվորական շարժումը կապիտալի երկրներում: Սիստեմատիկաբար աճող դասակարգային մարտերը կապիտալիստական աշխարհը պահում են մշտական լարվածության վիճակում, ցնցում, խարխլում են նրա հիմքերը:

Մինչև վերջ հավատարիմ հոկտեմբերի գաղափարներին, մարքսիզմ-լենինիզմի գաղափարներին, Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն ամեն ինչ անում է արդիականության բոլոր հեղափոխական ուժերի՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի, ազգային-ազատագրական շարժումների ընդհանուր ճակատի ամրապնդման համար: Նա անշեղորեն վարում է արդիականության ամենաազդեցիկ քաղաքական ուժի՝ միջազգային կոմունիստական շարժման համախմբվածության, ընդհանուր թշնամու՝ իմպերիալիզմի դեմ պայքարում բոլոր եղբայրական կուսակցությունների գործողությունների միասնության, խաղաղության, դեմոկրատիայի, ազգային-ազատագրության և սոցիալիզմի գործի հաղթանակի կուրս: ՍՄԿԿ-ն բոլոր անհրաժեշտ միջոցները ձեռնարկում է մարքսիզմ-լենինիզմի սկզբունքային հիմքերի վրա միջազգային կոմունիստական շարժման մեջ տարաձայնությունները հաղթահարելու, եղբայրական բոլոր կուսակցությունների ինտերնացիոնալ միասնությունն ամրապնդելու համար:



Հոկտեմբերյան հեղափոխության առաջին տարելիցի առթիվ Լենինն ասում էր. «Աշխատավոր մասսաների լավագույն մարդիկ իրենց կյանքը զոհեցին, ապստամբություն սկսելով իմպերիալիզմից ժողովուրդներին ազատագրելու համար, ժողովուրդների միջև պատերազմները դադարեցնելու համար, կապիտալի տիրապետությունը տապալելու համար, սոցիալիզմի համար»: Մեծ առաջնորդը բոլոր աշխատավորներին կոչ էր անում գնալ հոկտեմբերի հերոսների հետքերով, «հետևել նրանց անվեհերությանը, նրանց հերոսությանը»:

Այժմ, կեսդարյա բարձունքից նայելով իրենց անցած պանծալի ուղուն, սովետական մարդիկ կարող են իրավամբ ասել, որ իրենք մեծ հոկտեմբերի հերոսների արժանավոր ժառանգներն են, որոնք բարձր պարզած մարքսիզմ-լենինիզմի



ամենահաղթ դրոշը, գնացել ու գնում են նրանց ճանապարհով, ովքեր կես դար առաջ բովանդակ մարդկության լուսապայծառ ապագայի հիմքը դրեցին:

Հեշտ և ուղղաձիգ չէր սովետական ժողովրդի անցած ուղին: Երբ սովետների երիտասարդ հանրապետությունը նոր-նոր էր անցել սոցիալիստական խաղաղ շինարարությանը, Վ. Ի. Լենինը սրտի անհուն ցավով էր խոսում երկրի հետամնացության մասին: Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո կուսակցության ու պետության առջև կանգնած էին հրատապ լուծում պահանջող, բայց և միաժամանակ դժվարագույն խնդիրներ: Կուսակցությունից և բանվոր դասակարգից պահանջվում էր իմաստուն, խորաթափանց քաղաքականություն, անհողդողդ կայունություն ու կազմակերպվածություն, հաստատուն հավատ իրենց ուժերի, ժողովրդի ուժերի նկատմամբ: Անհրաժեշտ էր միջազգային չափազանց բարդ իրադրության պայմաններում հետամնաց, ծայր աստիճան քայքայված երկիրը դուրս բերել սոցիալիզմի կառուցման ուղին, և ապահովել նրա հաղթանակը: Այդ ծանր ու դժվարին ժամանակաշրջանում սովետական հսկա նավի ղեկի մոտ էր մեծ Լենինը: Նա մշակեց երկրի արմատական վերափոխման, սոցիալիզմի կառուցման գլխավոր պլանը, որի ուժն ու կենսունակությունը նրա գիտական հիմնավորվածության, իրականության ռեալիստական գնահատման մեջ էր:

Սոցիալիզմի կառուցման լենինյան պլանի հիմնական օղակներն էին երկրի սոցիալիստական ինդուստրացումը, գյուղատնտեսության կոոպերացումը, կուլտուրական հեղափոխությունը:

Հավատարիմ լենինյան իմաստուն պատգամներին, Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը մեր երկրի ժողովուրդների ջանքերը նպատակամղեց այդ մեծ պլանի իրականացմանը: Երբեմնի աղքատ, ավերված ու ծայրահեղ հետամնաց երկիրը, ժողովրդի անձնվեր աշխատանքի շնորհիվ պատմական շատ կարճ ժամանակամիջոցում վիթխարի թռիչք կատարեց դեպի առաջ, դարձավ սոցիալիստական հզոր պետություն, կանգնեց համաշխարհային էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի ավանգարդում: Երկրի արտադրողական ուժերի բուռն աճը, սոցիալիստական կարգի մեծ առավելություններն ավելի ակնառու կլինեն, եթե հաշվի առնենք այն հսկայական դժվարությունները, որոնք պետք է հաղթահարեր ժողովուրդը, եթե աչքի առաջ ունենանք, որ 50 տարուց մոտ երկու տասնամյակը նա ստիպված էր իր ուժերը տալ իմպերիալիստական ագրեսորների ոտնձգությունները ետ մղելու, պատերազմներից ավերված տնտեսությունը վերականգնելու գործին:

**Ջմեռային պալատի գրոհից մինչև տիեզերքի գրոհը**՝ ահա Սովետական Միության ժողովուրդների կեսդարյա տիտանական աշխատանքի հանրագումարը:

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո Լենինն ասում էր, որ սկսելով սոցիալիստական վերափոխումները, մենք պետք է պարզ պատկերացնենք այն նպատակը, որին, վերջին հաշվով, ուղղված են այդ վերափոխումները: Ներկայումս այդ վեհ նպատակի պրակտիկ կենսագործմանն են ենթարկված կուսակցության, պետության ու ժողովրդի բոլոր ջանքերը, նրանց ստեղծարար ողջ գործունեությունը:

Կոմունիստական կուսակցությունն աչալուրջ նայում է ապագային, ժողովրդի առջև բաց է անում առաջընթացի գիտականորեն հիմնավորված ուղիներ, վստահորեն առաջնորդում է նրան դեպի իր բաղձալի նպատակը:

Հենվելով երկրի պետական ղեկավարման իր կեսդարյա փորձի վրա, հաշվի առնելով զարգացման ձեռք բերված մակարդակը և հետագա առաջընթացի հա-

սունացած պահանջները, կոմունիստական կուսակցությունը ժամանակին գտնում է տնտեսական ու քաղաքական նոր պրոբլեմների ճշմարիտ լուծում և հաջողությամբ հաղթահարում է ծագած դժվարությունները:

Լենինյան կուսակցությունը սուբյեկտիվիզմի, կոմունիստական շինարարության մեջ տարերայնության ու կամայականության անողոք թշնամին է: Լենինը մշտապես ուսուցանում էր, որ պրոլետարական կուսակցության համար չկա ավելի վտանգավոր սխալ, քան իր տակտիկան սուբյեկտիվ ցանկությունների վրա կառուցելը: Ղեկավարվելով իր հանճարեղ առաջնորդի ցուցումներով, կոմունիստական կուսակցության Կենտկոմը, առանձնապես վերջին ժամանակաշրջանում, համարձակ կերպով բացահայտեց հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքների նկատմամբ մեկ մոտ տեղ գտած կամայական, սուբյեկտիվիստական վերաբերմունքի փաստերը, դեն շպրտելով այն ամենը, ինչը չէր դիմանում պրակտիկայի ստուգմանը, խոչընդոտում էր մեր առաջընթացին: Կուսակցության և երկրի կյանքում վիթխարի դեր խաղացին ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1964) և հետագա պլենումները, կուսակցության XXIII համագումարը, որոնք նոր մոտեցում մշակեցին կոմունիստական շինարարության խնդիրների լուծման նկատմամբ, սովետական ժողովրդին պինեցին էկոնոմիկայի, քաղաքականության, գաղափարախոսության և կուլտուրայի բնագավառներում գործունեության կոնկրետ ռեալիստական ծրագրով:

Կուսակցության XX!II համագումարի դիրեկտիվների համաձայն գործողության մեջ դրված ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների նոր հնգամյա պլանը կարևոր էտապ կլինի կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, երկրի տնտեսական, պաշտպանական հզորության հետագա ամրապնդման, Սովետական Միության միջազգային հեղինակության է՛լ ավելի բարձրացման գործում:

Մեր երկրում ազգային հարցի հաջող լուծումը հոկտեմբերի գաղափարների հաղթանակն է, սոցիալիզմի մեծագույն նվաճումը: Կամավոր հիմունքներով իրավահավասար ժողովուրդների միավորումն ու համախմբումը մեկ միասնական բազմազգ պետության մեջ, պետական, տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառներում նրանց սերտ համագործակցությունը, նրանց էկոնոմիկայի և կուլտուրայի ծաղկումը լենինյան ազգային քաղաքականության կարևորագույն հանրագումարն է: Կոմունիստական կուսակցությունն ամեն կերպ նպաստում է միութենական բոլոր հանրապետությունների տնտեսական ու կուլտուրական արագ վերելքին, նրանց միջև տնտեսական կապերի ու փոխադարձ օգնության ընդլայնմանը, Սովետական Միության ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը:

Հոկտեմբերի անմահ գաղափարների հաղթանակի կենդանի վկայությունն է Սովետական Հայաստանը: Մեծ հոկտեմբերը ո՛չ միայն հայ ժողովրդին փրկեց ֆիզիկական բնաջնջումից, այլև երբեմնի հետամնաց, հիմնահատակ ավերված ու ծայր աստիճանի աղքատ երկիրը դուրս բերեց սոցիալիզմի կառուցման ուղին: Սովետական Միության եղբայրական ժողովուրդների անշահախնդիր օգնության, կոմունիստական կուսակցության անդուլ հոգատարության, նրա վարած լենինյան իմաստուն ազգային քաղաքականության շնորհիվ հայ ժողովուրդն ապրեց իր իսկական վերածնունդը, կարճ ժամանակամիջոցում իր հանրապետությունը դարձրեց առաջավոր արդյունաբերության, զարգացած գյուղատնտեսության, ծաղկուն կուլտուրայի երկիր:



Սովետների երկիրն իր հերոսական պատմության հիսնամյակը մտավ կենսական ուժերով ու ստեղծագործական անմար էներգիայով լի, պատրաստ հաղթահարելու ծագող բոլոր դժվարությունները, կատարելու նոր հերոսական գործեր ու փառահեղ սխրանքներ: Կուսակցության XXIII համագումարը բոլոր կոմունիստներին, բանվորներին, կոլտնտեսականներին, սովետական ինտելիգենցիային կոչ արեց անմոռաց տարեթվերը՝ Հոկտեմբերյան հեղափոխության 50-ամյակը և Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը նշանավորել սոցիալիստական մրցության լայն ծավալումով, կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում նոր, հոյակապ նվաճումներով, համաշխարհային սոցիալիզմի հզորության ամրապնդումով, միջազգային հեղափոխական շարժման ծավալման գործում արժանի ներդրումով:

Լենինյան կուսակցության կոչը ջերմ արձագանք գտավ մեր լայնածավալ հայրենիքի բոլոր մասերում: Ներկայումս ամենուրեք՝ գործարաններում ու ֆաբրիկաներում, ձեռնարկություններում ու կառույցներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, գիտահետազոտական ինստիտուտներում ու լաբորատորիաներում ծնվում են հայրենասիրական նորանոր նախաձեռնություններ, որոնց նպատակն է հաջողությամբ կենսագործել նոր հնգամյա պլանի առաջադրանքները, գործողության մեջ դնել նորանոր ռեզերվներ, հասնել աշխատանքի արտադրողականության առավել բարձրացման, հասարակական արտադրության բարձր արդյունավետության:

Հայրենասիրական այդ շարժման ավանգարդում են ընթանում նաև սովետական Հայաստանի աշխատավորները: Հանրապետության շքանշանակիր ձեռնարկությունների կոլեկտիվները Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակի առթիվ ստանձնելով նոր, բարձր պարտավորություններ, կոչով դիմեցին հանրապետության բոլոր ձեռնարկությունների կոլեկտիվներին: Այդ կոչը ջերմ արձագանք գտավ աշխատավոր լայն մասսաների շրջանում: Ոգեշնչված պանծալի տարեթվերով, հնգամյա պլանի հոյակապ կանխագծումներով, հանրապետության բանվորները, ինժեներներն ու տեխնիկները, կոլտնտեսականներն ու գյուղատնտեսության մասնագետները, գիտության ու կուլտուրայի գործիչներն իրենց ամենօրյա ջանքերով, եռանդով ու նախաձեռնությամբ ձգտում են ոչ միայն պատվով կատարել առաջադրանքները, այլև լրացուցիչ հնարավորություններ գտնել հնգամյա պլանի գերակատարման համար:

Մեր ժողովրդի առջև կանգնած են վիթխարի, իրոք պատմական խնդիրներ, որոնք սովետական յուրաքանչյուր քաղաքացուց պահանջում են ստեղծագործական ուժերի մոբիլիզացում, բարձր կազմակերպվածություն: Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ մեծ հեղափոխության յուրաքանչյուր տարեդարձը տոնելու լավագույն եղանակը չլուծված խնդիրների վրա ուշադրությունը կենտրոնացնելն է: Հետևելով լենինյան պատգամներին, մեր կուսակցությունը սովետական ժողովրդի նախաձեռնությունը, ստեղծագործական ուժը, բանականությունն ու կամքը նպատակամղում է մեր երկրում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, հասարակական հարաբերությունների հետագա զարգացման ու կատարելագործման, նոր մարդու ձևավորման ու դաստիարակության բարդ և դժվարին պրոբլեմների կենսագործմանը:

Այդ հոյակապ ծրագրի հաջող կենսագործումը նոր, է՛լ ավելի մեծ ու պատասխանատու խնդիրներ է դնում հանրապետության կուսակցական, սովետական, կոմերիտական ու արհմիութենական կազմակերպությունների, կուլտուր-

լուսավորական հիմնարկների, գիտության ու կուլտուրայի աշխատողների առջև: Հանրապետության կուսակցական ու հասարակական կազմակերպությունները պարտավոր են ամեն կերպ խրախուսել, պաշտպանել և ուղղություն տալ մասսաների նախաձեռնությանն ու ստեղծագործությանը, նրանց ուժերը նպատակամղել հոբելյանական տարվա առաջադրանքների ժամանակին ու հաջող կատարմանը: Ներկա պայմաններում հոյակապ կանխագծումների կենսագործումը մեծ չափով կախված է կուսակցական օրգանների կազմակերպական աշխատանքից: Կարևորը ոչ միայն աշխատավորների ջանքերի մոբիլիզացումն է, այլև այնպիսի պայմանների ապահովումը, որոնք հնարավորություն տային պատվով կատարելու առաջադրված խնդիրները:

Հոբելյանական տարում մեծ ու պատվավոր խնդիրներ են կանգնած մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության աշխատողների առջև: Մեր մամուլի այսօրվա գլխավոր թեման ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների կենսագործումն է, սոցիալիստական մրցության ծավալումը՝ սովետական իշխանության հիսնամյակը արժանավայել դիմավորելու համար: Մամուլը պարտավոր է ոչ միայն ընթերցողներին հաղորդել արտադրական նվաճումների մասին, այլև բացատրել սոցիալիստական պարտավորությունների տնտեսական էությունը, վառ և համոզիչ փաստերով վեր հանել դրական փորձը, փառքի վահանին բարձրացնել նրանց, որոնց ջանքերով կենսագործվում է հնգամյակը: Մամուլը, կուլտուր-լուսավորական հիմնարկները, մեր գրողները իրենց գործերում մեծ տեղ պետք է հատկացնեն կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ մեր ժողովրդի անցած կեսդարյա հերոսական ուղուն, ցույց տան դրա համաշխարհային պատմական նշանակությունը, երիտասարդությանը դաստիարակեն սովետական ժողովրդի հեղափոխական ու աշխատանքային հիանալի տրադիցիաներով:

Համաշխարհային զարգացման կեսդարյա պրակտիկան լիովին հաստատեց Հոկտեմբերի գաղափարների ուժն ու կենսունակությունը: Հոկտեմբերի գաղափարների, լենինիզմի գաղափարների անսպառ կենսունակությունը նոր ուժով կհաստատի գալիք պատմական ժամանակաշրջանը:



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

Գ. ԲՐՈՒՏՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր

## ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹՅԱՆ ԲՆՈՒՅԹԸ

Վելլինգտոնի (Նոր Զելանդիա) Վիկտորիա համալսարանում կարդացած դասախոսությունից

*Տրամաբանությունն ամենահին գիտություններից մեկն է: Տրամաբանական այս կամ այն հարցադրումը և նրա տեսականորեն պատասխանելու փորձերն առաջացել են դեռևս հին աշխարհում՝ Արևելքի երկրներում (Հնդկաստանում, Չինաստանում), ապա Հունաստանում: Իսկ 4-րդ դարում (մ.թ.ա.) հին հունական համապարփակ մտածող Արիստոտելի աշխատությունների շնորհիվ տրամաբանությունը ձևավորվել է որպես գիտություն: Պատահական չէ, որ այն հաճախ անվանվում է արիստոտելյան տրամաբանություն:*

*Տրամաբանության հարցադրումներին նվիրված իր աշխատություններում Արիստոտելը նպատակ էր հետապնդում մտածողության ձևերը հետազոտել նրանց կառուցվածքի, կառուցվածքային կապակցությունների տեսակետից և պարզել, թե ինչպիսի՞ պայմանների դեպքում ճշմարիտ նախադրյալներից անհրաժեշտորեն բխում են ճշմարիտ եզրակացություններ: Մտքի ձևերի տրամաբանական կառուցվածքը, նրանց կանոնավորությունը Արիստոտելից հետո էլ տրամաբանության ուսումնասիրության հիմնական նյութն է եղել, տրամաբանություն, որն իր հետագա զարգացման ընթացքում ներառել է նոր տրամաբանական հարցադրումներ և ստացել ձևական տրամաբանություն անունը:*

*Իր սկզբնավորման և զարգացման պատմության ընթացքում տրամաբանությունը, բնականաբար, ջանացել է պատասխանել այն տրամաբանական հարցադրումներին, որոնք ընդհանրացրած ձևով առաջադրել են մտածողության պրակտիկան, մասնավորապես կոնկրետ գիտությունների պահանջները: Որքանով է տրամաբանությանը հաջողվել կատարել իր առջև ծառացած խնդիրները նրա զարգացման տարբեր փուլերում, այդ կոնկրետ քննարկման հարց է: Սակայն հատկանշական է, որ նոր ժամանակաշրջանում ձևական տրամաբանությունը ունեցած հասկացությունների, տրամաբանական հնարների իր միջոցներով սկսեց զգալիորեն ետ մնալ գիտությունների և, հատկա-*

պես, մաթեմատիկայի կողմից առաջադրված տրամաբանական հարցադրումներին բավարարելու պահանջներից:

Դեռևս 16—17-րդ դարերի նշանավոր անգլիացի փիլիսոփա Բեկոնն իր ինդուկտիվ մեթոդն առաջադրեց որպես արիստոտելյան դեդուկցիայի հակադրություն, փորձեց նոր ձևով բացատրել գիտության խնդիրները և նրանց համապատասխանող տրամաբանական հարցադրումները:

Մաթեմատիկայի զարգացման բուռն վերելքը անհրաժեշտաբար պահանջում էր տրամաբանորեն հիմնավորել մաթեմատիկական գիտությունների հիմունքները և, այսպես ասած, հուսալի հիմքի վրա կառուցել արագորեն վեր խոյացող մաթեմատիկական գիտելիքների կոթողը: Այդ էլ իր հերթին պահանջում էր տրամաբանության գիտական ապարատը համակերպել արագորեն զարգացող մաթեմատիկայի պահանջներին:

Մաթեմատիկական տրամաբանության ստեղծման գաղափարը պատկանում է 17—18-րդ դարերի գերմանացի փիլիսոփա և մաթեմատիկոս Վ. Լայբնիցին, որը մտածողությունը փորձեց ներկայացնել որպես հաշիվ: Սակայն որպես գիտություն մաթեմատիկական տրամաբանությունը ձևավորվել է 19-րդ դարում անգլիացի նշանավոր տրամաբան Ջ. Բուլի և նրա հետևորդների շնորհիվ, որոնք տրամաբանության նկատմամբ կիրառել են մաթեմատիկայի մեթոդը, հիմնական ուշադրությունը դարձնելով այդ մեթոդի հիման վրա ձևական-տրամաբանական դեդուկցիայի տեսության մշակմանը: 19-րդ դարի երկրորդ կեսից սկսած Գ. Ֆրեգեյի, Ջ. Պեանոյի, Բ. Ռասելի, Դ. Հիլբերտի և մյուս գիտնականների մոտ մաթեմատիկական տրամաբանությունն առաջին հերթին հանդես է գալիս որպես մաթեմատիկայի հիմնավորման տրամաբանություն, հետազոտում է մաթեմատիկական գիտելիքների բխեցման բուն պրոցեսը նրա կառուցվածքի տեսակետից:

Մաթեմատիկայի տրամաբանական հիմնավորման հետ միասին մեր դարաշրջանում մաթեմատիկական տրամաբանությունը հատուկ ուշադրություն է դարձնում ձևականացման մեթոդի վրա, տրամաբանական սեմանտիկայի, մետատրամաբանության պրոբլեմների վրա (նշանակալից են հատկապես Հիլբերտի, Տարսկու, Կառնապի, Գյոդելի, Մորիսի, Կոտարբինսկու աշխատությունները): Միևնույն ժամանակ ստեղծվում են տրամաբանական նոր համակարգեր (բազմանշանակ տրամաբանություններ, կոնստրուկտիվ տրամաբանություն և այլն):

Այժմ մաթեմատիկական տրամաբանությունն իր զարգացման ուժգին վերելքում է գտնվում: Այդ բնագավառում իրենց զգալի ներդրումն ունեն սովետական գիտնականներից Ի. Ի. Ժեգալկինը, Պ. Ս. Նովիկովը, Ա. Ա. Մարկովը՝ իրենց աշակերտների հետ միասին:



Մաթեմատիկական տրամաբանության կարևոր նշանակությունը նախ և առաջ նրանում է, որ այն, մաթեմատիկական ստույգ մեթոդներով, ձևական-տրամաբանական սիստեմների՝ հաշվումների միջոցով, հետազոտում է կշռադատելու, ապացուցելու բուն պրոցեսը վերջինիս ձևական-կառուցվածքային առանձնահատկությունների տեսակետից: Մաթեմատիկական տրամաբանության այդ խնդիրը, ձևավորվելով մաթեմատիկայի տրամաբանական հիմնա-



վորման նպատակների համար, մաթեմատիկական նախադասությունների հարաբերությունները, ապացուցումների եղանակները ուսումնասիրելու համար, ձեռք է բերել շատ ավելի լայն գիտական նշանակություն:

Սակայն մաթեմատիկական տրամաբանությունը միայն տեսական նշանակություն չունի, ինչպես թվում էր շատերին մինչև վերջին ժամանակներս: Այն ունի մի շարք կիրառական նշանակություններ: Մաթեմատիկական տրամաբանությունն իր հասկացությունների ու հնարների կազմով թափանցել է բազմաթիվ բնագավառներ, որոնցից թվարկենք մի քանիսը. կիբեռնետիկա, մասնավորապես ռելե-կոնտակտային սխեմաներ, մտածական պրոցեսների ավտոմատացում, սխեմաների տրամաբանական սինթեզ, մեքենայական մաթեմատիկա, մաթեմատիկական լեզվաբանություն և այլն: Մաթեմատիկական տրամաբանությունը տեխնիկայի նկատմամբ կիրառական տեսակետից դիտելիս այն անվանում են կիրառական կամ տեխնիկական տրամաբանություն:

Գիտության ու տեխնիկայի զարգացումը, անկասկած, վկայում է այն մասին, որ օրավուր ընդարձակվում են մաթեմատիկական տրամաբանության պրակտիկ կիրառման շրջանակները:

Մաթեմատիկական տրամաբանության ծագումը և նրա արագ տեմպերով զարգացումը, բնականաբար, առաջադրեցին մի շարք տեսական հարցեր, որոնք փիլիսոփայական կարևոր նշանակություն ունեն: Այդ հարցերից, առաջին հերթին, ուշադրության է արժանի մաթեմատիկական տրամաբանության բնույթը, նրա փոխհարաբերությունը տրամաբանական այլ գիտությունների հետ, հետևաբար և նրա տեղը տրամաբանական գիտությունների սիստեմում:

Այդ խնդիրն էլ փորձենք լուսաբանել ստորև:



Նախ և առաջ, ինչպիսի՞ գիտություն է մաթեմատիկական տրամաբանությունը, այն մաթեմատիկական գիտությունների դասին է պատկանում, թե՞ տրամաբանության գիտություն է: Այս հարցին պատասխանելիս մեզ սխալ ճանապարհով չպետք է տանի գիտության անվանումը: Գիտությունների պատմությունից բազմաթիվ դեպքեր են հայտնի, երբ գիտության անվանումը ամենևին էլ ցույց չի տալիս նրա էությունը: Հաճախ անվանումը պայմանական բնույթ ունի, այլ դեպքերում այն նշում է գիտության բնորոշ հատկանիշներից մեկը, բայց ոչ ամենաէականը: Մի՞թե, ասենք կիբեռնետիկայի անվանումը միայն պայմանական չէ: Մարքսի այն հայտնի դրույթը, թե առարկայի անվանումը ոչ մի ընդհանուր բան չունի առարկայի էության հետ, մեր կարծիքով, տարածվում է նաև գիտությունների անվանումների վրա:

Ահա թե ինչու, մաթեմատիկական տրամաբանության էությունը բացահայտելիս հարցը չպետք է կանխորոշվի ոչ այն բանով, որ առարկան կոչվում է տրամաբանություն և ոչ էլ այն բանով, որ այդ տրամաբանությունը անվանվում է մաթեմատիկական:

Եթե փնտրենք անվանման արդարացումը, ապա պետք է նշենք, որ առարկան կոչվում է մաթեմատիկական տրամաբանություն, քանի որ ղեկավարվում է մաթեմատիկական մեթոդով: Սակայն այս գործոնը չի կարող փաստարկ ծառայել մաթեմատիկական տրամաբանությունը մաթեմատիկական գիտություն համարելու օգտին: Գիտություններն իրարից տարբերվում են ոչ

այնքան նրանով, թե ինչ մեթոդով են ղեկավարվում, այլ, առաջին հերթին, իրենց ուսումնասիրության օբյեկտով, ընդհանրացրած ձևով ասած՝ շարժման քննարկվող ձևով: Այդ պատճառով էլ մաթեմատիկական լեզվաբանությունը մաթեմատիկական գիտություն չէ, այլ լեզվագիտություն է, կամ էլ մաթեմատիկական ֆիզիկան չի վերածվում մաթեմատիկայի, մնում է որպես ֆիզիկա:

Ինչ վերաբերում է քննարկվող հարցին, այն է՝ մաթեմատիկական տրամաբանությունը մաթեմատիկական գիտություն է, թե՞ տրամաբանական, ապա պատասխանը չի կարող միանշանակ լինել: Մաթեմատիկական տրամաբանությունը հանդես է գալիս որպես տրամաբանություն այն չափով, որչափով հետազոտում է տրամաբանական հարցադրումներ, պրոբլեմներ: Այդ արտահայտվում է, նախ և առաջ, այն բանում, որ մաթեմատիկական տրամաբանությունը որոշակի իմաստով ձևական տրամաբանական կառույցների սիմվոլիկ մոդելն է: Երկրորդ, պատասխանելով մաթեմատիկայի զարգացման ներքին պահանջներին, մաթեմատիկական տրամաբանությունը հանդես է գալիս որպես մաթեմատիկայի տրամաբանական հիմնավորում: Այդ հիմնավորումը տրամաբանության գիտության էության տեսակետից բավականին բարդ բնույթ ունի: Այս դեպքում մենք նկատում ենք ինչպես տրամաբանության գիտության հայտնի միջոցների օգտագործում, այնպես էլ տրամաբանական նոր պրոբլեմատիկայի առաջադրում, պրոբլեմատիկա, որը որոշ դեպքերում ընդհանուր տրամաբանական բնույթ է ստանում, այլ դեպքերում պայմանավորվում է մաթեմատիկական գիտությունների առանձնահատկություններով:

Ահա թե ինչու, նպատակահարմար է տարբերակում մտցնել մաթեմատիկական տրամաբանության հետևյալ երկու ըմբռնումների միջև: Ամենաընդհանուր ձևով, կարելի է ասել, թե մաթեմատիկական տրամաբանությունը տրամաբանական գիտություն է այնքանով, որքանով այն հանդես է գալիս որպես ձևական տրամաբանության մոդել, ընդարձակելով, իհարկե, իր հետազոտության բնագավառը տրամաբանական այնպիսի պրոբլեմներով, որոնք առաջանում են մաթեմատիկայի հիմնավորման պրոցեսում և ունեն համատրամաբանական բնույթ, այսինքն համատրամաբանական նշանակություն ունեն բոլոր գիտությունների համար, մտածողության համար ամբողջությամբ վերցրած:

Այնքանով, որքանով մաթեմատիկական տրամաբանությունը հետազոտում է մաթեմատիկայի ներքին զարգացումից բխող պրոբլեմները, մաթեմատիկայի հիմնավորման հարցերը, թեկուզ և այդ հիմնավորումը տրամաբանական է, սակայն առաջադրած հարցերը համատրամաբանական բնույթ չունեն, այդքանով էլ մաթեմատիկական տրամաբանությունը մաթեմատիկական գիտություն է:

Այս տարբերակումն ընդունելուց հետո նպատակահարմար է համապատասխան գիտությունները տարբերել նաև անվանմամբ: Մաթեմատիկական տրամաբանությունը որպես տրամաբանություն կարելի կլինի անվանել սիմվոլիկ տրամաբանություն (վերջին անվանումը բավականին տարածված է անգլո-ամերիկյան տրամաբանական գրականության մեջ), իսկ «մաթեմատիկական տրամաբանություն» օգտագործել այն դեպքում, երբ գործ ենք ունենում մաթեմատիկական տրամաբանության՝ որպես մաթեմատիկական գիտության հետ:

Սակայն այս հարցը պայմանական բնույթ ունի, կարող է լինել համա-



ձայնության արդյունք և ածանցվում է հիմնական հարցի՝ մաթեմատիկական տրամաբանության բնույթի որոշումից:

Երբ մենք խոսում ենք մաթեմատիկական տրամաբանության և տրամաբանական մյուս գիտությունների փոխհարաբերության մասին, ապա նկատի ունենք մաթեմատիկական տրամաբանությունը որպես տրամաբանություն (սիմվոլիկ տրամաբանություն): Այս դեպքում է, իհարկե, որ առաջանում է տարբեր տրամաբանությունների փոխհարաբերության հարցը: Հակառակ դեպքում խոսքը կարող է վերաբերել մաթեմատիկական գիտության և տրա- մաբանության փոխհարաբերությանը, որը միանգամայն ինքնուրույն հարց է և տվյալ քննարկման շրջանակներից դուրս է մնում: Այդ պատճառով էլ պայմանավորվենք, որ հետագա շարադրանքում մաթեմատիկական տրամաբանություն ասելով մենք նկատի կունենանք մաթեմատիկական տրամաբանությունը որպես տրամաբանություն:

Մաթեմատիկական տրամաբանության և մյուս տրամաբանությունների փոխհարաբերությունը քննարկելիս, նախ և առաջ, պետք է առանձնացնել դիալեկտիկական տրամաբանությունը և ապա ձևական տրամաբանությունը: Տրամաբանական այլ գիտությունների հարցը կարող է լինել միայն հատուկ քննության նյութ, քանի որ մաթեմատիկական, դիալեկտիկական և ձևական տրամաբանություններից բացի այլ տրամաբանական գիտությունները դեռևս գիտական հանրաճանաչություն չունեն:

Երբ մենք քննարկում ենք դիալեկտիկական և մաթեմատիկական տրամաբանության փոխհարաբերությունը, պետք է նկատի ունենանք մի կարևոր սկզբունքային հարց: Դիալեկտիկական տրամաբանությունը բովանդակային տրամաբանություն է, մինչդեռ մաթեմատիկական տրամաբանությունը ոչ-բովանդակային տրամաբանություն է: Այս պատճառով էլ մեկի գոյությունը չի ժխտում մյուսի իրավասությունը, տրամաբանական հարցերի բովանդակային հետազոտությունը չի փոխարինում ոչ-բովանդակային վերլուծությանը և հակառակը:

Այս հարցի մեջ որոշակիություն մտցնելու նպատակով պարզաբանենք, թե ինչ է նշանակում բովանդակային տրամաբանություն: Բովանդակային է այն տրամաբանությունը, որը մտքերի ձևերը, տրամաբանական ձևերը հետազոտելիս ելնում է այդ ձևերի և նրանց բովանդակության սերտ կապի գաղափարից, այդ ձևերը դասակարգում է նկատի ունենալով նրանց բովանդակության բնույթը իմացական տեսակետից: Դիալեկտիկական տրամաբանությունը որպես բովանդակային տրամաբանություն մտքի ձևերի ուսումնասիրությունը սերտորեն առնչում է այն հարցի հետ, թե ինչպե՞ս են նրանց բովանդակությունները խորացնում և ընդարձակում մեր իմացության սահմանները շրջապատող իրականության մասին: Ահա թե ինչու մտքի ձևերը դասակարգելիս, դիալեկտիկական տրամաբանությունը ոչ թե ելնում է ձևական տրամաբանությունում ընդունված կոորդինացիայի սկզբունքից, այլ ղեկավարվում է սուբորդինացիայի սկզբունքով: Այս առթիվ Էնգելսը նշում է. «Դիալեկտիկական տրամաբանությունը, հակառակ հին, զուտ ֆորմալ տրամաբանության, չի բավականանում նրանով, որ թվարկի և առանց որևէ կապակցության կողք-կողքի դասավորի մտածողության շարժման ձևերը, այսինքն՝ դատողությունների ու մտահանգումների տարբեր ձևերը: Ընդհակառակը, նա այդ ձևերը բխեցնում է մեկը մյուսից, նրանց միջև սահմանում է

սուբորդինացիայի, այլ ոչ թե կոորդինացիայի հարաբերություն, ավելի բարձր ձևերը նա զարգացնում է ստորիններից» (Ֆ. Էնգելս, Բնության դիալեկտիկա, Հայպետհրատ, 1957, էջ 227—228)։

Կոնկրետ վերլուծությամբ Հեգելը, ապա Էնգելսը ցույց են տվել, թե ինչպես է դիալեկտիկական տրամաբանությունը դասակարգում մտքի ձևերը, ելակետ ընդունելով նրանց բովանդակության իմացաբանական բնույթը, տիպը, իմացության պրոցեսում կատարած դերը։ Էնգելսը քննարկում է հետևյալ երեք դատողությունները. «շփումը ջերմության աղբյուր է», «ամեն մի մեխանիկական շարժում ընդունակ է շփման միջոցով փոխարկվելու ջերմության», «շարժման ամեն մի ձև ընդունակ է և հարկադրված է յուրաքանչյուր դեպքի համար որոշ պայմաններում ուղղակի կամ անուղղակի կերպով փոխարկվելու շարժման ամեն մի այլ ձևի»։ Առաջին դատողությունը Էնգելսն անվանում է եզակի դատողություն (կամ եզակիության դատողություն), երկրորդը՝ հատկականության, իսկ երրորդը՝ համընդհանրության դատողություն։

Դատողությունների այս դասակարգումը ցույց է տալիս «շարժման բնույթի մասին փորձնական հիմքի վրա խարսխվող մեր տեսական գիտելիքների զարգացումը» (Նույն տեղը, էջ 229—230), այդ գիտելիքների տրամաբանական և պատմական վերընթացի տեսակետից։ Եվ իրոք, «որ շփումից ջերմություն է առաջանում, այս բանը գործնականորեն հայտնի էր դեռևս նախապատմական մարդկանց, երբ նրանք, գուցե դեռ 100 000 տարի սրանից առաջ, գտան շփման միջոցով կրակ ստանալու եղանակը, իսկ դրանից շատ ավելի առաջ նրանք իրենց մարմնի սառած մասերը տաքացնում էին շփման միջոցով։ Սակայն ով գիտե, թե դրանից հետո քանի՜ հազարամյակներ են անցել, մինչև որ հայտնաբերվել է, թե շփումն ընդհանրապես ջերմության աղբյուր է հանդիսանում։ Բայց այսպես թե այնպես, հասավ ժամանակը, երբ մարդկային ուղեղն այն աստիճան զարգացավ, որ կարող էր արտահայտել այն դատողությունը, թե «շփումը ջերմության աղբյուր է...»» (Նույն տեղը, էջ 229)։

Քննարկվող երեք դատողությունների մեջ եզակիության դատողությունը պատմականորեն հանդես է գալիս որպես առաջին դատողությունը։ Եվ այս պատմականը համընկնում է տրամաբանականի հետ։ Տվյալ դատողությունը, ինչպես Էնգելսն է նշում, արձանագրում է այն եզակի փաստը, թե շփումը ջերմություն է առաջացնում։

«Նոր հազարամյակներ անցան, մինչև որ 1842 թվականին Մայերը, Ջոուլը և Կոլդինգը այս հատուկ պրոցեսը հետազոտման ենթարկեցին այդ ժամանակ արդեն հայտնագործված նման այլ պրոցեսների հետ նրա առնչության տեսակետից, այսինքն՝ նրան ամենից ավելի մոտիկ ընդհանուր պայմանների տեսակետից, և ձևակերպեցին այսպիսի դատողություն. «ամեն մի մեխանիկական շարժում ընդունակ է շփման միջոցով փոխարկվելու ջերմության»» (Նույն տեղը, էջ 229)։

Այս հատկականության դատողությունը մեր գիտելիքների պատմական զարգացման տեսակետից ավելի բարձր տիպի է, քան նախորդ դատողությունը։ Միևնույն ժամանակ, իր բովանդակության բնույթով այն նոր աստիճան է դատողությունների դասակարգման մեջ։ Եթե եզակիության դատողությունը վերաբերում էր մի եզակի փաստի, ապա հատկականության դատողությունն ավելի լայն ընդհանրացում է կատարում, ամրագրում է մեր գիտելիքները տվյալ դեպքում շարժման մի հատուկ ձևի վերաբերյալ։



Պատմական զարգացման համեմատաբար ավելի ուշ շրջանի արդյունք է վերը բերված դատողությունն այն մասին, թե շարժման ամեն մի ձև ընդունակ է և հարկադրված է փոխարկվելու շարժման ամեն մի այլ ձևի։ Այս դատողությունը համարվում է համընդհանրության դատողություն, որովհետև «այս ձևին հասնելով, օրենքը հասավ իր վերջին արտահայտությանը։ Նոր հայտնագործումների միջոցով մենք կարող ենք նրան տալ նոր ապացույցներ, հաղորդել նրան նոր, ավելի հարուստ բովանդակություն։ Բայց բուն օրենքին, ինչպես նա այստեղ արտահայտված է, մենք այլևս ոչինչ ավելացնել չենք կարող։ Իր համընդհանրության մեջ, որում և՛ ձևը, և՛ բովանդակությունը հավասարապես ընդհանուր են, նա ընդունակ չէ ոչ մի հետագա ընդարձակման. նա բնության բացարձակ օրենքն է» (Նույն տեղը, էջ 230)։

Դիալեկտիկական տրամաբանության տեսակետից այս երեք դատողությունները սկզբունքորեն տարբեր են, և այդ տարբերությունը պայմանավորված է նրանց բովանդակության իմացական նշանակությամբ։ Այդ դատողությունների բովանդակության միջոցով է, որ որոշվում է դատողությունների բնույթը, նրանց դերը իմացության զարգացման պրոցեսում։ Ընդ որում, չպետք է դատողության բովանդակությունն իմացության ընթացքում դիտել որպես մեկընդմիշտ տրված, անփոփոխ մեծություն։ Իսկ եթե այդպես է, հետևաբար և դատողությունների ձևը դիալեկտիկական տրամաբանության տեսակետից անփոփոխ չէ։ Միևնույն դատողությունը դատողությունների մի համակարգում կարող է լինել եզակիության դատողություն, մեկ այլ համակարգում՝ հատկականության և այլն։ «Շփումը ջերմության աղբյուր է», դատողությունը եզակիության դատողություն է տվյալ դեպքում քննարկվող դատողությունների համակարգում։ Բայց նույն դատողությունը կարող է հանդես գալ որպես հատկականության դատողություն, եթե այն դիտենք որպես շփման վերաբերյալ փորձերի և կշռադատությունների տեսական ընդհանրացում։

Սակայն, եթե վերը քննարկած դատողություններն ուսումնասիրենք նրանց ձևի տեսակետից, վերացարկենք նրանց բովանդակության իմացական դերից, այդ դատողությունները կվանտիֆիկացնենք, ապա մենք կնկատենք, որ նրանք բոլորն օժտված են ձևական միևնույն հատկանիշներով, բոլորն էլ ընդհանուր դատողություններ են։ Քննարկման այս եղանակը նույնպես օրինական է, և դրանով զբաղվում են ոչ-բովանդակային տրամաբանությունները։

Քանի որ դիալեկտիկական տրամաբանությունը զբաղվում է տրամաբանական ձևերի բովանդակային վերլուծությամբ, իսկ մաթեմատիկական տրամաբանությունը՝ ոչ-բովանդակային քննարկմամբ, ապա այս դեպքում ակնհայտ է նրանց առարկաների տարբեր բնույթը։ Այլ հարց է, երբ մենք քննարկում ենք մաթեմատիկական տրամաբանության և ձևական տրամաբանության փոխհարաբերությունը, քանի որ այդ երկու տրամաբանություններն էլ ոչ-բովանդակային տրամաբանություններ են։

Գոյություն ունի տեսակետ, որի համաձայն մաթեմատիկական տրամաբանության համար բնորոշը սիմվոլիկ մեթոդի առկայությունն է, մաթեմատիկական տրամաբանությունը տարբերվում է ձևական տրամաբանությունից սիմվոլիկ լեզվով։

Իրականությունն այն է, որ մաթեմատիկական տրամաբանության մեջ կարևոր դեր են խաղում սիմվոլները, սիմվոլների ապարատը։ Սակայն ամենայն վճռականությամբ պետք է նշել, որ սիմվոլների օգտագործումը ամե-

նևին էլ մաթեմատիկական տրամաբանության առանձնահատկությունը չէ։

Նախ, սիմվոլների օգտագործումով չի կարելի պայմանավորել մաթեմատիկական տրամաբանության տարբերությունն ընդհանրապես այլ գիտություններից։ Էլ չխոսելով այն մասին, որ սիմվոլները լայն կիրառում ունեն այնպիսի գիտություններում, ինչպիսիք են մաթեմատիկան, ֆիզիկան, քիմիան և այլն, արձանագրենք, որ համարյա չկա մի գիտություն, որին խորթ լինի սիմվոլների լեզուն։ Կ. Մարքսի «Կապիտալ»-ում կարդում ենք. «A ապրանքի x քանակը=B ապրանքի y քանակին» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, Հայպետհրատ, 1954, էջ 55)։

Սիմվոլները կարևոր դեր են խաղում տաղաչափության մեջ բանաստեղծության այս կամ այն առանձնահատկությունն արտահայտելու համար։

Այլ գիտությունների օրինակով կարելի է ցույց տալ, որ սիմվոլների կիրառումը լայն տարածում ունի ոչ միայն մաթեմատիկական տրամաբանությունում։

Բնականաբար, այս տեսակետից հատուկ հետաքրքրություն է ներկայացնում արիստոտելյան, տրադիցիոն-ձևական տրամաբանությունը, քանի որ համեմատությունն առաջին հերթին պետք է վերաբերի ձևական ու մաթեմատիկական տրամաբանություններին։

Տրամաբանության պատմությունից քաջ հայտնի է, որ մտահանգման մասին իր ուսմունքում Արիստոտելը մեծ չափով օգտագործում է սիմվոլներ։ Այդ մասին են վկայում մասնավորապես նրա «Անալիտիկներ»-ը, որոնց հրատարակիչ Դևիդ Ռոսը իրավամբ նշում է, որ փոփոխականների օգտագործման շնորհիվ է Արիստոտելը դարձել ձևական տրամաբանության հիմնադիր։ Արիստոտելից հետո էլ տրադիցիոն ձևական տրամաբանությունում սիմվոլները զգալի կիրառում ունեն։

Սակայն, սիմվոլների կիրառման փաստը տարբեր գիտություններում չպետք է սքողի սիմվոլների առանձնահատկությունը մաթեմատիկական տրամաբանությունում։ Այս դեպքում մենք բացարձակապես վերացարկում ենք այն բանից, որ սիմվոլներն առարկաների նշանակումներն են, հետազոտության օբյեկտ դարձնում ենք ոչ թե սիմվոլներով նշանակված այս կամ այն կարգի առարկաները, այլ դրանց՝ սիմվոլները, որոնք կոնկրետ իմաստային բովանդակություն են ստանում համապատասխան մեկնաբանություններում։

Մաթեմատիկական տրամաբանության սիմվոլիկան ոչ թե կիրառմամբ, այլ իր բնույթով տարբերվում է ձևական (ինչպես արիստոտելյան, այնպես էլ տրադիցիոն) տրամաբանության սիմվոլիկայից։ Սխալ կլիներ սիմվոլների տարբերությունն այս դեպքում հանգեցնել հարցի քանակական կողմին, նշելով այն փաստը, թե մաթեմատիկական տրամաբանությունում սիմվոլներ շատ ավելի մեծ չափով են կիրառվում, քան ձևական տրամաբանությունում։ Կարևորը սիմվոլիկ մեթոդի զարգացումն ու որակական նոր աստիճանի կատարելագործումն է, որը պայմանավորված է մաթեմատիկական տրամաբանության բնույթով։

Ձևական տրամաբանությունում սիմվոլներն օգտագործվում են որպես օժանդակ միջոց բնական լեզվի հիմքի վրա, մինչդեռ մաթեմատիկական տրամաբանության հիմնական լեզուն՝ ինքը սիմվոլների լեզուն է։

Օգտագործվող սիմվոլների բնույթի տեսակետից ձևական տրամաբանության և մաթեմատիկական տրամաբանության միջև նույն հարաբերությունը



գոյություն ունի, ինչ որ մաթեմատիկայի զարգացման երկու փուլերի միջև՝ փոփոխական մեծությունների և փոփոխական հարաբերությունների էտապների միջև։ Արիստոտելյան, տրադիցիոն-ձևական տրամաբանությունում սիմվոլները կիրառվում են տրամաբանական փոփոխականները նշանակելու համար։ Մինչդեռ մաթեմատիկական տրամաբանությունն սկզբունքային քայլ է կատարել դեպի առաջ։ Մաթեմատիկական տրամաբանությունը սիմվոլներով նշանակվում են ոչ միայն տրամաբանական փոփոխականները, այլև տրամաբանական հաստատունները։

Մաթեմատիկական տրամաբանությունում (նկատի ունենք նրա զարգացման ներկա փուլը) սիմվոլների բնույթը պայմանավորվում է առարկայի ձևականացմամբ։ Տրամաբանության լրիվ ձևականացման համար անհրաժեշտ էր սիմվոլացնել տրամաբանության տեսությունը կամ Կլինիի խոսքերով ասած՝ «քննարկվող տեսությունը կառուցել հատուկ սիմվոլիկ լեզվով» (С. К. Клини. Введение в метаматематику. М., ИЛ, 1957, էջ 60)։ Կատարելագործված վիճակում ֆորմալիզմը, այդ թվում և տրամաբանական ֆորմալիզմը, ելնում է այն բանից, որ «սիմվոլները և այլն ինքնըստինքյան վերջնական առարկաներ են և չպետք է օգտագործվեն իրենցից տարբեր որևէ բան նշանակելու համար» (նույն տեղը, էջ 62)։

Ձևական տրամաբանության և մաթեմատիկական տրամաբանության միջև հիմնական, էական տարբերությունն այն է, որ ձևական տրամաբանությունը ձևական գիտություն է, իսկ մաթեմատիկական տրամաբանությունը՝ ձևականացված։ Այս տարբերությունը կարելի է պարզաբանել հետևյալ կերպ. ձևական տարբերությունը վերացարկում է ուսումնասիրվող մտքի ձևերի կոնկրետ և մասնավոր բովանդակությունից, իսկ մաթեմատիկական տրամաբանությունը՝ ամեն մի բովանդակությունից, բովանդակությունից ընդհանրապես։ Ձևական տրամաբանությունում մենք ոչ միայն դիմում ենք տրամաբանական հաստատունների նշանակությանը, այլև ընդհանրապես բառերի և նախադասությունների նշանակությանը, որը հնարավորություն է տալիս վերջիններս փոխարինել բովանդակության տեսակետից համարժեք այլ դարձվածքներով։

Մինչդեռ մաթեմատիկական տրամաբանությունում մենք ղեկավարվում ենք սիմվոլների արտաքին տեսքով, զուտ ձևական հատկանիշներով, ամենևին ուշադրություն չդարձնելով նրանց բովանդակության վրա։ Ընդ որում, տվյալ դեպքում մենք նկատի ունենք մաթեմատիկական տրամաբանության զարգացման այն փուլը, որն առնչվում է լրիվ ձևականացման հետ և արտահայտում է գիտության բուն էությունը։

Մաթեմատիկական տրամաբանության բացարձակ ձևականացման գաղափարը պատկանում է գերմանացի նշանավոր մաթեմատիկոս և տրամաբան Դավիթ Հիլբերտին։ Վերջինս 1899 թվականին առաջադրեց մի թեզ, որի համաձայն աքսիոմատիզացիան հանգեցնում է հասկացությունների նշանակության լրիվ վերացարկման։

Այս հարցում տեղին է համեմատել մաթեմատիկական տրամաբանությունը «զուտ մաթեմատիկայի» հետ, որի մասին Էնգելսը նշում է. «Զուտ մաթեմատիկայի առարկան կազմում են իրական աշխարհի տարածական ձևերը և քանակական հարաբերությունները, այսինքն՝ մի վերին աստիճանի իրական նյութ... Բայց որպեսզի հնարավոր լինի այդ ձևերն ու հարաբերություններն

իրենց հատակ վիճակում հետազոտել, անհրաժեշտ է այդ ձևերն ու հարաբերությունները լիովին անջատել իրենց բովանդակությունից, անհրաժեշտ է մի կողմ թողնել այդ բովանդակությունը իբրև կարևորություն չներկայացնող հանգամանք...» (Ֆ. Էնգելս, Անտի-Դյուրինգ, Հայպետհրատ, 1952, էջ 48—49)։

Մոտեցման նման եղանակը մաթեմատիկական տրամաբանությանը հնարավորություն է տալիս սիմվոլիկ մեթոդի համատարած կիրառմամբ տրամաբանական մտածողությունը ներկայացնել որպես տրամաբանական հաշիվ։ Իսկ այդ իր հերթին, ինչպես նշում են Դ. Հիլբերտը և Վ. Ակկերմանը, սկզբունքային կարևոր նշանակություն ունի։ Տրամաբանական հաշվի միջոցով քննարկվում են այնպիսի պրոբլեմներ, որոնք բոլոր դեպքերում դուրս են մնում բովանդակային տրամաբանական մտածողության հետազոտության շրջանակներից (տե՛ս Д. Гильберт и В. Аккерман. Основы теоретической логики. М., ИЛ, 1947, էջ 17)։

Անհրաժեշտ է ընդգծել հետևյալ հանգամանքը. չի կարելի ասել, թե արիստոտելյան, ձևական տրադիցիոն տրամաբանությանը խորթ է ձևականացման գաղափարը։ Ձևական տրամաբանության մեջ էլ մենք ձևի ստույգ ըմբռնմամբ հետազոտում, ճշգրտում ենք բովանդակությունը։ Սակայն ձևական տրամաբանության մեջ ձևականացումը խիստ չափանիշներ չունի, այն չի հասնում իր կատարելագործման աստիճանին, մնում է հետազոտվող տրամաբանական ձևերի էմպիրիկ ընդհանրացումների մակարդակի վրա, այն մակարդակի, երբ մենք դեռևս դիմում ենք ինչպես տրամաբանական հաստատունների, այնպես էլ այլ դարձվածքների նշանակությանը տրամաբանական օրինաչափությունների հաստատելու համար։

Մյուս կողմից էլ, մաթեմատիկական տրամաբանությունն իր տարատեսակներով զարգացման տվյալ փուլում դեռևս ամբողջովին չի ձերբազերծվել ոչ-ձևականացված վերապահումներից։

Մաթեմատիկական տրամաբանության և ձևական տրամաբանության միջև քննարկված տարբերությունները որոշ հետազոտողների հանգեցնում են այն եզրակացության, թե առաջինը վերջինիս զարգացման ներկա փուլն է։ Այս դրույթը տարբեր մեկնաբանություններ է ստանում նրա կողմնակիցների շրջաններում։ Ոմանք գտնում են, թե մաթեմատիկական տրամաբանությունը արիստոտելյան կամ տրադիցիոն տրամաբանության սիմվոլիկ մոդելն է։ Մյուսները համարում են, որ մաթեմատիկական տրամաբանությունը, ձևական տրամաբանության սիմվոլիկ մոդելը լինելով հանդերձ, զգալիորեն ընդարձակում է ձևական-տրամաբանականի մեր ըմբռնումն, ընդգրկում է իր մեջ տրամաբանական բնույթի սկզբունքային նոր հարցադրումներ։ Ընդ որում, երկու դեպքում էլ պնդում են, թե ձևական տրադիցիոն տրամաբանությունը տրամաբանության պատմության անցած փուլ է, այսպես ասած հաղթահարվել է արդեն մաթեմատիկական տրամաբանության կողմից, որը և հանդես է գալիս որպես ժամանակակից ձևական տրամաբանություն։ Լավագույն դեպքում ենթադրվում է, որ տրադիցիոն ձևական տրամաբանության մեջ բոլոր արժեքավորը մեկնաբանվում է մաթեմատիկական տրամաբանության մեջ որպես նոր տրամաբանական մտահղացման մասնավոր դեպք՝ գիտության մեջ հայտնի համապատասխանության սկզբունքով։

Իհարկե, ճիշտ է, որ մաթեմատիկական տրամաբանությունը որոշակի իմաստով բովանդակային տրամաբանական մտածողության արտացոլումն է



տրամաբանական հաշվումների և համապատասխան այլ համակարգերի ձևով, որն ըստ էության և նշանակում է, թե մաթեմատիկական տրամաբանությունը ձևական- տրամաբանական որոշակի կառույցների սիմվոլիկ մոդելն է։ Բայց, ձևական տրամաբանության և մաթեմատիկական տրամաբանության կողմից հետազոտվող հարցերի համեմատական քննությունը ցույց է տալիս, որ նրանք լրիվ չեն համընկնում իրար հետ։ Ձևական տրամաբանության կողմից բացահայտվող որոշ պրոբլեմներ անշուշտ ձևականացվում են մաթեմատիկական տրամաբանության մեջ, բայց մի շարք պրոբլեմներ էլ տրամաբանության զարգացման ներկա փուլում դուրս են մնում այդ ձևականացման շրջանակներից։ Մյուս կողմից էլ, դժվար չէ նկատել, որ մաթեմատիկական տրամաբանության մեջ ուսումնասիրվում են բազմաթիվ հարցեր, որոնց նախատիպը մենք չենք գտնում տրադիցիոն ձևական տրամաբանության մեջ։ Այս հանգամանքը, նախ և առաջ, բացատրվում է մաթեմատիկական տրամաբանության առաջացման պատմական պատճառներով։ Հայտնի է, որ մաթեմատիկական տրամաբանությունը ծագել է մի կողմից՝ որպես որոշ ձևական-տրամաբանական կառույցների սիմվոլիկ մոդել, մյուս կողմից՝ որպես մաթեմատիկայի զարգացման ներքին տրամաբանական պահանջների պատասխան։ Գիտության առաջացման առանձնահատկությունները խոր հետք են թողել նրա հետագա զարգացման բարդ ուղու վրա։ Առանց այս հանգամանքը հաշվի առնելու ճիշտ պատկերացում չի կարելի կազմել մաթեմատիկական տրամաբանության բնույթի, մաթեմատիկական տրամաբանության և ձևական տրամաբանության փոխհարաբերության մասին։

Կարող է այժմ հարց առաջանալ. եթե տրադիցիոն ձևական տրամաբանության ոչ բոլոր պրոբլեմներն են ձևականացվում, մոդելացվում մաթեմատիկական տրամաբանության համակարգություններում, ապա արդյոք չի՞ հնացել այն ամենը, ինչ դուրս է մնում այս ձևականացման շրջանակներից։ Այս հարցին ըստ էության դրական պատասխան են տալիս այն մտահղացման կողմնակիցները, որոնք մաթեմատիկական տրամաբանությունը ներկայացնում են որպես ձևական տրամաբանության զարգացման ներկա փուլ։

Մեր կարծիքով այդ տեսակետն անհիմն է։ Մաթեմատիկական տրամաբանության մեջ չընդգրկված պրոբլեմները չեն դառնում միայն տրամաբանության պատմության սեփականությունը, պահպանում են իրենց իմացական արժեքը։ Կարելի է մատնանշել, ասենք, տրամաբանական-քերականական զուգահեռականների հարցը։ Այդ զուգահեռականները դեռևս ամբողջապես, լրիվ չեն ձևականացվել մաթեմատիկական տրամաբանության համակարգություններում։ Միևնույն ժամանակ նրանք իրենց իմացական կարևոր նշանակությունը լիովին պահպանում են։ Այս ամենևին էլ եզակի դեպք չէ։

Արդեն այն հանգամանքը, որ տրադիցիոն ձևական տրամաբանության մի շարք հարցեր չեն ձևականացվում մաթեմատիկական տրամաբանության հաշիվներում և այլ համակարգություններում և միևնույն ժամանակ պահպանում են իրենց կարևոր իմացական նշանակությունը, խոսում է այն մասին, որ մենք չպետք է հրաժարվենք տրադիցիոն-ձևական տրամաբանությունից, վերջինս փոխարինենք մաթեմատիկական տրամաբանությամբ։

Սակայն, ենթադրենք, թե ձևական-տրադիցիոն տրամաբանության բոլոր կառույցները ձևականացվում են, ներկայացվում մոդելների ձևով մաթեմատիկական տրամաբանության զանազան համակարգություններում։ Անգամ

այդ դեպքում, ձևական տրամաբանությունը կպահպանի իր իմացական նշանակությունը։ Այդ բացատրվում է նրանով, որ ձևական տրամաբանությունը և մաթեմատիկական տրամաբանությունը տարբեր խնդիրներ են իրագործում, տարբեր նպատակներ են հետապնդում։

ա) Մաթեմատիկական տրամաբանության համակարգություններում տրամաբանականը տրվում է հիմնականում, ըստ էության ձևականացված հաշիվների ձևով։ Ձևական տրամաբանությունում մենք դիմում ենք ինչպես տրամաբանական հաստատունների, այնպես էլ այլ բառերի և նախադասությունների նշանակությանը և բովանդակության իմաստով նրանց համարժեք դարձվածքների փոխարինմամբ հետազոտում ենք բովանդակային մտածողության ձևական կառուցվածքը։

բ) Այդ հանգամանքն ունի իր արմատները։ Հայտնի է, որ ձևական տրամաբանությունը մտքի ձևերն ուսումնասիրում է կենդանի, խոսակցական լեզվի հիմքի վրա, որը հանդես է գալիս, որպես, Մարքսի խոսքերով ասած, «մտքի անմիջական իրականություն»։ Ձևական տրամաբանության կատեգորիաների սերտ կապը կենդանի խոսակցական լեզվի քերականության հետ շատ բանով պայմանավորել է այն թևավոր խոսքը, թե տրամաբանությունը մտքի քերականությունն է։

Ինչ վերաբերում է մաթեմատիկական տրամաբանությանը, ապա այն գործ չունի կենդանի լեզվի հետ։ Մաթեմատիկական տրամաբանության զանազան համակարգությունների «անմիջական իրականությունը» ձևականացված լեզուներն են, արհեստական լեզուները։ Համանմանության կարգով կարելի է ասել, թե մաթեմատիկական տրամաբանությունը մտքի մաթեմատիկան է։

Իհարկե, մաթեմատիկական տրամաբանությունն էլ որոշակի իմաստով կարող է գործ ունենալ բովանդակային մտածողության հետ և վերջինիս միջոցով՝ բնական լեզվի հետ։ Սակայն, եթե ձևական տրամաբանությունն անմիջականորեն է առնչվում բովանդակային մտածողության հետ, մաթեմատիկական տրամաբանությունն այդ անում է միջնորդավորված ձևով։ Եթե ձևական տրամաբանությունն անմիջականորեն գործ ունի բնական լեզվի հետ, մաթեմատիկական տրամաբանությունը բնական լեզվի հետ առնչվում է արհեստական լեզվի միջոցով։

Տրամաբանության հայտնի պատմաբան Բոխենսկին հետևյալ ձևով է ընդգծում ձևական տրամաբանության և մաթեմատիկական տրամաբանության միջև կարևոր տարբերությունը։ Ձևական տրամաբանությունն իր կառույցներն ստեղծում է որպես սովորական (բնական) լեզվից վերացարկումներ։ Մաթեմատիկական տրամաբանությունը գործում է հակառակ ուղղությամբ։ Այն սկզբում ստեղծում է մաքուր ձևականացված համակարգեր և ապա փնտրում է նրանց մեկնաբանությունները ամենօրյա խոսակցական լեզվում (տե՛ս M. Bochenski. A history of formal logic. University of Notre Dame press, 1961, էջ 266)։

Արհեստական լեզվի հիմքի վրա տրամաբանական ձևերը հետազոտող տրամաբանությունը՝ մաթեմատիկական տրամաբանությունը չի կարող ժխտել բնական, խոսակցական լեզուների վրա խարսխվող տրամաբանական ձևերն ուսումնասիրող տրամաբանությունը՝ ձևական տրամաբանությունը։ Պատկերավոր ձևով ասած, մտքի քերականությունը (ձևական տրամաբանություն) և



մտքի մաթեմատիկան (մաթեմատիկական տրամաբանություն) ոչ թե իրար բացառում են, այլ լրացնում են միմյանց։

Մենք կանգ առանք մաթեմատիկական տրամաբանության և ձևական տրամաբանության միջև որոշ հատկանշական տարբերությունների վրա։ Կարելի է թվարկել նաև այլ տարբերություններ, սակայն արդեն քննարկումից պարզ է, որ մաթեմատիկական տրամաբանության առաջացումն ու բուռն զարգացումը չի կարող ժխտել ձևական տրամաբանության իմացական նշանակությունը, չի կարող իրենով փոխարինել ձևական տրամաբանությանը։

Շատ մեծ է մաթեմատիկական տրամաբանության նշանակությունն արդի գիտություններում և տեխնիկայում։ Սակայն մաթեմատիկական տրամաբանությունը մաթեմատիկական գիտություններից մեկն է բազմատրամաբանության համակարգում։ Միևնույն ժամանակ չպետք է ենթադրել թե բազմատրամաբանությունը, դիալեկտիկական տրամաբանության, մաթեմատիկական տրամաբանության և ձևական տրամաբանության գոյությունը, ենթադրում է նրանց միայն համագոյակցություն։ Տրամաբանական գիտությունների զարգացման պատմությունն ավելի հաճախ հիշեցնում է տարբեր տրամաբանությունների փոխներգործում, քան զուգահեռ զարգացում, համագոյակցություն։ Բազմատրամաբանությունը տրամաբանությունների միայն բաժանում չէ, սոսկ տարբերակում չէ։ Տրամաբանական գիտությունների միջև տարբերությունները ամենևին էլ չեն ժխտում նրանց միասնությունը, հակառակը, այդ տարբերությունները կարող են ճիշտ ըմբռնվել միայն տրամաբանականի միասնության հիմքի վրա։ Ընդ որում, պետք է նկատել, որ տրամաբանական գիտությունների միասնությունը իր օբյեկտիվ արմատներն ունի բուն տրամաբանական մտածողության մեջ։ Իրական տրամաբանական մտածողությունում բովանդակային և ոչ բովանդակային տարրերը հանդես են գալիս որպես միասնական տրամաբանական պրոցեսի, կշռադատության հակասական կողմեր։ Եվ միայն գիտական նկատառումներով է, որ մենք վերացարկում ենք այդ հակասական միասնության այս կամ այն կողմը, ստեղծում ենք տրամաբանական գիտությունների համակարգ, գիտություններ, որոնցից յուրաքանչյուրն իր հետազոտության առարկան է դարձնում միասնական բարդ օբյեկտի որևէ կողմը։

Տրամաբանական գիտությունների միասնությունն ունի նաև իր տեսական-իմացաբանական հիմքերը։ Այդ նշանակում է հետևյալը։ Դիալեկտիկական տրամաբանությունը հանդես է գալիս որպես բոլոր տրամաբանական գիտությունների մեթոդոլոգիական հիմք։ Միևնույն ժամանակ, ինքը՝ դիալեկտիկական տրամաբանությունը, որպես դիալեկտիկա և իմացության տեսություն հարստանում է այլ տրամաբանական գիտությունների նվաճումներով։ Ձևական տրամաբանության, և հատկապես մաթեմատիկական տրամաբանության աննախընթաց աճը ներկա ժամանակաշրջանում առաջադրում են մի շարք տրամաբանական-իմացաբանական հարցադրումներ, որոնց իմաստավորումը դիալեկտիկական մատերիալիզմի փիլիսոփայության տեսակետից կարևոր նշանակություն ունի դիալեկտիկական տրամաբանության համար։

Ձևական տրամաբանության և մաթեմատիկական տրամաբանության սերտ կապն ակնբախ է։ Այդ մասին է խոսում արդեն այն հանգամանքը, որ մաթեմատիկական տրամաբանությունը ձևական տրամաբանության մի շարք կառույցների մոդելն է որոշակի իմաստով։ Ձևական տրամաբանությունը օգ-

տագործում է և պետք է օգտագործի մաթեմատիկական տրամաբանության նվաճումները, նրա սիմվոլիկ մեթոդի և ձևականացման հզոր հնարավորությունները։ Այդ անպայման օգնում է ձևական տրամաբանությանը ճշգրտելու այն եզրակացությունները, որոնց հանգում է էմպիրիկ օրինաչափությունների ընդհանրացման եղանակով։

Որոշակի իմաստով կարելի է ասել, որ տրադիցիոն-ձևական տրամաբանության և մաթեմատիկական տրամաբանության որոշ համապատասխան հասկացությունների միջև գոյություն ունի էքսպլիկանդի (հին, ոչ ստույգ իմաստով օգտագործվող հասկացություն) և էքսպլիկատի (ճշգրտված հասկացություն) հարաբերություն, և մաթեմատիկական տրամաբանության ստույգ չափանիշների միջոցով տեղի է ունենում տրադիցիոն ձևական տրամաբանության մի շարք հասկացությունների էքսպլիկացիա (ճիշտ ըմբռնում)։ Այդ խոսում է այն մասին, որ մաթեմատիկական տրամաբանությունը կարևոր նշանակություն ունի նաև ձևական տրամաբանության համար, բայց այդ ամենևին էլ չի նսեմացնում վերջինիս իմացական նշանակությունը վերը շարադրված նկատառումներով։ Օգտվելով մաթեմատիկական տրամաբանության նվաճումներից, ձևական տրամաբանությունը բարձրանում է իր զարգացման նոր աստիճանի։

Ստեղծելով ձևականացված համակարգեր, մաթեմատիկական տրամաբանությունն իր հերթին հանդիպում է այնպիսի հարցադրումների, որոնց լուծման համար արդեն բավարար չեն ձևականացումները և անհրաժեշտ է դիմել բովանդակային տեսությունների մեթոդներին, ինչպես փայլուն կերպով այդ ապացուցված է ավստրիացի հայտնի մաթեմատիկոս և տրամաբան Գյոդելի թեորեմով։

Մաթեմատիկական տրամաբանության դերը շատ մեծ է, սակայն այդ տրամաբանությունը մեկն է այլ տրամաբանությունների համակարգում և սերտորեն կապված է նրանց հետ։





Ստ. ՊՈՂՈՍՅԱՆ

ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար

# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ ՄԵՐ ԱՌԱՋՆԱՀԵՐԹ ԽՆԴԻՐՆ Է

Բոլոր ժամանակաշրջաններում աճող սերունդն իր հետ բերել է վարքագծի և, նույնիսկ, աշխարհայեցողության նոր, ավագ սերնդի համար երբեմն անհասկանալի, ոչ քիչ դեպքերում նաև վերջինիս կողմից մերժված մոտիվներ, ըմբռնումներ։ Սա պատմության զարգացման տրամաբանությունն է և, այս տեսակետից, ժամանակակից սովետական երիտասարդ սերունդը բացառություն չի կազմում։ Երիտասարդական տարիքին վաղուց հրաժեշտ տված մարդկանցից երբեմն տրտունջներ են լսվում, որ ներկայիս մեր երիտասարդությունն իր հետ բերում է խորթ բարքեր, սովորույթներ, չունի գաղափարական նպատակաուղղվածություն, տուրք է տալիս կոմունիստական բարոյականության անհարիր երևույթներին։ Սխալ կլիներ պնդել, թե այդպիսի տրտունջները բացարձակապես զուրկ են հիմքից։ Դժբախտաբար, որոշ երիտասարդներ իրենց վարքագծով ավագ սերնդին առիթ են տալիս այդպես մտածելու։

Բայց ամեն մի սերունդ պատմության թատերաբեմ է իջնում իրեն հատուկ առավելություններով ու թերություններով։ Եթե նախասոցիալիստական հասարակարգերում սերունդների միջև եղած հակասությունները կրում էին հակամարտ բնույթ կամ սքողվում էին դասակարգային հակասությունների բարդ ոլորտներում, ապա մեր հասարակությունում նման հակասության մասին խոսք անգամ լինել չի կարող։

Սովետական մարդկանց տարբեր սերունդների հարաբերությունների համար բնորոշը ո՛չ թե նրանց տարբերող կողմերն են, այլ կոմունիստական աշխարհայացքը, որի վրա է խարսխվում ավագ և նոր սերնդի միասնությունը։ Սոցիալիստական հասարակարգում յուրաքանչյուր նոր սերունդ բարձրանում է նախորդ սերունդների ուսերի վրա և շարունակում նրանց գործը։ Ուստի, ով այսօր շաղակրատում է «հայրերի ու որդիների» միջև եղած հակադրության մասին, նա չի տեսնում կյանքում կատարվող պրոցեսների էությունը։

Սովետական հասարակության զարգացման բոլոր փուլերում կոմերիտմիությունը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ անցնելով պայքարի ու փորձությունների դժվարին ուղի, ապացուցել և ապացուցում է, որ նա իրոք սովետական ողջ երիտասարդության ավանգարդն է, որն իր շարքերում կոփում է կուսակցության գործին անսահման նվիրված միլիոնավոր փոխարինողների բանակը։

Սոցիալիզմի կառուցման բոլոր ճակատամասերում, նոր մարդու դաստիարակման բոլոր օղակներում լենինյան կոմերիտմիությունը կռել ու կոփել է մի աննման սերունդ, որն այսօր իր խոշոր ավանդն է մուծում նոր հասարակության ստեղծման գործում։ Աշխատանքում, հայրենիքի պաշտպանության, գիտության ու տեխնիկայի տիրապետման, կուլտուրական հեղափոխության ծավալման մարզերում բազում սխրանքների ու անձնուրաց քաջագործությունների պատմություն է կոմերիտմիության գործունեությունը։

Կուսակցությունը երիտասարդությանը տարել է վերելքի ճանապարհով, մարզել հերոսամարտերում, թրծել բազմաթիվ փորձություններում։ Այդ կուսակցության դաստիարակած սերունդն է, որ ունակ է դարձել փոխելու երկրի քարտեզը, պատնեշելու հորդ գետերի ընթացքը, փոխելու նրանց հունը, ջրից լույս ու էներգիա քամելու, նոր քաղաքներ կառուցելու, անապատներ ծաղկեցնելու։ Երկրի հետագա հզորացման նպատակին ուղղված բոլոր խոշոր միջոցառումներն իրագործելիս կուսակցությունը դիմել ու դիմում է կոմերիտմիության օգնությանը և յուրաքանչյուր այդպիսի միջոցառում կոմերիտմիության համար դառնում է մեծ մկրտություն, կյանքի դպրոց, կուսակցության կոչին գործնականորեն արձագանքելու վառ ցույց։

Լենինյան կոմերիտմիության, մեր երկրի ողջ պատանիների ու աղջիկների համար միշտ էլ բնորոշ է եղել անսահման հայրենասիրությունը։ Առաջին կոմերիտականներն անդամատոմսի հետ ընդունում էին հրացանն ու մարտական փամփուշտները։ Պատմությունը չգիտե այնպիսի մասսայական հերոսություն, որն ի հայտ բերեց սովետական երկրի երիտասարդ սերունդը՝ իր հայրենիքի պաշտպանության գործում։ Սկսած քաղաքացիական կռիվների ու օտարերկրյա ինտերվենցիայի տարիների հերոսապատումներից, Հայրենական պատերազմի ահեղ տարիներին դրսևորած մասսայական անձնազոհությունից մինչև ՍՍՀՄ զինված ուժերը անընդհատ հզորացնելու ուղղությամբ կոմերիտմիության վիթխարի աշխատանքը մեծ հայրենասիրությունը հավերժացնող հուշարձաններն են։

Կոմերիտմիությունը մեկ անգամ չէ, որ տեսել է պատերազմների արհավիրքները. նա իր արյունով է պաշտպանել Մեծ հոկտեմբերի նվաճումները, մեր հայրենիքի ազատությունն ու անկախությունը։ Ահա թե ինչու լենինյան կոմերիտմիությունը ամենաակտիվ մասնակցությունն է ցույց տալիս խաղաղության համար մղվող պայքարին, ակնառու ծառայություններ մատուցում երիտասարդության միջազգային խաղաղասիրական շարժման միավորմանը և կազմակերպմանը։

Անշուշտ, հայ երիտասարդության ներկա սերունդն ամենաերջանիկն է պատանիների ու աղջիկների այն բազմահազար սերունդներից, որոնց ծնել և կյանքի է կոչել հայոց հինավուրց հողը։ Այսօրվա քսանամյա պատանին գուցե այն միակ սերունդն է, որն ապրում է առանց պատերազմների արհավիրքի։



Սովետական Հայաստանում մինչև 22 տարեկան հասակ ունեցող գրեթե բոլոր պատանիներն ու աղջիկները սովորում են, յուրաքանչյուր երկրորդ կոմերիտականը ունի միջնակարգ կրթություն։

Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվների մոտ 60 տոկոսը երիտասարդ մարդիկ են։ Շուրջ 100 հազար պատանիներ ու աղջիկներ աշխատում են գյուղատնտեսության բնագավառում։ Երիտասարդությունը մեծ ուժ է նաև գիտության, գրականության և արվեստի բնագավառներում։ Գիտական կոչում ունեցողներից ավելի քան 500-ի տարիքը 30-ից չի անցնում, ասպիրանտուրաներում սովորում են 1000-ից ավելի պատանիներ և աղջիկներ։

Երիտասարդությունը հպարտությամբ է նշում, որ նոր հասարակարգի կառուցման գործում ինքը վիթխարի ներդրում է կատարում. Նրա ուսերի վրա են բարձրացել և բարձրանում հանրապետության նորակառույցները։ Նա իր ամենօրյա վարքագծով ապացուցում է, որ երիտասարդ սերնդի համար չկա և չի կարող լինել այլ բարոյականություն, քան բարոյականությունն այն սերունդների, որոնք մարտնչեցին հեղափոխության բարիկադների վրա, որոնք զոհվեցին հայրենիքի համար, որոնք կառուցեցին սոցիալիստական հասարակարգ։

Այժմ, երբ մեր հայրենիքն իրագործում է կոմունիզմի ծավալուն կառուցման ծրագիրը, կուսակցությունը մեր առջև դնում է բազմակողմանիորեն զարգացած մարդու դաստիարակության խնդիրը։ Բայց այդ խնդրի լուծումը պետք է ընթանա լենինյան եղանակով. երիտասարդները գաղափարապես պետք է կոփվեն կոմունիզմի առօրյա շինարարությանն ակտիվ մասնակցելով։ Սակայն, չպետք է մոռանալ, որ այժմ մատաղ սերնդի գաղափարական դաստիարակման հարցն ավելի բարդ է ու դժվարին, քան դա թվում է ոմանց։

Մի կողմից, սովետական ժողովրդի ձեռք բերած վիթխարի նվաճումները, սովետական մարդկանց բարեկեցության աճը, մեր հասարակության կատարելագործումը և նրա կոմունիստական զարգացման հեռանկարները երիտասարդության համար անսպառ ոգևորության աղբյուր են և պայմանավորում են նրա քաղաքական հայացքների ձևավորումը, մյուս կողմից, վերջին տարիներին, մեր կյանքի որոշ ստվերոտ կողմերը զգալի դժվարություններ են հարուցում նրա աշխարհայացքի և վարքագծի ճիշտ ձևավորման գործում։ Այսօրվա երիտասարդն իր մանկությունն անց է կացրել անհատի պաշտամունքի և դրա մերկացման տարիներին, որպիսի հանգամանքը նշանակալի չափով բարդացնում է դաստիարակության գործը։ Մենք նկատի ունենք գաղափարի հանդեպ տածած մարդկանց հավատը։ Վաթսունական թվականների երիտասարդությունը չի մարտնչել հեղափոխության բարիկադների վրա, քաղաքացիական և Հայրենական մեծ պատերազմների ռազմաճակատներում և, բնականաբար, նրա քաղաքական գիտակցության ձևավորման գործում գաղափարական ներգործության միջոցներին վիթխարի դեր է պատկանում։ Աճող սերնդի դաստիարակությունը չի կարող իրականացվել, եթե աշխարհայացքը, հասարակական-քաղաքական վարքագիծը նրան չի հրամցվում կոնկրետ երևույթների, իրադարձությունների ճիշտ լուսաբանման միջոցով, երբ պատանին ու աղջիկը չեն ունենում իրենց նպատակի նախատիպը, այն անձը, որին ձգտեին նմանվել։ Հեղափոխության պատմությունը ստեղծել է դրվագներ, դեմքեր, որոնց արժե-

քավորումը այլևս վերանայման ենթակա չպետք է լինի, որովհետև դրանք դարձել են աճող սերնդի հոգեկան աշխարհի միսն ու արյունը:

Խոսելով երիտասարդության գաղափարական դաստիարակության մասին, չի կարելի աչքաթող անել նաև արդի միջազգային կյանքի բարդությունը: Կասկածից դուրս է, որ միջազգային բանվորական և կոմունիստական շարժման, սոցիալիզմի համաշխարհային սիստեմում ներկա վիճակը բոլոր պատանիների ու աղջիկների կողմից չէ որ ճիշտ է ընկալվում: Բացի այս, տարբեր կանալներով մեր երկիրն է թափանցում իմպերիալիզմի հրահրած հակակոմունիզմի պրոպագանդան:

Իմպերիալիստական պրոպագանդան օրեցօր ավելի նենգ, ավելի ստոր է դառնում, այն քողարկվում է «օբյեկտիվության» և «բարի կամեցողի» դիմակի տակ, չարաշահում երիտասարդ մարդու երջանկությունն ու բարեկեցիկ կյանքի ձգտումները, բոլոր միջոցներով թմբկահարում բուրժուական ապրելակերպը, «սրտացավ բարեկամի» դիմակի տակ աղմկում մեր կյանքի թերությունների շուրջը, մեթոդիկ ձևով ճգնում է խախտել երիտասարդության հավատը ու համոզումը կոմունիզմի հանդեպ:

Ոմանք բուրժուական գաղափարախոսության դեմ պայքարի ճանապարհը տեսնում են մեկուսացման և «դրսի աշխարհի» հետ կապերի խզման մեջ: Այս իր հիմքում սխալ և վնասակար կարծիք է, որովհետև մենք վախենալու ոչինչ չունենք: Մ. Գորկին հազար անգամ իրավացի էր, երբ ասում էր, թե վախենալ գաղափարական վարակից՝ նշանակում է չհավատալ դասակարգային ինքնագիտակցությանը: Եվ ոչ էլ խոսքն այն մասին է, թե հարկ է երիտասարդության համար մղվող պայքարում բռնել պաշտպանության ուղին:

Ընդհակառակը, խոսքն այն մասին է, որպեսզի յուրաքանչյուր պատանի և աղջիկ ամենուրեք հանդես գա կոմունիզմի գաղափարների համար մարտնչողի դերում, ո՛չ թե պաշտպանվի, այլ հարձակվի, քաջ գիտակցելով, որ մարքսիստական-լենինյան ուսմունքն ամենաճշմարիտը և ամենահզորն է, որ մեր սոցիալիստական հասարակարգն ամենաառաջադիմական և ամենահումանիստական հասարակարգն է:

Ի պատիվ մեր երիտասարդության պետք է ասել, որ նրա ճնշող մեծամասնությունը լավ է ըմբռնում իմպերիալիզմի գաղափարական դիվերսիայի ստոր նպատակները և արժանի հակահարված տալիս նրան: Բայց, միաժամանակ, չի կարելի ունկնդրել այն թմրեցնող օրորոցայինին, թե մեր դաստիարակության բնագավառում ամեն ինչ լավ է, ոչ մի պրոբլեմ գոյություն չունի: Ժամանակն է, որպեսզի նոր սերնդի դաստիարակման գործը վարող կազմակերպությունները չթերագնահատեն ու չանտեսեն բուրժուական գաղափարախոսության բացասական ներգործությունը աճող սերնդի վրա:

Մեծ չէ այն երիտասարդների թիվը, որոնք տառապում են նիհիլիզմով կամ ազգային սահմանափակությամբ, որոնք ստորաքարշում են բուրժուական կուլտուրայի և բարքերի առաջ, մեր կյանքում լավը չեն տեսնում: Սակայն, ստվար է այն երիտասարդների թիվը, որոնք չեն կարողանում ճիշտ ըմբռնել հասարակական կյանքի երևույթները, հանդես չեն գալիս կոմունիստական գաղափարների համար կրքոտ մարտնչողների դերում, սեփական եսից բացի, ուրիշ հոգսեր չունեն: Կան երիտասարդներ, որոնք խույս են տալիս հանրօգուտ աշխատանքից և չեն ըմբռնում, որ մեր հասարակարգում անձի բարեկեցությունը կախված է ամբողջ հասարակության բարեկեցությունից և այն աշխա-



տանքային մասնակցությունից, որ ինքը ցույց է տալիս այդ բարեկեցությունը ստեղծելու համար: Հենց նման երիտասարդներն են, որ ենթարկվում են խորթ ազդեցությունների, կորցնում սովետական մարդու հպարտությունը, լաթի կտորների հետ փոխանակում իրենց քաղաքացիական «ինքնասիրությունը»: Դրանք անճաշակ երգերի ու գռեհիկ պարերի երկրպագուներն են:

Երիտասարդ մարդը դաստիարակվում է շրջապատող միջավայրի ազդեցության տակ: Աշխատանքային կոլեկտիվն այն գլխավոր գործոններից մեկն է, որ վճռական ազդեցություն է ունենում երիտասարդի հայացքների ու բնավորության վրա: Բայց արտադրական միջավայրն էլ տարբեր է լինում և չպետք է կարծել, որ դաստիարակչական տեսակետից այն գերբնական ուժ ունի: Միամտություն կլիներ մտածել, թե արտադրության կազմակերպման գործում դեռևս տեղ գտնող խոշոր թերությունները, արտադրական գրաֆիկների խախտումները, ոչ ռիթմիկ աշխատանքը, արտադրական ցածր կարգապահությունը և այլն, միայն նյութական հսկայական վնաս են պատճառում: Հասարակությանը պատճառած դրանց բարոյական վնասն անհամեմատ ավելի մեծ է: Էլ չենք խոսում պետական գույքի հափշտակության, քծնանքի, ստորաքարշության, կաշառակերության մասին:

Երիտասարդը, որը շատ ավելի զգայուն է, խիստ հիվանդագին է ընդունում պետական օրենքների ոտնահարումը, խոսքի և գործի միջև դեռևս շատ դեպքերում գոյություն ունեցող հակասությունը: Պետական օրենքների, վերադաս օրգանների որոշումների նկատմամբ հարգանքի դաստիարակումը միայն կարգապահական միջոցառում չէ, այլ մարդկանց մեջ պետականության գիտակցություն, ներքին զսպվածություն և հասարակության, մարդու նկատմամբ հարգանքի դաստիարակություն է: Օրինակ, կան բազմաթիվ որոշումներ և օրենքներ դեռահասների աշխատանքային իրավունքների պահպանության վերաբերյալ, բայց առկա են նաև այդ որոշումների ու օրենքների բացահայտ ոտնահարման ու կամայականության բազմաթիվ փաստեր: Մի քանի ձեռնարկություններում դեռահասին ո՛չ միայն հարկադրում են սահմանված ժամանակից ավել և գիշերային հերթափոխություններին աշխատել, այլև ժամանակին չեն լուծում նրա բուժման, կրթության և հանգստի կազմակերպման հարցերը, նույնիսկ գտնվում են առանձին տնտեսավարներ, որոնք նրան հարկադրում են ստել, թաքցնել այդ խախտումները:

Այն ճիշտ սկզբունքը, որ ձեռնարկության ղեկավարը պատասխանատու է կոլեկտիվի բարոյա-քաղաքական վիճակի համար, շատ դեպքերում շարունակում է մնալ միայն սկզբունք, որը կյանքում չի կենսագործվում, որովհետև դրա համար տվյալ ղեկավարը պատասխանատվության չի կանչվում:

Հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման համար չարիք են բանվորական ուժի հոսունության հսկայական չափերը: Յուրաքանչյուր տարի 100—130 հազար մարդ ձեռնարկությունից ձեռնարկություն է անցնում և միևնույն կոլեկտիվում աշխատում է մեկ տարուց պակաս: Դրանք առավելապես երիտասարդ մարդիկ են, որոնք չունեն բանվորական որակավորում և հիմնականում զբաղված են օժանդակ աշխատանքներում: Իսկ բանվորական ուժի հոսունությունը չարիք է ո՛չ միայն ժողովրդական տնտեսության զարգացման համար. այն, առաջին հերթին, չարիք է այն մարդկանց դաստիարակության համար, որոնք տեղից տեղ թափառելը աստիճանաբար դարձնում են բնավորություն, իրենց դուրս դնում աշխատավորական կոլեկտիվներից և, ի

վերջը, գլորվում կամ մանրբուրժուական հոգեբանության ճահիճը կամ կանգնում հանցագործ ուղու վրա։

Տնտեսական ղեկավարներն առիթը բաց չեն թողնում պնդելու, որ հոսունության պատճառը աշխատավարձն է։ Սոցիոլոգիական ուսումնասիրություններն ասում են, որ աշխատավարձը միակ պատճառը չէ։ Ընտրովի հարցումները ցույց են տվել, որ տվյալ գործարանը թողած բանվորների միայն 20 տոկոսն է դժգոհ աշխատավարձից, իսկ 28 տոկոսը նույնիսկ գնացել է ավելի ցածր աշխատավարձով, բայց ավելի լավ պայմաններով աշխատանքի։ Գլխավոր պատճառները աշխատանքի կազմակերպման գործում եղած սխալներն ու թերություններն են, որոշ տեղերում որակավորում չպահանջող ֆիզիկական ծանր աշխատանքը, հանգստի ու կենցաղի վատ կազմակերպումը։

Ո՞րն է շինարարություններում բանվորական ուժի արտակարգ մեծ հոսունության պատճառը։ Աշխատավա՞րձը։ Ո՛չ։ Շինարարների աշխատավարձը բանվորների միջին աշխատավարձից ամենևին էլ ցածր չէ։ Գլխավոր պատճառն այն է, որ շինարարական կազմակերպություններում պետական օրենքները հաճախ չեն կիրառվում, շինարար բանվորների զգալի մասն իր աշխատանքում հեռանկար չի տեսնում, նրանց կրթական և կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացմամբ չեն զբաղվում, կուլտուր-կենցաղային տարրական պայմաններ չեն ստեղծվում։

Վերջին հինգ տարիների ընթացքում գյուղական շրջաններում 17—30 տարեկան երիտասարդների թիվը կրճատվել է 25—30 տոկոսով, իսկ, օրինակ, Կամոյի շրջանում՝ 54 տոկոսով։ Ո՞րն է գյուղից երիտասարդության արտահոսքի պատճառը։ Նյութական վիճա՞կը։ Ո՛չ։ Երիտասարդը լքում է գյուղը, առաջին հերթին, նրա համար, որ գյուղատնտեսական աշխատանքների վիճակի և այսօրվա երիտասարդի կրթական, կուլտուր-տեխնիկական մակարդակի միջև հակասություն է առաջացել։ Գյուղատնտեսական արտադրության մեքենայացման աստիճանը, հատկապես անասնապահության մեջ, շատ ցածր է։

Գյուղական երիտասարդությունն իր ընդհանուր զարգացմամբ, հանրակրթական մակարդակով ընդհուպ հասել է քաղաքի երիտասարդության մակարդակին և ձգտում է դեպի քաղաքի կուլտուրան. իսկ, օրինակ, Արթիկի որոշ գյուղերում նա մինչև օրս էլ ակումբներում կինո է դիտում քարերին նստած, որովհետև աթոռներ չկան և գրադարանն էլ գրադարանավարի բնակարանն է։

Այլ կերպ ասած, գյուղում կուլտուր-կենցաղային պայմանների անմխիթար վիճակը այսօր այն գլխավոր պատճառներից մեկն է, որ երիտասարդ մարդուն գյուղից քաղաք է բերում։

Խոսելով աճող սերնդի դաստիարակության գործում աշխատանքային միջավայրի նշանակության մասին, չի կարելի աչքաթող անել արտաաշխատանքային ժամանակի առանձնահատուկ կարևոր դերը երիտասարդության բնավորության և նույնիսկ աշխարհայացքի ձևավորման բնագավառում։ Այն պայմաններում, երբ, մի կողմից՝ տարեցտարի կրճատվում է աշխատաժամանակը, իսկ, մյուս կողմից՝ երիտասարդ մարդն աշխատանքից դուրս, տանը, փողոցում, հասարակական վայրերում վիթխարի ինֆորմացիա է ստանում, ենթարկվում հաճախ իրարամերժ ազդեցությունների, արտաաշխատանքային ժամանակի ճիշտ օգտագործումը ձեռք է բերում հսկայական քաղաքական նշանակություն։ Երևանի պայմաններում գործարանային բանվորի արտաաշխատանքային ժամանակը կազմում է 17 ժամ, որից տղամարդիկ 12,04 ժամը, իսկ կանայք 14,09 ժամը ծախսում են աշխատուժի պարզ վերարտադրության վրա (քնելու, սնվելու, աշխատանքի վայրը գնալու և վերադառնալու, տնային աշխատանքի, ինքնասպասարկման և այլն)։ Տղամարդկանց համար ազատ ժամանակ է մնում 4,10 ժամ, կանանց համար՝ 2,24 ժամ. իհարկե աշխատավորության արտաաշխատանքային ժամերից նրա հոգևոր և ֆիզիկական զարգացման համար տրամադրվող ժամանակը, եթե նկատի ունենանք կուլտուրական մարդուն ներկայացվող պահանջները, շատ քիչ է։ Ուստի, այդ ժամանակի ավելացումը, կուլտուր-կենցաղային սպասարկման օբյեկտների ցանցի ընդլայնումը, տնային աշխատանքների մեքենայացումն ու հանրայնացումը և այլն լրացուցիչ հնարավորություններ կընձեռեն մարդկանց հոգևոր պահանջմունքների բավարարման համար։ Բայց ավելի ակտուալ նշանակություն ունի արդեն առկա ազատ ժամանակի ճիշտ օգտագործումը, որովհետև այդ ժամանակի մեծացումը, եթե այն սխալ է օգտագործվում, ո՛չ միայն օգտակար չէ, այլև վնասակար ազդեցություն կարող է ունենալ հատկապես երիտասարդության դաստիարակության վրա։

Գիտական ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ Երևանում գործարանի բանվորի ազատ ժամանակի միայն կեսն է ծախսվում նրա կրթական մակարդակի բարձրացման, քաղաքական և կուլտուր-տեխնիկական գիտելիքների հարստացման վրա, իսկ մյուս կեսը՝ մարդու հոգուն և մտքին սնունդ չտվող զբաղմունքների վրա։

Բավարար չէ երեխաների արտադպրոցական ժամանակի օգտագործման վիճակը։ Երեխան իր ժամանակի ծանրակշիռ բաժինն անց է կացնում բակում, բայց մեր բակերը թե՛ իրենց վիճակով, և թե այնտեղ կազմակերպվող աշխատանքով չեն ապահովում հասարակության պատշաճ ազդեցությունը մանուկների և պատանեկության դաստիարակության վրա։ Այդ է պատճառը, որ բակերն են դարձել այն վայրերը, ուր տեղի է ունենում անչափահասների հանցագործությունների մեծ մասը։ Բացառություն են կազմում ամառային արձակուրդների ժամանակ կազմակերպվող բակային ճամբարները։ Ի դեպ, բնորոշ է, որ շնորհիվ այդ ճամբարների, ամռան ամիսներին երեխաների շրջանում հանցագործությունները կրճատվում են 1,5 անգամ։ Ժամանակն է, որպեսզի դաստիարակչական աշխատանքների ընդհանուր շղթայում բակը գրավի իր առանձնահատուկ տեղը, ձեռնարկվեն արմատական միջոցառումներ բակերի բարեկարգման, ժամանցի հնարավորությունների ստեղծման, հասարակայնության ուժերի կազմակերպման, ըստ բնակության վայրի երեխաների շրջանում տարվող աշխատանքների վիճակն արմատապես բարելավելու համար։

Գործող սպորտային բազաների, կուլտուր-լուսավորական օջախների աշխատանքների բարելավումը, դրանց ցանցի ընդլայնումը, երիտասարդության ժամանցի նպատակասլաց կազմակերպումն այսօր զուտ լուսավորչական բնույթի հարց չէ, այլ գաղափարական աշխատանքի վճռող բնագավառներից, աճող սերնդի լայն մասսաների վրա կուսակցության, կոմերիտմիության ազդեցության ապահովման հիմնական միջոցներից մեկը։

Երիտասարդության դաստիարակության գործում տեղ գտած թերությունները հետևանք են նաև այն բանի, որ տարիներ շարունակ աճող սերնդի գաղափարական դաստիարակության նկատմամբ դրսևորվում էր ոչնչով չարդարացվող անուշադրություն. այդ ուղղությամբ տարվող աշխատանքները մղ-

վեցին ետին պլան, նույնիսկ կոմերիտմիությունում ավելի շատ խոսում էին թվերի ու տոկոսների մասին, քան հետաքրքրվում, թե ինչով է շնչում երիտասարդ մարդը, ինչ հարցեր են նրան հուզում: Դրա հետևանքով երիտասարդության շրջանում տարվող գաղափարական աշխատանքները ետ մնացին նրանց ներկայացվող պահանջներից, որի հետևանքով և անբավարար է ապահովվում կոմերիտմիության ազդեցությունը պատանիների ու աղջիկների լայն մասսաների շրջանում: Քիչ վնաս չհասցրեց գաղափարական աշխատանքներում հաճախ դրսևորվող դոգմատիզմը, տիրացուականությունը, ձեռներեցության բացակայությունը:

Դպրոցում ևս մեր մանկավարժների մի պատկառելի մասը կուսակցության քաղաքականությունը աշակերտներին խորությամբ և հասկանալի բացատրելու փոխարեն, բավարարվում են լոզունգների և հանրահայտ ճշմարտությունների պարզունակ շարադրմամբ: Այդպիսիները ամեն կերպ աշխատում են աշակերտներին «հեռու պահել» հասարակական-քաղաքական պրոբլեմներից, միամտաբար կարծելով, որ այդ երեխաները, բացի ֆուտբոլից, ի վիճակի չեն հասկանալու հասարակական կյանքի լուրջ հարցերը: Սա խոր մոլորություն է, որ, ընդհանուր առմամբ, վնասելով գաղափարական աշխատանքի արդյունավետությանը, միաժամանակ, առանձին դեպքերում, ունենում է ողբերգական հետևանքներ:

Աճող սերնդի հետ տարվող աշխատանքներում մենք հաճախ ուշադրություն չենք նվիրում երկու հանգամանքների. նախ, որ մեր ժամանակներում երեխաների մտավոր հասունությունը շատ ավելի վաղ և արագ է կատարվում, քան, թեկուզ, մեկ տասնամյակ առաջ և, երկրորդ, որ այժմ երեխան, փաստորեն, ավելի մեծ ինֆորմացիա է ստանում, քան մեծահասակներից շատերը: Ըստ որում, նա (ի դեպ նաև գյուղում) մեծահասակներին հավասար օգտվում է վերջիններիս մատչելի պրոպագանդիստական միջոցներից:

Չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ ռադիոն, հեռուստատեսությունն ու կինոն դարձել են մանուկների ու դպրոցականների դաստիարակության ամենահզոր միջոցներից մեկը: Բազմաթիվ օրինակներ կարելի է բերել, երբ պատանեկությունը ո՛չ միայն իր հայացքները, այլ նույնիսկ շարժ ու ձևը, հագուստի տեսակը փոխ է առնում կինոնկարներից, իր իդեալն փնտրում այս կամ այն կինոարտիստի, կինոհերոսի մեջ, խնամքով պահում նրանց նկարները: Կան նույնիսկ փաստեր, երբ հանցագործություն կատարելիս, պատանուն առաջնորդել է որևէ կինոնկարի հերոս: Բայց մեր կինոթատրոնները, չնչին բացառությամբ, նրանց մանկա-պատանեկան երևակայությանը հրամցնում են կինոնկարներ, որոնք հարմար են մեծահասակներին: Այն պայմաններում, երբ երեխան կինո է հաճախում գրեթե ամեն շաբաթ՝ նա, նույնիսկ Երևանում, մանկա-պատանեկան կինոնկարներ դիտելու հնարավորություն ունի միայն երկուսից-երեք ամիսը մեկ անգամ: Նույնը և հեռուստատեսությունը: Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ սիստեմատիկաբար հեռուստացույց դիտողների 80—85 տոկոսը երեխաներն ու ծերերն են, բայց մեր հեռուստատեսության աշխատանքներում այդ վիճակը հաշվի չի առնվում:

Գաղափարական ներգործության միջոցների նման օգտագործման հետևանքով երեխայի հոգեկան աշխարհը զրկվում է նորմալ աճի հնարավորությունից: Մանավանդ, եթե նկատի առնենք, որ երեխան ի վիճակի չի լինում մարսելու այդ վիթխարի ինֆորմացիան, չի կարողանում խորանալ և ճիշտ



ընկալել դրա իմաստը: Մեր կինոթատրոններում ցուցադրվեց ամերիկյան Խելակորույս, խելակորույս, խելակորույս աշխարհ կինոնկարը, որը ֆիլմ էր այն մասին, թե դոլարը, հարստության կիրքը ինչպես է մարդկանց միջից քամել, հանել նվիրականը՝ մարդկայինը: Բայց շատ պատանիներ այդ կինոնկարի մեջ տեսան, ընկալեցին միայն ժամանակակից հրապուրիչ մեքենաները, գռեհիկ տուրուդմփոցները:

Իհարկե, խոսքն այն մասին չէ, թե կարճ ժամանակամիջոցում պետք է ստեղծել մանկական կինոթատրոնների լայն ցանց: Ո՛չ: Պարզապես պետք է վերջ դնել կինոկոմերցիային: Մի՞թե հնարավոր չէ լուծել մեկ հարց, որպեսզի բոլոր կինոթատրոններում ցերեկները կազմակերպվեն մանկա-պատանեկան կինոնկարների ամենօրյա ցուցադրումներ, որ որոշ կինոնկարներ ցուցադրելուց առաջ հասարակությանը բացատրվի նրա իմաստը, էությունը, թեկուզ կինոսեանսն սկսելուց առաջ: Մի՞թե ճիշտ չէ, որ վերջին յոթ տարվա ընթացքում մեր կինոստուդիաները մանկապատանեկան ոչ մի ֆիլմ չեն նկարահանել, որ դադարել է գործելուց նույնիսկ «Պիոներիա» կինոամսագիրը: Չէ՛ որ մանուկները մեր հասարակության ամենաստվար շերտն են և ամենից ավելի կարիք ունեն լավ կինոնկարի: Նույնը և գրականությունը:

Եթե մի քանի տարի առաջ մեր երիտասարդությունն արտասահմանյան հեղինակներից հիմնականում հրապուրվում էր Ռեմարկի գրքերով, ապա այժմ երիտասարդության շրջանում մասսայականություն են վայելում արտասահմանյան մի շարք հեղինակներ՝ Հեմինգուեյը, Ստեյնբեկը, Սելինջերը և ուրիշներ, գրողներ, որոնց հայացքները մեզ համար տարբեր չափով են ընդունելի, իսկ նրանց որոշ ստեղծագործություններ պատանեկության կողմից ընկալվում են ոչ ճիշտ կողմերով: Պատկերն ավելի պարզ կլինի, եթե նկատի առնենք, որ մեզ մոտ տարեցտարի ավելի քիչ են երևան գալիս սովետական գրողների գործեր, որոնք հագեցված լինեն հեղափոխական պաթոսով, գեղարվեստական խոսքի մեծ ուժով արտացոլեն մեր կյանքը, ստեղծեն ժամանակակից երիտասարդ սերնդի համար նվիրական կերպարներ: Դրա փոխարեն բազմաթիվ են այն գրքերը, որոնք ավելի շատ տարտամ տրամադրություններ են տարածում, քան ոգեորում երիտասարդներին: Այդ հատկապես բնորոշ է երիտասարդական գրականությանը: Դժբախտաբար, թե՛ արձակում և թե՛ պոեզիայում քիչ տեղ չեն գրավում գաղափարազուրկ գործերը: Ինչ վերաբերում է մանուկների համար հրատարակվող գրականությանը, ապա նրա շատ երկերի բնորոշ գիծը պարզունակությունն ու գեղարվեստական ցածր մակարդակն է: Անհրաժեշտ է ավելի ուշադիր վերաբերվել արտասահմանյան գրականությանը և մեր երիտասարդությանը հրամցնել նրա պրոգրեսիվ և առողջ մասի հոգևոր արդյունքները:

Երիտասարդներին հաճախ են կշտամբում, որ նրանց մի մասը տարված է արտասահմանյան երգերով ու պարերով (երբեմն նաև գռեհիկ պարերով), վայրագ երաժշտությամբ: Իրավացի են, և մենք պարտավոր ենք պայքարել դրա դեմ: Բայց մեր երիտասարդ մարդուն դժվար է պատկերացնել առանց իր ժամանակակից պարի ու երգի: Ընտրության գործում ոչ մի հարկադրական միջամտություն արդյունավետ լինել չի կարող: Իսկ մեր կոմպոզիտորները իրենց ամբողջ տաղանդը ներդնում են, այսպես կոչված, մնայուն գործերի, հատկապես սիմֆոնիաների ստեղծման վրա, իսկ երգ, այն էլ դինամիկ շնչով, կենսաբույր երգեր չեն ստեղծում: Բավական է ասել, որ վերջին 15 տարվա

ընթացքում չի ստեղծվել մանկական-երիտասարդական ոչ մի մասսայա-
կան պար: Պատահական չէ, որ այս պայմաններում հրապարակը զբաղեց-
նում են, մի կողմից, դրսի երգն ու պարը, իսկ, մյուս կողմից, «Թաք տա-
ներին, տաներին» գռեհկության մարմնացում հանդիսացող երգերը, իսկ մանկա-
կան անսամբլների պարերը մեծահասակների պարերի պատճենահանում-
ներն են, երբ երեխան ո՛չ թե պարում, այլ անիմաստ շարժումներ է կա-
տարում:
Տարբեր սերունդներ, ընդհանուր շատ գծերի հետ միասին ունեն իրենց
առանձնահատուկ կողմերը, հակումները: Հետևաբար, աճող սերնդի շրջանում
տարվող աշխատանքների ձևերն ու մեթոդները, նույնիսկ այդ աշխատանքի
բովանդակությունը ժամանակի պահանջներին համապատասխան ենթակա է
անընդհատ փոփոխության: Ավելին, պատանեկության տվյալ սերնդի տարբեր
շերտերն էլ մոտեցման և աշխատանքի տարբեր ձևեր ու մեթոդներ են պահան-
ջում: Ով ուսանողների շրջանում նույն ձևով կաշխատի, ինչպես երիտասարդ
բանվորների, հաջողության չի հասնի: Բանն այն է, որ մեզնում այդ աշխա-
տանքները շատ դանդաղ են կատարելագործվում և անբավարար են հաշվի
առնվում երիտասարդության տարբեր շերտերի առանձնահատկությունները:
Նայենք դպրոցին: Այնտեղ տարվող դաստիարակչական աշխատանքները վեր-
ջին 20—25 տարում էական փոփոխությունների ենթարկվե՞լ են: Կարծում ենք,
ո՛չ: Տիեզերագնացության ժամանակաշրջանում աշակերտության հետ աշխա-
տել տասնյակ տարիների հնություն ունեցող մեթոդներով, արդյունավետ լի-
նել չի կարող: Դպրոցներում այսօր սուր պրոբլեմ է տղաների հարցը: Նրանց
զգալի մասը դպրոցի հասարակական կյանքին չի մասնակցում, կոմերիտական
աշխատանք չի տանում: Դեռ ավելին, տղաները անհամեմատ շատ են լքում
դպրոցը, հատկապես բարձր դասարաններում, աղջիկների հետ համեմատած
հանդես են բերում ցածր առաջադիմություն, նրանցից քչերն են մասնակցում
գեղարվեստական ինքնագործունեությանը:
Փորձված մանկավարժներն այն կարծիքին են, որ այս պրոբլեմի լուծման
գլխավոր միջոցը դպրոցներում տեխնիկական ստեղծագործության համակող-
մանի զարգացումն է: Տղաները տեխնիկայի նկատմամբ մեծ հետաքրքրասի-
րություն են հանդես բերում: Մինչդեռ, մեր հանրապետությունում դպրոցա-
կանների տեխնիկական ստեղծագործությունը՝ ոչ ընդգրկված աշակերտների
(թվաքանակով) և ո՛չ էլ բովանդակությամբ, ո՛չ միայն չի բավարարում
երեխաների պահանջները, չի ապահովում նրանց մասնագիտական ճիշտ
կողմնորոշումը, այլև չի համապատասխանում հանրապետության տեխնիկա-
կան առաջադիմությանը: Դպրոցների տեխնիկական խմբակների մեծ մասը
աշխատում է պրիմիտիվ մեթոդներով, չունի համապատասխան ծրագրեր,
նյութեր, դրանց աշխատանքներում հաշվի չեն առնվում արդյունաբերության,
տեխնիկայի զարգացման առաջատար ուղղությունները: Դպրոցների մեծ մա-
սում ուսուցիչներն ի վիճակի չեն անցկացնելու պարապմունքներ այնպիսի
ուղղություններով, ինչպիսիք են տիեզերագնացությունը, հաշվողական մաթե-
մատիկան, կիբեռնետիկան, ավտոմատիկան, որոնց նկատմամբ դպրոցական-
ներն առավել հետաքրքրասիրություն են հանդես բերում: Եվ այս այն ժամա-
նակ, երբ մեզ մոտ ռեալ հնարավորություններ կան երեխաների շրջանում
տեխնիկական ստեղծագործությունը նոր հիմքերի վրա դնելու համար:
Այն հանգամանքը, որ նոր սերնդի սեռական դաստիարակության հոգսը



դուրս է մնացել մանկավարժների, ծնողների, հրատարակչությունների և տար-
բեր պետական հիմնարկների տեսադաշտից, միանգամայն բացասաբար է
անդրադառնում մարդկանց ընտանեկան կյանքի վրա: Որոշ մանկավարժներ
նույնիսկ ամաչում են այդ մասին խոսել, աչք են փակում փաստերի առջև:
Սիրելը ևս արվեստ է, մարդու հոգեկան աշխարհի հարմոնիկ զարգացման կա-
րևոր նախապայման: Մանկավարժը չի կարող դաստիարակության շղթայից այն
դուրս գցել, ընդհակառակը, նա պարտավոր է օգնել պատանուն և աղջկան
ապրելու առողջ կյանքով, սիրել և սիրվել կարողանալու, նրա մեջ ճիշտ վե-
րաբերմունք դաստիարակել դեպի ընտանիքը, հոգ տանել սովետական ընտա-
նիքի, ընտանեկան կապերի ամրացման համար:
Գաղափարական աշխատանքի ձևերի ու մեթոդների որոշ քարացածու-
թյունն առանձնապես բացասաբար է անդրադառնում կոմերիտական-քաղա-
քական լուսավորության սիստեմի վրա. մի կողմից՝ տևական անուշադրու-
թյունը պրոպագանդիստական կադրերի պատրաստման, կոմերիտական պրո-
պագանդայում տեխնիկական միջոցների լայն օգտագործման նկատմամբ,
մյուս կողմից՝ ուսումնական նյութերի պակասն ու կայուն ձեռնարկների բա-
ցակայությունը: Սրանք մեծապես խանգարում են նոր սերնդի աշխարհայացքի
ձևավորմանը: Բացի այդ, անհրաժեշտ է լուծել պրոպագանդիստական (նույնը
և դասախոսական կադրերի) պատրաստման խնդիրը: Այն պատճառաբանու-
թյունը, թե մեծ թվով բարձրագույն կրթությամբ մտավորականության առ-
կայության պայմաններում դրա անհրաժեշտությունը չկա, իր հիմքում սխալ
է, որովհետև այն կոնտինգենտը, որի հետ այսօր աշխատում է պրոպագան-
դիստը, թե՛ իր կրթական և թե՛ ընդհանուր զարգացման մակարդակով, պրո-
պագանդիստից պահանջում է ո՛չ միայն գիտելիքների հարուստ պաշար, լա-
վատեղյակություն կյանքում կատարվող իրադարձություններին, այլև խոսքի
մեծ կուլտուրա, համոզելու կարողություն, քաղաքական աշխատանքի բազմա-
զան ձևերն ու մեթոդները կիրառելու, երիտասարդ մարդու հոգու հետ խոսելու
ունակություն, հեղափոխական կրքոտություն:
Մենք կկարողանանք երիտասարդության շրջանում տարվող գաղափարա-
կան աշխատանքը բարձրացնել նրան ներկայացվող պահանջների մակարդա-
կին, եթե այդ բնագավառում ճիշտ զուգակցենք գաղափարական պայքարի
բոլշևիկյան ավանդները ժամանակակից երիտասարդությանը սոցիալական վի-
ճակի, տրամադրությունների, հետաքրքրասիրությունների ու ձգտումների գի-
տական ուսումնասիրության հետ: Սոցիոլոգիան և սոցիոլոգիական ուսումնա-
սիրություններն այն աղբյուրներն են, որոնց հետևություններից պետք է օգտը-
վեն մեր պրոպագանդիստները:
Երիտասարդության շրջանում տարվող աշխատանքներում դեռևս պակա-
սում են հեղափոխական ռոմանտիկան, գաղափարական հագեցվածությունը,
ոչ քիչ դեպքերում այդ աշխատանքներում թափանցում են քաղքենիական
նվնվոցներ, դրանցում նկատվում է սովետական հասարակության նվաճում-
ների խելացի և գիտական պրոպագանդայի պակաս: Մինչդեռ, կարևորագույն
խնդիր է, որպեսզի աճող սերնդին հասկանալի և ընդունելի մեթոդներով բա-
ցատրվեն սովետական մարդկանց այն վիթխարի ջանքերը, որ նրանք ներդրել
են մեր կյանքի վերափոխման, յուրաքանչյուր գործարանի, էլեկտրակայանի,
կուլտուրայի օջախի, քաղաքի ու գյուղի կառուցման մեջ: Այդ ունի հսկայա-
կան նշանակություն, որովհետև աճող սերնդի կոմունիստական դաստիարա-

կությունը, առաջին հերթին, կոչված է նրա մեջ ձևավորելու հայրենասիրու-
թյան, քաղաքացիական պարտքի բարձր զգացում և արժանապատվություն,
դասակարգային ինքնագիտակցություն։
Ժամանակակից երիտասարդ սերնդին դաստիարակել սովետական հայրե-
նասիրության ոգով, նշանակում է սոցիալիստական հասարակարգի զարգաց-
մա՝ն վերլուծության, հեղափոխական անցյալի, աշխատանքային հերոսապա-
տումների, մեր վիթխարի նվաճումների ու կոմունիստական գալիքի պրոպա-
գանդման միջոցով երիտասարդության մեջ անկոտրում ձգտում առաջացնել
իր ուժերն ու եռանդն ամբողջությամբ ի սպաս դնելու մեր հասարակության
զարգացման շահերին։ Երիտասարդության դաստիարակությունը, եթե ֆոր-
մուլայով արտահայտելու լինենք, կունենա հետևյալ տեսքը՝ պատանիներին ու
աղջիկներին սովորեցնել լենինաբար մտածել, լենինաբար աշխատել և լենի-
նաբար ապրել։
Կուսակցության XXIII համագումարից հետո երիտասարդությանը մեր
ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդություն-
ներով դաստիարակելու գործը զգալի աշխուժացում է ապրել, որը բարերար
մեծ ազդեցություն է գործում պատանիների ու աղջիկների վրա։ Բայց այս
ուղղությամբ բոլոր հնարավորությունները լիովին չեն օգտագործվում։
Կոմունիստական կուսակցությունը մեր հասարակության զարգացման
բոլոր ժամանակաշրջաններում կոմերիտմիության գլխավոր խնդիրներից մեկն
է համարել երիտասարդության պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ՍՍՀՄ
ժողովուրդների բարեկամության ոգով դաստիարակությունը։ Հպարտությամբ
կարող ենք ասել, որ սովետական երիտասարդությունը սրբությամբ պահ-
պանում և զարգացնում է մեր ժողովրդի ինտերնացիոնալ ավանդություն-
ները։
Բայց ինտերնացիոնալ դաստիարակության ձևերն ու մեթոդները կատա-
րելագործվում են շատ դանդաղ, այդ խնդիրը անբավարար է ենթարկվում
գիտական լուրջ մշակման, վատ են օգտագործվում եղած հնարավորություն-
ները. այդ աշխատանքները հաճախ զուրկ են կոնկրետ հասցեից, կրում են լոկ
ընդհանուր միջոցառումների բնույթ, դրանք կազմակերպելիս հաշվի չեն առնը-
վում առանձին անհատների տրամադրությունները, մտածելակերպը։
Կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները պետք է սիս-
տեմատիկաբար զբաղվեն նոր սերնդի գաղափարական դաստիարակությամբ,
արագորեն վերացնեն դաստիարակչական աշխատանքում եղած թերություն-
ներն ու բացերը, ավելի կոնկրետ և նպատակասլաց զբաղվեն երիտասարդու-
թյան հայրենասիրության և ինտերնացիոնալ դաստիարակության հարցերով,
ապահովեն նոր մարդու ձևավորման ուղղությամբ կուսակցության XXIII հա-
մագումարի որոշումների անշեղ կատարումը։



Ա. ԹԵԼՈՒՆՑ

# ԲՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Բնության և հասարակության փոխհարաբերության պրոբլեմը միշտ էլ զբաղեցրել է փիլիսոփայական ու գիտական միտքը։ Տարբեր ձևերով դա զբաղեցրել է մարդկանց շատ ավելի վաղ ժամանակներում, յուրովի արտացոլում գտել առասպելաբանության մեջ, կրոնական պատկերացումներում ու հայացքներում։ Նշենք թեկուզ այն, որ ամեն մի կրոնի մեջ, այս կամ այն ձևով, տեղ է գտնում բնության ուժերի պաշտամունքը, որը, հասկանալի է, մարդու և բնության փոխհարաբերության յուրահատուկ արտացոլում է. այդպիսին է և անտրոպոմորֆիզմը՝ բնության ուժերին ու երևույթներին մարդկային հատկանիշներով օժտելը։ Սակայն մարդկային մտքի հեռավոր անցյալն անգամ չի բնութագրվում միայն առասպելաբանական ու կրոնական պատկերացումներով, ինչպես դա ճգնում են հավատացնել բուրժուական որոշ գաղափարախոսներ։ Կյանքի ռեալ պահանջները և հասարակական-արտադրական պրակտիկան պայմանավորել են մարդկանց զգաստ վերաբերմունքը դեպի բնությունը, ըմբռնումն այն փաստի, որ մարդու աշխատանքը, նրա գործունեությունն է ապահովում կենսական միջոցների հայթայթումը, հասարակության գոյությունը։

Զարգացող մարդկային միտքն աստիճանաբար հրաժարվելով կրոնական առասպելներից, որոնք աստծուն էին վերագրում մարդու և հասարակության ծագումը, պետք է, անհրաժեշտաբար, իրեն հուզող հարցերի պատասխանը բխեցներ բնության և հասարակության իրական գործոնների, երկրային ուժերի ուսումնասիրությունից, բնության մեջ փնտրեր այն նախադրյալները, որոնք պայմանավորել են մարդու և հասարակության ծագումը, և, վաղ թե ուշ, հանգեր այն գաղափարին, որ հասարակությունը բնության զարգացման արգասիքն է, բնության պատմության շարունակությունը։

Ինքնին հասկանալի է, որ բնության և հասարակության փոխհարաբերության պրոբլեմը, որը ներառում է դասակարգերի կենսական շահերը շոշափող բազմաթիվ ու բազմազան հարցեր և էապես առնչվում է փիլիսոփայության հիմնական հարցին, պետք է դառնար և դարձել է փիլիսոփայական և, առհասարակ, գաղափարական սուր պայքարի ասպարեզ։ Իրոք, այդ պրոբլեմի գիտական լուծումն, ամենից առաջ, հակադրվում է կրոնական ու իդեալիս-

տական ուսմունքներին, որոնք բնությունը և հասարակությունը հավասարապես ենթարկում են ինչ-որ գերբնական ուժերի՝ աստված, ոգի կամ իդեա անվան տակ կամ բնության ու հասարակության գոյությունն անգամ բխեցնում են մարդկային սուբյեկտից։ Բայց այստեղից բնավ չի հետևում, թե հասարակության կյանքում բնության դերի ամեն մի հիշատակում ինքնին արդեն ուղղված է կրոնական ու իդեալիստական հայեցողությունների դեմ և օժտված է գիտական արժանիքներով։

Հասարակական կյանքի վրա բնության ունեցած ազդեցության փաստը գրավել է դեռևս անտիկ աշխարհի մտածողների ուշադրությունը։ Բայց բնության և հասարակության փոխհարաբերության վերաբերյալ հայացքների ձևավորված սիստեմը հանդիպում է բավական ուշ, արդեն վերջին դարերում՝ այսպես կոչված, «աշխարհագրական դպրոցի» ներկայացուցիչների մոտ, որոնցից աչքի են ընկնում հատկապես ֆրանսիացի լուսավորիչ Շ. Մոնտեսքյոն (XVIII դար), անգլիացի սոցիոլոգ Բոկլը (XIX դար), ռուս սոցիոլոգ Մեչնիկովը (XIX դար) և ուրիշներ։

Այդ ուղղության կամ, ինչպես այլ կերպ կոչում են, աշխարհագրական դետերմինիզմի ներկայացուցիչները, որպես հասարակության զարգացման որոշիչ գործոն ընդունում են աշխարհագրական միջավայրը, սովորաբար ընդգծելով այդ ընդհանուր գործոնի որևէ կոնկրետ կողմը, օրինակ՝ կլիման. լանդշաֆտը, երկրի ջրային ոլորտը՝ գետերը, ծովերը, օվկիանոսները և այլն։

Աշխարհագրական դետերմինիզմը որոշակի պրոգրեսիվ դեր է կատարել հասարակության վերաբերյալ մտքի պատմության մեջ. նա հրաժարվել է հասարակության մասին կրոնական ու միստիկական պատկերացումներից ու փորձել է վերհանել հասարակական զարգացման իրական գործոններից մեկի՝ աշխարհագրական միջավայրի դերը։ Սակայն այդ դպրոցը հեռու էր հասարակության մասին հետևողական գիտական ուսմունք ստեղծելու հնարավորությունից։ Աշխարհագրական գործոնների մեջ տեսնելով հասարակության զարգացման միակ կամ վճռական ուժը և անտեսելով հասարակության ակտիվ դերը աշխարհագրական միջավայրի օգտագործման ու փոփոխման ոլորտում,— իսկ դա անխուսափելի է, քանի դեռ չի տրված պատմության միակ գիտական, մատերիալիստական մեկնաբանությունը,— աշխարհագրական դետերմինիզմն իրեն դրել էր մարդկության առաջադեմ մտքի հետագա զարգացման ուղուց դուրս։ Արդեն XIX դարում այն օգտագործվում է ակնհայտ հակագիտական մտքեր հիմնավորելու, օրինակ, սոցիալական անհավասարությունը աշխարհագրական պայմաններով բացատրելու համար։ Դարավերջին հիմնադրվում և հետագայում (իմպերիալիզմի դարաշրջանում) լայն տարածում է գտնում գեոպոլիտիկա կոչված ռեակցիոն քաղաքական մի դոկտրինա, որն արդեն միտումնավոր աղճատում է աշխարհագրական միջավայրի դերն ու նշանակությունը, քաղաքականության բնույթը կախման մեջ դնում աշխարհագրական գործոններից և այդ ամենը մի նպատակով՝ հիմնավորելու ու արդարացնելու համար իմպերիալիստական տերությունների ագրեսիվ ու էքսպանսիոնիստական քաղաքականությունը, իմպերիալիստական սպանդների նախապատրաստումն ու սանձազերծումը, գաղութների թալանը, ուրիշի տերիտորիաների զավթումներն ու քաղաքական բնույթի այլ կամայականություններ։ Ընդսմին, գեոպոլիտիկական հայացքները խստիվ կաղապարվում են ըստ տվյալ երկրի իմպերիալիստական գիշատիչների պահանջների ու մի-



տումների. գերմանական գեոպոլիտիկները, սկսած Ռատցելից ու Հաուսհոֆենից, աշխարհագրական տվյալներով «հիմնավորում են» Գերմանիայի պայքարը «կենսական տարածություն» զավթելու, Եվրոպայի և ապա ամբողջ աշխարհի վրա նրա տիրապետելու «իրավունքը», որ, բնականաբար, որդեգրվեց ֆաշիզմի կողմից և պաշտոնական դոկտրինայի ուժ ստացավ. ամերիկյան գեոպոլիտիկները՝ Սպիկմենը և նրա հետնորդները նման «իրավունք» վերապահում են ԱՄՆ-ին, որ, բնական է, ռեակցիոն նպատակներով լայնորեն օգտագործում են այդ երկրի իմպերիալիստական շրջանները։

Աշխարհագրական միջավայրի, այսինքն՝ հասարակության գոյության ու զարգացման բնական պայմանի, հասարակական կյանքի, մասնավորապես, նրա արտադրության ոլորտին անմիջականորեն առնչվող բնության գործոնների դերի գիտական մշակումն ունի կարևորագույն տեսական ու պրակտիկ նշանակություն, որին ավելի ընդգծված է դարձնում աշխարհագրական գործոնների նկատմամբ ռեակցիոն հայացքների ջախջախման պահանջը։ Հարկ է նշել և այն, որ գրականության մեջ հաճախ այդ պրոբլեմի քննարկումը հիմնականում հանգեցվում է այն թեզի ապացուցմանը, որ աշխարհագրական միջավայրը չի կարող հասարակության զարգացման գլխավոր գործոնը հանդիսանալ, և ստվերի մեջ է մնում բուն պրոբլեմը՝ այն բանի պարզաբանումը, թե իսկապես ինչպիսի դեր է կատարում բնությունը հասարակական կյանքում, նրա զարգացման մեջ, ինչպե՞ս է այդ դերը դրսևորվում տարբեր պատմական ժամանակներում, ինչպե՞ս է աճում մարդու տիրապետությունը բնության նկատմամբ, ի՞նչ պրակտիկ նշանակություն ունի այդ պրոբլեմի գիտական մշակումը ժամանակակից պայմաններում և այլն։

Այն հայացքները, որոնք բնության գործոնների մեջ են տեսնում հասարակության զարգացման որոշիչ մոմենտը, մեղանչում են գիտության փաստերի և տրամաբանության առջև։ Փաստերը խոսում են այն մասին, որ միանման աշխարհագրական պայմաններ ունեցող տերիտորիաներում հանդիպում են զարգացման տարբեր մակարդակ ունեցող երկրներ և պրակտիկորեն անփոփոխ աշխարհագրական պայմաններում գտնվող երկիրն անցնում է զարգացման տարբեր աստիճաններ։ Աշխարհագրական դետերմինիզմի դիրքերից ելնելիս՝ հասարակական կարգերի ու հարաբերությունների փոփոխման հիմքում համապատասխան փոփոխություններ պետք է տեսնեինք աշխարհագրական պայմանների մեջ, այնինչ պատմությունը նման ընդհանրացման համար ծանրակշիռ տվյալներ չի տալիս։ Այն հանգամանքը, որ Հունաստանը մի ժամանակ տնտեսական, քաղաքական ու հոգևոր զարգացմամբ գերազանցում էր մյուս երկրներին և իր ազդեցությունն ու տիրապետությունը տարածում սեփական տերիտորիայից շատ ու շատ հեռու, իսկ մի այլ ժամանակ ի վիճակի չէր ապահովելու անգամ ինքնուրույնությունը, այս ամենը չեն կարող բացատրվել աշխարհագրական միջավայրով։ Դեռևս Հեգելն է նկատել, որ հոնիական մեղմ կլիման շատ է նպաստել Հոմերոսի պոեմների նրբագեղությանը, բայց մենակ կլիման չէր կարող Հոմերոսներ ծնել, և ասենք միշտ չի ծնում դրանց, օրինակ թուրքերի տիրապետության տակ (տե՛ս **Гегель**, Соч., т. VIII, стр. 76)։ Ինչ վերաբերում է քաղաքականությունն աշխարհագրական պայմաններից բխեցնելու գեոպոլիտիկական ճիգերին, ապա այստեղ մենք գործ ունենք ո՛չ թե երևույթների գիտական բացատրության փորձի, այլ սոցիալական ռեակցիայի տեսական սպասարկման հետ։

Հասարակության զարգացման մեջ աշխարհագրական միջավայրի դերի լուսաբանումը, հասարակության և բնության փոխհարաբերության պրոբլեմի գիտական մշակումը ամբողջապես հնարավոր եղավ միայն պատմության մատերիալիստական ըմբռնման դիրքերից։

Պատմական մատերիալիզմը հասարակությունը դիտում է որպես մարդկանց համատեղ կյանքի ու գործունեության գոյաձև, սոցիալական կապերի ու հարաբերությունների կազմավորված ու զարգացող սիստեմ։ Հասարակությունը ծագել է բնության մեջ, նրա զարգացման որոշակի աստիճանում և զարգացման ինչ մակարդակի վրա էլ գտնվի՝ նրա գոյության մշտական պայմանը, նրա զարգացման կարևորագույն գործոններից մեկը բնությունն է, և, իր բոլոր առանձնահատկություններով հանդերձ, կազմում է նրա մի մասը։ Բնությունը մարդկային աշխատանքի, արտադրական գործունեության համընդհանուր ոլորտն է, նյութական ուժերի ու միջոցների անսպառ շտեմարանը, որից մարդիկ քաղում և վերամշակելով արտադրում են այն ամենը, ինչով ապահովում են իրենց կենսական պահանջմունքները։

Հասարակության և բնության փոխհարաբերությունն իրենից ներկայացնում է բարդ ու բովանդակալից մի պրոցես իր ուրույն գծերով՝ պատմական զարգացման տարբեր շրջաններում, մշտապես ծագող ու լուծվող հակասություններով և այլն։ Այդ պրոցեսի բազմակողմանի հետազոտությունը բոլոր գիտությունների, այդ թվում և փիլիսոփայության առաջնակարգ խնդիրն է, ընդ որում, եթե հատուկ գիտություններն ուսումնասիրում են նրա առանձին կողմերը, ապա փիլիսոփայությունը քննարկում է պրոբլեմն իր ամբողջության մեջ, առանձնացնելով, մասնավորապես, այնպիսի կարևոր պրոբլեմներ, ինչպիսիք են հասարակության և բնության միասնությունը, նրանց զարգացման օրինաչափությունների ու օրենքների հարաբերակցությունը, հասարակության և բնության փոխհարաբերության պրոցեսի պատմական բնույթը և այլն։

Հասարակության և բնության միասնության էական պայմանն այն է, որ հասարակության օբյեկտն ու սուբյեկտը՝ մարդիկ, բնության ծնունդն են և, ինչպես Էնգելսն է գրում, իրենց մարմնով, արյունով և ուղեղով պատկանում են նրան, գտնվում են նրա ներսում (տե՛ս «Բնության դիալեկտիկա», 1957, էջ 182)։ Բայց բնության ու հասարակության միասնությունը չի կարող սպառվել միայն նրանով, որ մարդը, հետևաբար և բնությունը, իրենց ծագմամբ պատկանում են բնությանը։ Ավելի էականն այն է, որ մարդկային բազմակողմանի գործունեությունը ծավալվում է բնության մեջ և բնության, նրա առարկաների և ուժերի միջոցով։ Հասարակության և բնության փոխհարաբերության բազմապիսի ձևերից ու եղանակներից իր նշանակությամբ ու դերով, անմիջական և հեռուն գնացող հետևանքներով ամենակարևորն ու ամենաարգասավորը աշխատանքն է, մարդու և հասարակության ծագման, գոյության ու զարգացման մշտական պայմանը։ Աշխատանքը, Մարքսի բնորոշմամբ, մարդու և բնության միջև տեղի ունեցող պրոցես է, որի մեջ մարդը իր գործունեությամբ միջնորդավորում, կարգավորում և վերահսկողության է ենթարկում նյութերի փոխանակությունն իր և բնության միջև։ Այստեղ մարդը կանգնած է բնության ուժերի դեմ որպես բնության մի այլ ուժ և բնության վրա ներգործում է իր իսկ բնության ուժերով։ Բնությունը տալիս է ոչ միայն աշխատանքի առարկա, այլև աշխատանքի միջոց. օրինակ հողը։ Աշխատանքի



ամենակատարյալ միջոցներն անգամ, ամբողջ արտադրական տեխնիկան իրենց մեջ կրում են բնության՝ մարդու կողմից վերամշակված նյութը։ Աշխատանքի պրոցեսում միանում և միասնաբար գործում են մարդկային և բնական ուժերը՝ աշխատուժը, աշխատանքի միջոցն ու աշխատանքի առարկան։ Նյութական արտադրությունը, աշխատանքի ու աշխատավորների ունակությունների համատեղ գործադրման այդ բովանդակալից պրոցեսը, բնության և հասարակության օրգանական կապի մարմնացումն է, բնության նկատմամբ մարդու ակտիվության, բնության վերափոխիչ գործունեության ամենախոր դրսևորումը։ Իր հերթին հասարակության զարգացման վրա բնության ազդեցությունը ամենից առաջ և ամենանշանակալից կերպով արտահայտվում է նրանով, թե նպաստո՞ւմ են արդյոք բնական պայմաններն արտադրության զարգացմանը, աշխատանքի արգասավորությանը, թե՞, ընդհակառակն, հյուծում են մարդու ուժերը, չհատուցելով նրա ջանքերը համապատասխան արդյունքով, խթանո՞ւմ են արդյոք աշխատանքի արտադրողականությունը, թե՞ ընդհակառակն։ Մարդու և բնության միասնությունը չի խախտվում նրանով, որ մարդիկ, զարգացնելով բնության վրա տիրապետելու միջոցները, հաստատում են իրենց իշխանությունը նրա վրա, ընդհակառակն, ինչպես նշել է Էնգելսը, ինչքան ավելի գիտակցական է մարդու գործունեությունը, որն արտահայտվում է, մասնավորապես, նրանով, որ նա ավելի խոր է ըմբռնում իր գործունեության հետևանքները, այդ թվում և հեռավոր հետևանքները, այնքան ավելի է նա ո՛չ միայն զգում, այլև գիտակցում իր միասնությունը բնության հետ (տե՛ս նույն տեղը)։

Հասարակության և բնության հարաբերությունը, նրանց միասնությունը ճիշտ ըմբռնելու համար կարևոր նշանակություն ունի իրականության այդ երկու բնագավառներում գործող օրինաչափությունների ու օրենքների հարաբերության հարցի քննարկումը։

Հասարակությունը ծնունդ է առել բնությունից և, բնականաբար, կրում է իր վրա նրա կնիքը, գործում բնության մեջ ու մշտապես ենթարկվում նրա օրենքների ներգործությանը։ Հասարակության գոյավորման երկարատև պրոցեսում բնության օրենքները միանգամից չէ, որ դադարել են ներգործելուց և հասարակության օրենքները միանգամից չէ, որ նվաճել են երևույթները կարգավորելու ֆունկցիա։ Հասարակության օրենքները, որոշ առումով, ծնունդ են առել բնության օրենքներից, գործել նրանց հետ ու նրանց միջոցով, մինչ այդ օրենքների ուրույն սոցիալական բնույթը և ուժը այնքան նշանակալից են դարձել, որ դիալեկտիկորեն բացառել են բնության օրենքները, ընդ որում, ինչպես այդ տիպի ամեն մի բացառում, այստեղ ևս, նորը հնից ներառել է իր մեջ անհրաժեշտը վերառված ձևով։ Մյուս կողմից, քանի որ հասարակությունը գործում է բնության մեջ, նրա ամբողջ գործունեությունը, հետևաբար և նրա զարգացման օրենքները միահյուսվում են բնության, նրա զարգացման օրենքների հետ և որքան զարգանում է հասարակությունը, որքան ավելի գիտական է դառնում մարդու հարաբերությունը բնության հետ, այնքան ավելի սերտորեն են կապվում բնության և հասարակության օրենքները մարդկային գործունեության, հատկապես արտադրական գործունեության մեջ։

Հասարակության օրենքները, որ բնագավառին էլ նրանք վերաբերեն, չեն կարող գործել առանց նյութական, բնական օբյեկտներին ու նրանց հարաբերություններին առնչվելու։ Մտածողության պրոցեսը, օրինակ, որը թերևս,

ամենից ավելի մարդկային, և այն էլ գաղափարներ հղանալու պրոցես է, ունի իր նյութական, ֆիզիոլոգիական սուբստրատը՝ ուղեղը, իր նյութական՝ ֆիզիոլոգիական գործողությունը։ Անգամ արվեստը, այդ զուտ մարդկային զբաղմունքը, չի կարող քայլ անգամ կատարել, եթե մի պահ անգամ խզի կապերն իր նյութական օբյեկտների ու հարաբերությունների հետ։ Մարդը, դառնալով հասարակական արարած, չի դադարում բնության զավակը լինելուց, բնության օրենքներին ու օրինաչափություններին ենթարկվելուց, եթե անգամ այդ օրենքները ճանաչված են և գործադրվում են գիտակցաբար։

Հասարակության և բնության օրենքների սուսկական հակադրումը նույնքան անհիմն է, որքան և բնության ու հասարակության մերկ հակադրումը։ Օբյեկտիվ ռեալության այդ երկու, միասնության մեջ գտնվող բնագավառի, օրենքներն ունեն այնպիսի ընդհանուր գծեր, ինչպիսիք են նրանց օբյեկտիվ բնույթը, պատմականությունը և այլն. այդ երկու օրենքներն էլ իրենց բնույթով ճանաչելի են ու ենթակա գիտակցական գործադրման, եթե միայն հասկացված է նրանց էությունը, պարզված են գործադրման եղանակները, և հասարակությունն այդ գործադրման պահանջ է զգում։ Հարկ է նշել նաև, որ Մարքսը հասարակության զարգացումը դիտում էր որպես բնապատմական պրոցես, որի տակ նա հասկանում էր ո՛չ թե բնության և հասարակության երևույթների ու օրենքների նույնացում, այլ այն, որ հասարակության երևույթները ևս ծավալվում ու զարգանում են օբյեկտիվ անհրաժեշտությամբ, որ այդ երևույթները կարգավորող օրենքներն արտահայտում են բնականորեն կազմավորվող կապերն ու հարաբերությունները, և որ այդ օրենքները չեն կարող բեկանվել, դրանք կարելի է գիտակցաբար և օգտավետ գործադրել՝ հասկանալով դրանց գործողության մեխանիզմը։

Բնության և հասարակության օրինաչափությունների միասնության դրույթն ամենևին չի հակասում այն բանին, որ բնության և հասարակության օրենքներն ունեն էական տարբերություններ, որոնց միտումնավոր անտեսումը, իրականության որակապես իրարից տարբեր ոլորտներում գործող օրենքների նույնացումը նույնպես դարձել են ռեակցիոն գաղափարախոսության փայփայած պրիոմը։ Ինչպես նշում էր Վ. Ի. Լենինը, ավելի հեշտ բան չկա, քան հասարակական երևույթներին «բիոլոգա-սոցիոլոգիական» պիտակ կպցնելը, բայց չկա և ավելի անպտուղ, սխոլաստիկական, մեռյալ բան, քան այդ զբաղմունքը (տե՛ս Երկեր, հ. 14, էջ 440)։

Բնության օրենքները գոյանում են տարերայնորեն, կույր ուժերի խաղից, իսկ հասարակության օրենքները՝ կամքով ու գիտակցությամբ օժտված, իրենց առջև նպատակներ դնող և դրանց հետապնդող մարդկանց գործողության արդյունք են. դրանք կազմավորվում են որպես մարդկային գործողությունների որոշակի տենդենց, դրանց ծավալման ու զարգացման որոշակի ընթացք և ուղղություն։ Բնության մեջ բնական ուժերն են օրենքների օբյեկտը, հասարակության մեջ դրանց օբյեկտն ու սուբյեկտը մարդիկ են և նրանց գործունեությունը։ Հասարակության մեջ արտադրությունը, բնության վրա մարդու ակտիվ ներգործությունն է կազմում ընդհանուր զարգացման հիմքն ու առանցքը, կենդանի բնության մեջ՝ ֆիզիոլոգիական պրոցեսները, որոնք նույնպես բնության և կենդանի էակների փոխգործողության ձև են, բայց այնպիսի ձև, որ դուրս չի գալիս բնական նյութափոխանակության և դրա հետ կապված երևույթների շրջանակներից։ Բնությունը նպատակներ չի դնում ու լուծում,



հասարակությունը զարգացման որոշակի էտապում անցնում է ներքին՝ հասարակության մեջ գործող հարաբերությունների, ինչպես և նրա՝ բնության հետ ունեցած հարաբերությունների գիտակցական կարգավորմանը, հասարակական գործունեության պլանավորմանը, որի հիմքում ընկած է բնության և հասարակության օրենքների իմացությունը և այլն։

Բնության և հասարակության հարաբերությունը, հետևաբար և դրանց միասնությունը ինչ-որ մեկընդմիշտ տրված, ինքն իրեն կրկնող վիճակ չէ, այլ մշտական փոփոխման, անընդհատ զարգացման պրոցես, որի մեջ գնալով ավելի ու ավելի բեղմնավոր է դառնում մարդու ակտիվ վերափոխիչ գործունեությունը, ավելի ակներև է դրսևորվում բնության «մարդայնացումը», այն իմաստով, որ բնությունն իր խորությամբ ու լայնությամբ ավելի ու ավելի մեծ չափերով է ընկնում մարդկային գործունեության ոլորտի մեջ, և նրա պրոցեսները, ենթարկվելով բանականության կարգավորիչ զորությանը, դադարում են կույր ուժերի խաղ լինելուց։

Մինչմարքսյան շրջանի ամենահեռատես մտածողներն անգամ չէին կարողանում մարդու և բնության հարաբերության մեջ զատել գլխավորը՝ մարդու ակտիվ, վերափոխիչ գործունեության դերը, արտադրական գործունեության նշանակությունը։ Մարքսի և Էնգելսի արդեն վաղ շրջանի աշխատություններում խորապես վեր են հանված նախընթաց փիլիսոփայական և սոցիոլոգիական մտքի հիմնական թերությունները և այս հարցում, բազմակողմանիորեն քննադատվում է իդեալիզմը, որը, ճիշտ է, ընդունում է մարդու գործունեության ակտիվությունը, բայց այդ ակտիվությունն ամբողջովին հանգեցվում է բնությունից դուրս և վեր գտնվող հոգու գործունեությանը կամ, որքանով այն վերաբերում է մարդուն իրեն՝ սոսկ մարդու ուժերի դրսևորմանը,—ինչպես և նախընթաց մատերիալիզմը, այդ թվում և Ֆոյերբախյան, որի հիմնական թերությունը հանգում էր նրա հայեցողականությանը, պասսիվությանը։ Ընդսմին, գիտական-մատերիալիստական աշխարհայացքի հիմնադիրները բացառիկ ուժով վեր են հանում մարդկային հասարակական-արտադրական գործունեության մեծագույն պատմական նշանակությունը։

Լ. Ֆոյերբախը,— կարդում ենք Մարքսի և Էնգելսի վաղ շրջանի աշխատություններից մեկում՝ գերմանական իդեոլոգիա-ում,—«չի նկատում, որ իրեն շրջապատող զգայական աշխարհն ամենևին էլ սկզբից անտի տրված, մշտապես ինքնահավասար մի բան չէ, այլ որ այդ աշխարհն արդյունաբերության և հասարակական կացության արդյունք է, ընդ որում այն իմաստով, որ դա պատմական արդյունք է, մի ամբողջ շարք սերունդների գործունեության արդյունք...» (Соч., т. 3, стр. 42)։ Նույն կապակցությամբ սուր քննադատելով երիտասարդ հեգելականներին, որոնք բնության և հասարակության հարաբերության հարցը հանգեցրել էին «բնության և պատմության հակադրությունների» հարցին,— Մարքսն ու Էնգելսն ընդգծում էին, որ բնությունը և պատմությունը միմյանցից մեկուսացված «բաներ» չեն. մարդը մշտապես իր առջև ունի պատմական բնությունն ու բնական պատմությունը (տե՛ս նույն տեղը, էջ 43)։

Մարքսիզմի հիմնադիրների այս դրույթներում արդեն նշված է բնության և հասարակության հարաբերության գիտական ըմբռնման ելակետը, որը հետագա զարգացում է գտել մարքսիզմ-լենինիզմի կլասիկների այլ աշխատություններում։ Հատկապես բեղմնավոր, դարաշրջան կազմող սկզբունք է մարք-

սիզմի մշակած պատմական մոտեցումը բնության և հասարակության ամբողջ անցյալի, հատկապես դրանց փոխհարաբերությանը:

Ի հակադրություն մետաֆիզիկական մտածելակերպի, որը բնությունն ու հասարակությունը քննարկում է միասնությունից դուրս և, լավագույն դեպքում, արձանագրում հասարակության վրա բնության ազդեցության փաստը, մատերիալիստական դիալեկտիկան քննարկում է դրանք միասնության մեջ, բացահայտում միասնության կողմերի փոխազդեցությունն իր պատմական զարգացման ընթացքում, և այդ փոխազդեցության բնույթի փոփոխման արմատական պատճառը տեսնում սոցիալական կարգի երևույթների մեջ:

Պատմական մոտեցումը մարքսիզմի արմատական պահանջն է և միայն այդպիսի սկզբունքի կիրառմամբ կարելի է հասկանալ բնության և հասարակության փոխհարաբերության բնույթն ու առանձնահատկությունները տարբեր պատմական ժամանակաշրջաններում: Բանն այն է, որ միևնույն բնական պայմանները տարբեր ժամանակներում տարբեր ձևով են դրսևորում իրենց դերն ու ներգործությունը հասարակական կյանքում: Եթե ծովերն ու օվկիանոսները դարեր շարունակ երկրներն ու ժողովուրդներն անջատում էին իրարից և դրանով իսկ բացառում կամ արգելակում նրանց տնտեսական ու կուլտուրական կապերը, ապա հաղորդակցության միջոցների զարգացման հետևանքով այդ նույն գործոններն սկսեցին խաղալ նոր, երկրներն իրար հետ կապող դեր: Եթե նախնադարում երկրի ընդերքը ոչ մի արժեք չէր ներկայացնում մարդկանց համար, ապա հետագայում, հատկապես մեքենայական արտադրության ստեղծման ժամանակներից ի վեր, նույն ընդերքը կարևորագույն նշանակություն ստացավ էկոնոմիկայի և, ամբողջությամբ վերցրած, հասարակության զարգացման համար: Նույնը կարելի է ասել բնական պայմանների ամեն մի բնագավառի նկատմամբ: Այլ խոսքով՝ բնական պայմանների դերն ու նշանակությունը մեկընդմիշտ տրված կամ որոշված չեն. դրանք փոփոխվում են հասարակության զարգացման, արտադրող ուժերի ծավալման, տնտեսական գործոնների աճին համապատասխան:

Բնության և հասարակության փոխհարաբերության նկատմամբ դիալեկտիկայի արմատական պահանջներից մեկի՝ պատմական մոտեցման կիրառումը հնարավորություն է ընձեռում հետամուտ լինելու այդ փոխհարաբերության դինամիկային, ուշադրության կենտրոնում պահելու այդ պրոցեսում սոցիալական գործոնների դերի բարձրացման տենդենցը և կանխելու բնական պայմանների բացարձակացման ամեն մի փորձ, որ հղի է տեսական, և ոչ միայն տեսական, վտանգավոր հետևանքներով: Հարկ է, օրինակ, նշել, որ Հեգելը, զոհաբերելով դիալեկտիկայի սկզբունքներն իդեալիզմի պահանջներին, բնության մեջ տեսնում էր միայն մի ինչ-որ քանակական գոյավիճակ և դրանով իսկ փակում ինչպես հասարակության վրա բնության ազդեցության, այնպես էլ բնության վրա հասարակության հարաճուն ներգործության դինամիկ պատկերը հետազոտելու ուղին: Որպես հետևանք, Հեգելի մոտ ստացվել է, որ համաշխարհային պատմության համար «իսկական ասպարեզ» է միայն բարեխառն գոտին և այն էլ նրա հյուսիսային մասը, իսկ շատ երկրներ մեկընդմիշտ բացառվում են համաշխարհային պատմական շարժումից: Այնինչ պատմությունը մեկընդմիշտ տրված տարածական շրջանակներ չի ճանաչում. նրա իսկական ասպարեզը ամբողջ Երկրագունդն է, և միայն հասարակության զարգացման աստիճանով է կախված, թե տվյալ ժամանակաշրջանում Երկ-



րագնդի որ մասը և ինչ չափով է դարձել պատմության ասպարեզ: Հանրահայտ է, որ որոշակի ժամանակաշրջանում քաղաքակրթության օրրանը եղել է բարեխառն գոտին, որ այն է նախապես հանդիսացել կապիտալի հայրենիքը և այլն. բայց այժմ պատմության գործունեության ասպարեզն ընդգրկում է ոչ միայն ամբողջ Երկրագունդը, այլև ռեալ քայլեր է կատարվում դուրս գալու դրա շրջանակներից:

Բնության և հասարակության փոխհարաբերության հիմնական օրինաչափությունը հանգում է նրան, որ հասարակության զարգացման համեմատ ընդլայնվում է բնության և նրա ուժերի օգտագործումը: Դա, ամենից առաջ, բնության տարածական, տերիտորիալ օգտագործման ընդլայնումն է, այն, որ մարդկությունը սկսելով իր գոյությունը որոշակի տերիտորիայի վրա, աստիճանաբար տարածվել է ամբողջ ցամաքով մեկ, սկսել նվաճել ջրային տարածությունը, մթնոլորտը, իսկ մեր ժամանակներում սկսել է գրոհել ծովերի ու օվկիանոսների ընդերքի և արտաերկրային տարածությունների վրա:

Մարդկության տարածական ծավալումն իր հիմքում պատմականորեն, ամենից առաջ, ունեցել է բնակչության աճը, որը սկզբնապես գրեթե ամբողջովին բիոլոգիական կարգի պրոցես էր, բայց զուգորդվելով մարդկային նորանոր պահանջմունքների ու զբաղմունքների առաջացման հետ, աստիճանաբար սկսել է կրել որակական նոր բնույթ, իսկ սա արդեն սոցիալական երևույթ է և իր հիմքում ունի բնության վրա ներգործելու միջոցների՝ աշխատանքի գործիքների և հենց աշխատանքի կատարելագործումն ու զարգացումը: Հասարակական կյանքի տարածական ոլորտի ընդարձակումն, իր հերթին, նպաստել ու խթանել է մարդկային նորանոր պահանջների ու զբաղմունքների առաջացմանը, արտադրաուժերի, հետևաբար և ամբողջ հասարակության զարգացման համար: Այնպես որ հենց պատմության սկզբից մենք գործ ունենք բնական ու հասարակական գործոնների միահյուսման և փոխգործողության պրոցեսի հետ, որի մեջ արտադրաուժերի զարգացման համեմատ աճել և ապա վճռական նշանակություն է ձեռք բերել սոցիալական գործոնը՝ մարդու ակտիվ ներգործությունը բնության վրա, բնության տիրապետումը:

Մարդկային գործունեության տարածական ծավալմանը զուգընթաց ավելանում է բնության՝ մարդու կողմից օգտագործվող նյութերի և ուժերի քանակը: Պատմության վաղ շրջաններում մարդկությանը, բնականաբար, հիմնականում հետաքրքրում էր օրգանական նյութը՝ բուսական և կենդանական աշխարհը, որը նրան պատրաստի կամ համարյա պատրաստի վիճակում կենսամիջոցներ էր հայթայթում: Աստիճանաբար ընդարձակվում են մարդկանց գործունեության ու հետաքրքրության շրջանակները և ավելի ու ավելի շատ բնական նյութեր են մտնում մարդու արտադրական գործունեության ոլորտի մեջ, այդ թվում մետաղը. մետաղե գործիքներին անցնելը հեղափոխություն է կատարում մարդկանց տնտեսական պայմանների և հասարակական հարաբերությունների մեջ:

Մարդու և բնության հարաբերության մեջ սպեցիֆիկ մարդկայինը և ամենաէականն այն է, որ մարդ չի բավարարվում նրանով, ինչ տալիս և կատարում է ինքը՝ բնությունը: Նա իր պահանջներին համապատասխան փոխում է բնության առարկան, խառնվում է բնական պրոցեսներին՝ նրանց ընթացքն արագացնելու կամ որոշակի ուղղություն տալու համար, բնության նյութերի

մեջ գտնում է հատկություններ, որոնք առանց իր գործունեության չէին կարող դրսևորվել կամ օգտագործվել, ստեղծում է նյութեր, որ բնությունն առանց մարդու չէր ստեղծի, իրար հետ զուգորդում և որոշակի նպատակի է ուղղում ուժեր, որ բնությունն ինքնին չէր կատարի, ստեղծում է բույսերի նոր տեսակներ ու կենդանիների նոր ցեղեր, նյութեր վաղօրոք տրված հատկանիշներով, սինթեզում քիմիական տարրեր, որոնք բնության մեջ չեն հանդիպում։ Մարդը վերափոխում է բնությունը, ստեղծում իր բնությունը, իր ուրույն, մարդկային աշխարհը՝ բնության մեջ և բնության միջոցով։ Բնության վերափոխման մեծ գործը, որի տարրերը կարելի է գտնել դեռևս նախնադարյան մարդու այնպիսի գործունեության մեջ, ինչպես վայրի կենդանիների ընտելացումը և ապա բուծումն է, ծառանում է յուրաքանչյուր դարաշրջանի առջև նոր ձևով, ընդ որում, եթե անփոփոխ չէ բնությունն ինքը, ապա առավել ևս մարդու ստեղծած բնությունը։

Բնության ուժերի ավելի ու ավելի արդյունավետ օգտագործման հասարակության պահանջը, որը երկար ժամանակ կարող էր բավարարվել դեռևս տարերայնորեն և միայն էմպիրիկ ճանապարհով, ժամանակի ընթացքում հրամայական խնդիր է հարուցում բնության տեսական տիրապետումը, այսինքն՝ բնության ուժերի և երևույթների գիտական ըմբռնումը, նրա զարգացման օրենքների բացահայտումն ու դրանց ռացիոնալ օգտագործման միջոցների մշակումը,— և կյանքի կոչում բնագիտությունն իր բազմաղան ճյուղերով։ Եթե բնության որոշ ուժեր ու միջոցներ կարելի է ենթարկել մարդու նպատակներին՝ առանց նախապես դրա համար գիտական բազա ստեղծելու, ապա նույն բանը հնարավոր չէ ժամանակակից արտադրություն կազմակերպելու, էլեկտրական կամ ատոմային էներգիա ստանալու դեպքում։ Մարդկային արտադրական գործունեության ծավալման, բնությունը ոչ միայն լայնությամբ, այլև խորությամբ նվաճելուն զուգընթաց ավելի ու ավելի է բարդանում մարդու հարաբերությունը բնության նկատմամբ և, համապատասխանաբար, ավելի կարևոր, կենսական նշանակություն է ձեռք բերում բնության հանդեպ գիտական մոտեցումը, նրա տեսական տիրապետումը։

Մարդու և բնության հարաբերությունը, այսպիսով, մշտապես ծավալվող և հարստացող պրոցես է, որի նշանակությունը չի սպառվում նրանով, որ մարդ ավելի ու ավելի է տարածում իր իշխանությունը բնության վրա. մեծ են նաև այդ պրոցեսի սոցիալական հետևանքները։ Բանն այն է, որ մարդու և բնության հարաբերությունը օրգանական միասնության մեջ է մարդկանց՝ միմյանց նկատմամբ ունեցած հարաբերությունների հետ և, համապատասխանաբար, ամեն մի փոփոխություն մեկ կարգի հարաբերությունների մեջ իր հետևանքն է հարուցում մյուս կարգի հարաբերություններում։ Փոխազդեցության այս պրոցեսն ունի իր պատմական զարգացումը։

Նախնադարում, ինչպես նշել են Մարքսը և Էնգելսը, մարդկանց սահմանափակ հարաբերությունը միմյանց հանդեպ պայմանավորել է նրանց սահմանափակ հարաբերությունը բնության նկատմամբ, որը դեռ գրեթե չէր ենթարկվել մարդու ակտիվ գործունեության ազդեցությանը,— և ընդհակառակն։ Այսպիսի պայմաններում մարդը դեռ չէր զատում իրեն բնությունից, իսկ նրա հանրության առաջին ձևերը, հատկապես մինչտոհմային հոտերը, իրենցից ներկայացնում էին բնականորեն ծագած ու կազմավորված միավորներ. մարդու և բնության միասնությունն այստեղ տրված է ինքնին։ Այլ է դրությունը



դասակարգային հասարակությունների ժամանակ։ Այստեղ մարդիկ ոչ միայն զատում են իրենց բնությունից, այլև հակադրվում նրան, որին քիչ չի նպաստում կրոնական աշխարհայացքը։ Մասնավոր սեփականությունը և նրա վրա խարսխված դասակարգային հակամարտությունը, շահագործողական հարաբերությունները պայմանավորում են բնական միջոցների և մարդկային աշխատուժի գիշատչական օգտագործումը, հատկապես կապիտալիզմի ժամանակ։ Կապիտալիստական արտադրությունը,— գրում է Մարքսը,— միայն նրանով է զարգացնում տեխնիկան և արտադրության հասարակական պրոցեսի կոմբինացիան, որ նա միաժամանակ խարխլում է ամեն մի հարստության սկզբնաղբյուրները՝ հողն ու բանվորին (տե՛ս «Կապիտալ», հ. I, էջ 530, 1954 թ.)։ Կապիտալը, որ նույնքան անխնա է բնության նկատմամբ, որքան անգութ՝ աշխատողի նկատմամբ, և հենց ինքը՝ տանջալից ու հյուծող ֆիզիկական աշխատանքը խորթություն են մտցնում մարդու և բնության մեջ։ Այստեղ ևս մարդկային հարաբերություններն իրենց արտացոլումն են գտնում բնության և մարդու հարաբերություններում։

Արտադրության միջոցների հանրային սեփականության հաստատմամբ մարդու և բնության միջև սկսվում է հաստատվել հարաբերության նոր տիպ։ Բնությունը պատկանում է աշխատավոր ժողովրդին, ուստի, նա շահագրգռված է բնության ուժերի ռացիոնալ օգտագործմամբ։ Ինչքան մարդկային են իրենց՝ մարդկանց հարաբերությունները, այնքան էլ մարդկային է նրանց վերաբերմունքը կյանքի բնական պայմանների, հարստությունների բնական աղբյուրների նկատմամբ։ Բնական ուժերի անիմաստ շռայլումն ու վատնումը, բնության գեղեցկությունների ոչնչացումը դատապարտվում է բարոյապես և պատժվում օրենքով։ Հասարակությունը ո՛չ միայն ստիպում է բնությանը սնուցել իրեն, այլև ինքն է աշխատում բնության համար՝ վերականգնում հողի արգավանդությունը. ստեղծում արհեստական անտառներ, պահպանում բուսական ու կենդանական աշխարհը, բնության գեղեցկությունները, կարգավորում բնության ռեսուրսների օգտագործումը։ Եվ դա ինքնանպատակ չէ, բնությունը լիուլի վերադարձնում է մարդուն այն, ինչ նա արել է բնության պահպանման համար։ Մարդկանց էսթետիկական ճաշակի զարգացման համեմատ բնության գեղեցկությունն ավելի հասկանալի ու իմաստալից է դառնում։ Բնությունը դադարում է արտաքին, թշնամական ուժ լինելուց, որովհետև մարդը գործում է՝ հասկանալով նրա օրենքները և իր գործունեության հետևանքները։ Գիտության դարավոր և արդի նվաճումներն ի սպաս են դրվում բնության վերափոխման և հասարակական հարաբերությունների հետագա կատարելագործման պահանջներին։

Բնության և մարդու հարաբերության բնույթը, այսպիսով, պայմանավորված է հասարակական գործոններով, ամենից առաջ, արտադրության եղանակով, որն իրենից ներկայացնում է արտադրողական ուժերի հասարակական գործադրման որոշակի ձև, մարդկանց իրար նկատմամբ և բնության նկատմամբ ունեցած հարաբերությունների միասնություն։ Հետևաբար բնության վրա հասարակության ազդեցությունը մի ինչ-որ արտաքին, օտար գործունեություն չէ, այլ մարդու՝ բանականությամբ օժտված, բուն բնության ուժերով գործող բանական էակի գործունեություն, և միայն նրա հասարակական զարգացման աստիճանից է կախված այդ գործողության ուժն ու բնույթը։

Մարդու և բնության փոխհարաբերության պրոբլեմը միշտ էլ ունեցել է պրակտիկ նշանակություն և այդ մշտապես աճում է, որովհետև ամեն մի լուրջ տեղաշարժ հասարակության զարգացման մեջ, այս կամ այն կերպ, առնչվում է բնության ուժերի օգտագործման հետ, ամեն մի առաջընթաց քայլ նոր հեռանկար է բացում բնության տիրապետության համար մարդկանց պայքարում։ Այդ պրոբլեմը նոր ձևով է դրվում և լուծվում սոցիալիստական կարգերում, դառնում է ժողովրդի և նրա պետության անմիջական գործը։ Ընդ որում, չպետք է մոռանալ, որ սոցիալիստական կարգերի ստեղծած հնարավորությունները բնության պահպանման և ռացիոնալ օգտագործման բնագավառում ինքնըստինքյան դեռ իրականություն չեն դառնում։ Եզակի չեն անպատասխանատվության դեպքերն այս բնագավառում՝ գետերի, ջրերի փչացումը արդյունաբերական օբյեկտների կողմից, անտառների, վարելահողերի և բնական այլ ռեսուրսների ոչ ռացիոնալ օգտագործումը, ջրի շռայլումը, օդի ապականումը և այլն։ Որքան բարձրանում է բնության ռեսուրսների խելացի օգտագործման նշանակությունը, այնքան անհանդուրժող պետք է լինել բնության նկատմամբ հանցավոր ու անտարբեր վերաբերմունքի դեմ։

Սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման բարձր տեմպերը պահանջում են բնական ռեսուրսների հետազոտության ընդլայնում, հայտնաբերված ռեսուրսների պլանավորում և արդյունավետ օգտագործում։ Մեծ ու վիթխարի են այն խնդիրները, որ կանգնած են այժմ տնտեսության և գիտության առջև, բազմաթիվ են բնության վերափոխման հարցերը։

Մեծ են և այն խնդիրները, որ նախատեսված են բնության ռեսուրսների օգտագործման ուղղությամբ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա (1966—1970 թթ.) պլանով։

Այսպիսով բնության և հասարակության փոխհարաբերության պրոբլեմը պատկանում է այն պրոբլեմների թվին, որոնք ունեն և՛ լայն-տեսական, և՛ անմիջական պրակտիկ նշանակություն, և՛ մշտապես գտնվում են մարդկության հոգևոր զարգացման մայրուղու վրա։



Ս. ԱՌԱՔԵԼՅԱՆ

ՀԱՄԽ–ի նախագահ

# ԱՐՀՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ ՈՒԺԵՂԱՑՆԵԼ ԿԱԶՄԱԿԵՐՊՉԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ

Կոմունիստական կուսակցության իրականացրած միջոցառումների շնորհիվ աճել է հասարակական կազմակերպությունների և, հատկապես, արհմիությունների դերը կոմունիստական շինարարության խնդիրների լուծման գործում։ Արհմիությունները մեծ աշխատանք են ծավալել ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների կատարման ուղղությամբ։

Մեր հանրապետության արհմիությունները կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ լայն գործունեություն ծավալելով, աշխատավորության ուժերը մոբիլիզացրել են ժողովրդական տնտեսության առջև դրված խնդիրների լուծման համար և ձեռք են բերել մեծ հաջողություններ։ Դրական շատ օրինակներ կարելի է բերել, թե ինչպես արհմիություններն ակտիվորեն մասնակցում են ժողովրդական տնտեսության հանգուցային և կենսական հարցերի մշակմանն ու լուծմանը։

Չնայած կատարված դրական աշխատանքին, հանրապետության շատ արհմիութենական կազմակերպությունների գործունեության մեջ դեռևս կան խոշոր թերություններ, որոնք հիմնականում հետևանք են կազմակերպչական աշխատանքի թուլության, կոլեկտիվների առջև դրված խնդիրների լուծման գործում ցուցաբերվող ձևական, ոչ կոնկրետ մոտեցման։

Գաղտնիք չէ, որ մեզ մոտ դեռևս կան չօգտագործված շատ հնարավորություններ, որոնք գործի դնելով կարելի է ավելի բարձր ցուցանիշների հասնել։ Բայց այդ հնարավորությունները անբավարար օգտագործելու հետևանքով հանրապետության արդյունաբերական 95 ձեռնարկություն չկատարեց 1966 թվականի համախառն արտադրանքի 9 ամսվա պլանը և 13,1 միլիոն ռուբլու արտադրանք պակաս տվեց։ 122 ձեռնարկություն չկատարեց աշխատանքի արտադրողականության պլանը, իսկ 8 ամսվա կապիտալ ներդրումների պլանը 92 կարևորագույն կառույցներից կատարել է միայն 23-ը։ Աշխատաժամանակի կորուստը հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում անցյալ տարվա առաջին կիսամյակում կազմել է 383000 մարդ-

օր, իսկ հիվանդությունների պատճառով՝ 850000 մարդ-օր, որից 35 տոկոսը՝ թեթև արդյունաբերության ձեռնարկություններում։

Հատկապես թեթև արդյունաբերության ձեռնարկություններում ցածր է արտադրանքի որակը։ Գյուղատնտեսության արտադրության բնագավառում խոշոր թերություններ կան աշխատանքի նորմավորման ուղղությամբ։

Նշված և մյուս թերությունների վերացման համար անհրաժեշտ է անշեղորեն կիրառել ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները, վերանայել հանրապետության արհմիութենական կազմակերպությունների գործունեության ներկայիս ձևերն ու մեթոդները, մեկընդմիշտ վերջ տալ արհմիութենական աշխատանքում նկատվող ձևականությանը և արմատապես բարելավել նրանց կազմակերպչական աշխատանքը։

Ցավով պետք է նշել, որ արհմիութենական շատ կազմակերպությունների աշխատանքում բացակայում են գործնականությունն ու կոնկրետությունը, պրակտիկ գործունեության փոխարեն մարդիկ տարվում են նիստարարությամբ, անօգուտ որոշումների ընդունմամբ։ Արհմիութենական բազմաթիվ կազմակերպությունների կազմակերպչական աշխատանքի թուլությունը, առաջին հերթին, արտահայտվում է սոցիալիստական մրցության ոչ կոնկրետ ու նպատակասլաց կազմակերպման և մակերեսային ղեկավարության մեջ։ Շատ արհմիութենական կազմակերպություններ ձևականորեն են վերաբերում սոցիալիստական մրցությանը. որոշ կոլեկտիվներ վերցնում են ոչ կոնկրետ և կոլեկտիվին չմոբիլիզացնող ընդհանուր պարտավորություններ և մրցություն չեն ծավալում բրիգադների, արտադրամասերի, հերթափոխությունների աշխատողների միջև։

Տրիկոտաժի № 1 ֆաբրիկայում (դիրեկտոր Գ. Հովհաննիսյան, ֆաբկոմի նախագահ Ծ. Գրիգորյան) չեն մշակվել և հաստատվել սոցիալիստական մրցության պայմաններ, չի սահմանվել մրցության արդյունքների ամփոփման կարգն ու ժամկետները։ Ֆաբրիկայում փաստորեն չի կազմակերպված անհատական և բրիգադային մրցություն։ Արհմիության խմբակները և արտադրամասային տեղական կոմիտեները վատ են զբաղվում մրցության հարցերով։ 1965 թվականին ֆաբկոմը ոչ մի անգամ չի ամփոփել սոցիալիստական մրցության արդյունքները։ Իսկ անցած տարվա մարտ ամսին, քննարկելով վերնազգեստի կարի արտադրամասի արհկոմի հաշվետվությունը, չի վերլուծել սոցիալիստական մրցության կազմակերպման վիճակը և արտադրամասի արհմիութենական կոմիտեին հանձնարարել է՝ «յուրաքանչյուր ամիս ամփոփել մրցության արդյունքները», այն դեպքում, երբ տվյալ արտադրամասի ոչ մի աշխատող չունի ստանձնած պարտավորություն։ Ֆաբրիկայում ընկած է աշխատանքային կարգապահությունը, մեծ է կադրերի հոսունությունը, կան նաև բազմաթիվ այլ թերություններ։

Սոցիալիստական մրցության ձևական կազմակերպման վերաբերյալ օրինակներ կարելի է բերել էլեկտրաճշգրիտ չափիչ սարքերի, ֆրեզերային հաստոցների, էլեկտրամեքենաշինական, կոմպրեսորների գործարաններից, «Երարդշինմոնտաժ» տրեստից, Լենինականի № 6 շինտրեստից, Ղափանի կահույքի ֆաբրիկայից և այլն։

ՀԱՄԿԽ-ի նախագահությունն անցած տարվա սեպտեմբերի 23-ին որոշում է ընդունել սոցիալիստական մրցության կազմակերպումը բարելավելու մասին։ Այդ որոշմամբ սահմանվել է սոցիալիստական մրցության և կոմու-



նիստական աշխատանքի շարժման ղեկավարման պատշաճ կարգ, կոմունիստական աշխատանքի կոչման արժանացածների միասնական կրծքանշան և վկայական։

Արհմիութենական կազմակերպությունների կենսական խնդիրն է՝ ամենակարճ ժամանակամիջոցում բոլոր բանվորներին, ծառայողներին, ինժեներատեխնիկական աշխատողներին ընդգրկել սոցիալիստական մրցության մեջ, որպեսզի բացի բրիգադային, տեղամասային, հերթափոխային պարտավորություններից, յուրաքանչյուր աշխատող ունենա իր անհատական պարտավորությունները, կարգավորվի մրցության արդյունքների ժամանակին ամփոփման և առաջավորների խրախուսման գործը, ապահովվի մրցության արդյունքների հրապարակայնությունը։ Անհրաժեշտ է ամենօրյա հոգատարություն հանդես բերել մրցողների նկատմամբ և անհրաժեշտ պայմաններ ստեղծել վերցրած պարտավորությունների կատարման համար։

Հանրապետության արհմիութենական կազմակերպություններն իրենց կազմակերպչական գործունեությունն ուժեղացնելու միջոցով պետք է լայն մրցություն ծավալեն ի պատիվ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակի։

Արհմիությունների կազմակերպչական աշխատանքի թուլության հետևանք պետք է համարել և այն, երբ արհմիութենական շատ կազմակերպություններ, այդ օրգանների առանձին աշխատողներ և ֆաբրիկա-գործարանային կոմիտեների նախագահներ միջոցներ չեն ձեռնարկում և հետևողականություն հանդես չեն բերում աշխատավորության նյութական շահերի և իրավունքների պաշտպանման, կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման, կոլեկտիվ պայմանագրով վերցրած երկկողմանի պարտավորությունների կատարման, աշխատանքային պայմանների լավացման, տեխնիկայի անվտանգությունն ապահովելու հարցերում։

Արհմիությունները չեն կարող աչք փակել այն իրողության վրա, որ շատ արտադրամասերում, ձեռնարկություններում աշխատանքի նորմալ պայմաններ չեն ստեղծվում, չեն գործում օդափոխիչ սարքավորումները, մեծ է վտանգավոր գազերի և փոշու պարունակությունը օդի մեջ, ժամանակին չի տրվում արտահագուստ, չի կազմակերպվում դրա լվացումն ու վերանորոգումը, չեն գործում կամ մեծ ընդմիջումներով են գործում սանիտարական, կենցաղսպասարկման հանգույցները։ Այդ վիճակը տեղիք է տալիս բանվոր-ծառայողների իրավացի դժգոհությունների, իսկ արհմիութենական կոմիտեները լռությամբ են անցնում այս փաստերի կողքով, պատասխանատվության չեն կանչում այն մարդկանց, որոնք պարտավոր են ժամանակին լուծելու այդ խնդիրները։ Նման անտարբերությունը գցում է արհմիությունների հեղինակությունը և վնասում ընդհանուր գործին։

Խոշոր թերություններ կան բանվոր-ծառայողների շրջանում տարվող կուլտուր-մասսայական, դաստիարակչական աշխատանքների, գեղարվեստական ինքնագործունեության զարգացման, նրանց հանրակրթական-տեխնիկական մակարդակի բարձրացման, բուժման և հանգստի կազմակերպման գործում։

Ինչի՞ց սկսել, ո՞ր հարցերի վրա ուշադրություն նվիրել՝ արհմիությունների կազմակերպչական գործունեությունը ուժեղացնելու համար։ Այստեղ վճռական դերը արհմիութենական սկզբնական կազմակերպությանն է, որն արհմիությունների հիմքն է։ Այժմ մեր հանրապետությունում կան 5710 արհ-

միութենական սկզբնական կազմակերպություն։ Տեղերում նրանք նշանակալի աշխատանք են կատարում, օգնում են կոլեկտիվներին հասնելու արտադրական բարձր ցուցանիշների։ Բայց հայտնի է նաև, որ բազմաթիվ սկզբնական կազմակերպություններում ցածր է աշխատանքի մակարդակը, չեն կազմակերպվում և իրագործվում անհրաժեշտ միջոցառումներ՝ կոլեկտիվի առջև դրված խնդիրների լուծման համար։ Նրանք դեռ մարտունակ չեն, աշխատանքում նախաձեռնություն հանդես չեն բերում։

Բազմաթիվ սկզբնական կազմակերպություններ և ֆաբրիկա-գործարանային կոմիտեներ չեն պլանավորում իրենց աշխատանքը, իսկ լավագույն դեպքում նշում են մի քանի հարցեր, որոնք պետք է քննարկվեն արհմիութենական կոմիտեի նիստում և ուրիշ ոչինչ։ Մի շարք կոմիտեներ լրջորեն չեն զբաղվում կազմակերպչական աշխատանքով, թույլ են հենվում ակտիվի վրա, անբավարար են ղեկավարում և օգնում արտադրամասային կոմիտեներին, արհմիութենական խմբակների կազմակերպիչներին և մշտական հանձնաժողովներին, չեն հրավիրում կոլեկտիվի ժողովներ, քննարկման չեն դնում արտադրական հարցեր, իսկ երբեմն էլ ճիշտ չեն օգտագործում իրենց իրավունքները։

Ֆաբրիկա-գործարանային կոմիտեներն իրենց գործունեության ընթացքում պետք է հենվեն արտադրամասային կոմիտեների վրա, որոնք անմիջականորեն իրականացնում են արհմիութենական խմբակային կազմակերպիչների գործունեության ղեկավարումը, շփվում բանվոր-ծառայողների հետ։ Խոսել արհմիությունների կազմակերպչական գործունեությունն ուժեղացնելու մասին, նշանակում է, առաջին հերթին, ուժեղացնել, գործի դնել արհմիութենական արտադրամասային կոմիտեների, ֆաբրիկա-գործարանային և տեղական կոմիտեների մշտական հանձնաժողովներին։ Պետք է նշել, որ վերջիններս ստեղծվում են գրեթե ամենուրեք, բայց նրանց զգալի մասը անհրաժեշտ օգնություն և ղեկավարություն չստանալու հետևանքով չի աշխատում։ Առանձնապես վատ են աշխատում արտադրամասային կոմիտեների հանձնաժողովները, արհմիութենական խմբերի սոցիալական ապահովագրության պատգամավորները, կուլտ-կազմակերպիչները, աշխատանքի պաշտպանության հասարակական տեսուչները։ Անհրաժեշտ է լուրջ միջոցներ ձեռք առնել այդ օղակների աշխատանքներն ուժեղացնելու համար։

Կազմակերպչական աշխատանքի ուժեղացման միջոցով հարկավոր է էլ ավելի ամրապնդել արհմիությունների և նրանց օրգանների կապը լայն մասսաների հետ։ Այդ տեսակետից մեծ նշանակություն ունեն բանվոր-ծառայողների ընդհանուր ժողովները։ Մինչդեռ, դրանք հանրապետության մետալուրգիական արդյունաբերության մի շարք ձեռնարկություններում բոլորովին չեն հրավիրվում. առանձին դեպքերում էլ հրավիրվում են առանց նախապատրաստման, սակավաթիվ բանվոր-ծառայողների մասնակցությամբ։ Հաճախ ընթացք չի տրվում բանվոր-ծառայողների քննադատական դիտողություններին, չեն կատարվում ընդունված որոշումները։ Անհրաժեշտ է ապահովել ժողովների սիստեմատիկ հրավիրումը, քննարկման դնել կոլեկտիվին հուզող հարցեր և հետևել ընդունած որոշումների կատարմանը։ Դա արհմիութենական ֆաբրիկա-գործարանային և տեղական կոմիտեների անմիջական պարտականությունն է։

Արհմիութենական տեղական կոմիտեների կազմակերպչական աշխատանքի



թերություններն արտահայտվում են նաև մշտական գործող արտադրական խորհրդակցությունների աշխատանքներում։ Այժմ հանրապետությունում ստեղծված են 1203 համագործարանային և արտադրամասային մշտական գործող արտադրական խորհրդակցություններ, որոնցում ընդգրկված են 50.170 բանվոր, ինժեներա-տեխնիկական աշխատող և ծառայող։ Մշտական գործող արտադրական որոշ խորհրդակցություններ օգտավետ գործունեություն են ծավալում աշխատավորների շրջանում. սակայն քիչ չեն նաև այն խորհրդակցությունները, որոնք թույլ են գործում կամ բոլորովին չեն գործում։ Ավելին, ռադիոէլեկտրոնային մի շարք ձեռնարկություններում արտադրական խորհրդակցություններ նույնիսկ չեն էլ ստեղծվել։

Անհրաժեշտ է, որ մեր տեղական կոմիտեները գործնականորեն ղեկավարեն մշտական գործող արտադրական խորհրդակցությունները և դրանց անդամներին մասնագիտացնել առանձին ճյուղերի գծով, խորհրդակցության ներսում կազմակերպելով արտադրության տարբեր բնագավառների խմբեր կամ սեկցիաներ (որակի բարելավման, աշխատանքի նորմավորման և վարձատրման, պլանավորման, նյութերի և միջոցների խնայողության, աշխատանքի գիտական կազմակերպման և այլն)։

Արհմիությունների կազմակերպչական աշխատանքի ուժեղացումը պետք է իր արտացոլումը գտնի նաև կոլեկտիվ պայմանագրերի կնքման և երկկողմանի պարտավորությունների կատարման գործում։ ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի որոշմամբ սահմանվել են կոլեկտիվ պայմանագրերի բովանդակության գլխավոր ուղղությունները, որոնք բարձրացնում են նրանց դերը կոլեկտիվի կյանքում։ Այժմ կոլեկտիվ պայմանագրերում պետք է կոնկրետ միջոցառումներ նախատեսվեն արտադրական ֆոնդերի օգտագործման, աշխատանքի գիտական կազմակերպման, շահութաբերության բարձրացման համար։ Արհմիութենական ֆաբրիկա-գործարանային և արտադրամասային կոմիտեները պետք է սիստեմատիկորեն քննության առնեն կոլեկտիվ պայմանագրերի կարևորագույն կետերի իրականացման ընթացքը՝ հատկապես աշխատանքի ու աշխատավարձի կազմակերպման, բանվոր-ծառայողների որակավորման բարձրացման, նրանց կուլտ-կենցաղային սպասարկման բարելավման և այլ հարցեր, որոնք հաճախ վատ են լուծվում։

Մեծ է արհմիութենական կոմիտեների դերը ձեռնարկությունների գործունեության պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին անցնելու կապակցությամբ. պահանջվում է նախապատրաստական ծավալուն աշխատանք, կազմակերպչական-տեխնիկական լուրջ միջոցառումներ, բանվոր-ծառայողների, ինժեներա-տեխնիկական անձնակազմի ակտիվության բարձրացում և այլն։ Նոր սիստեմի պայմաններում արհմիութենական տեղական կոմիտեներից պահանջվում է ավելի ճկուն և խոր աշխատանք։ Արհմիությունների կազմակերպչական աշխատանքը պետք է ուղղված լինի և նպաստի պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմի իրականացմանը։

Արհմիութենական սկզբնական կազմակերպությունների կազմակերպչական աշխատանքի թերությունները արտահայտվում են և նրանում, որ նրանք դեռևս անբավարար են իրագործում հասարակական հսկողությունը առևտրի, հասարակական սննդի, կոմունալ-կենցաղային օբյեկտների, քաղաքային տրանսպորտի, շինարարական կազմակերպությունների նկատմամբ։

Արհմիությունների այդ ուղղությամբ հարուստ փորձ են կուտակել. տասնյակ հարյուրավոր ակտիվիստներ ընդգրկված են հասարակական հսկողությունն իրագործող հանձնաժողովներում և արդյունավետ շատ գործեր են կատարում: Բայց պետք է նշել, որ հասարակական հսկողությունը շատ տեղերում բացակայում է: Բազմաթիվ կազմակերպություններ հսկողություն չեն իրագործում ոչ միայն իրենց ամրացված առևտրական ցանցի, կենցաղ-սպասարկման օբյեկտների աշխատանքի, այլև հենց իրենց գործարանում գտնվող բուֆետների և ճաշարանների նկատմամբ և բողոքում են, որ խախտվում են առևտրի կանոնները, հակասանիտարական վիճակ է և այլն: Արհմիութենական ֆաբրիկա-գործարանային կոմիտեները հասարակական հսկողությունն իրագործող ընկերներին անհրաժեշտ օգնություն ցույց չեն տալիս:

Կազմակերպչական աշխատանքի ուժեղացման միջոցով անհրաժեշտ է իրագործել հասարակական հսկողություն բոլոր ուղղություններով. դա պետք է լինի գործունյա, հանդես բերվի հետևողականություն՝ հայտաբերված թերությունները ու բացերը վերացնելու համար: Միաժամանակ պետք է հասարակական տեսչություններին օգնել՝ համարձակ հանդես գալու այն մարդկանց դեմ, որոնք խախտում են աշխատանքային օրենսդրության կանոնները և կառավարության որոշումները:

ՀԱՄԽ-ի ճյուղային արհմիությունների հանրապետական կոմիտեների և շրջանային կոմիտեների կարևորագույն խնդիրն է՝ մշտապես կատարելագործել սկզբնական կազմակերպությունների ղեկավարությունը և պատշաճ օգնություն ցույց տալ արտադրության և հիմնարկի ներքին ոլորտում գործող ընկերներին:

Հիրավի, արհմիությունները յուրահատուկ կազմակերպություններ են և այդ արտահայտվում է այն բանով, որ նրանք, ի տարբերություն մյուս գերատեսչությունների, իրենց աշխատանքը կազմակերպում են հիմնականում հասարակական կարգով, ունեն սակավաթիվ վարձու աշխատողներ: Հարկավոր է տասնյակ հազարավոր մարդկանց ներգրավել արհմիութենական աշխատանքում, որպեսզի նրանք սովորեն ու սովորեցնեն ուրիշներին: Դրանում արտահայտվում է արհմիությունների՝ որպես կոմունիզմի դպրոցի դերը:

Արհմիությունների քաղաքային, շրջանային և հանրապետական կոմիտեները կարող են իրենց աշխատանքները կատարել միայն ու միայն այն դեպքում, եթե գործեն այդ կոմիտեների կազմում ընտրված բոլոր ընկերները, հասարակական հանձնաժողովները: Բանն այն է, որ նրանց մի մասը չի աշխատում, արհմիութենական կոմիտեների շատ անդամներ հեռու են կանգնած նրա գործունեությունից: Կոմիտեների ղեկավարները նրանց հանձնարարություններ չեն տալիս, երբեմն թերահավատություն են հանդես բերում նրանց ուժերի նկատմամբ:

Իրականում արհմիությունների կազմակերպչական աշխատանքի մակարդակը որոշվում է կադրերի ընտրությամբ և տեղադրմամբ, ինչպես և նրանց ուսուցման ու դաստիարակության գործի դրվածքով:

Վերջին շրջանում այդ ուղղությամբ բավական աշխատանք է տարվել: Ֆաբրիկա-գործարանային, տեղական կոմիտեների նախագահների 80 տոկոսն ունեն բարձրագույն, թերի բարձրագույն, միջնակարգ կրթություն: Արհմիությունների շրջանային և քաղաքային, ինչպես նաև հանրապետական կոմիտեների աշխատողների ճնշող մեծամասնությունը մասնագետներ են, կյանքի



և աշխատանքի մեծ փորձ ունեցող ընկերներ: Բայց արհմիութենական կադրերի ընտրության գործում թույլ են տրվում շատ սխալներ ու վրիպումներ: Երբեմն արհմիութենական կազմակերպություններում ղեկավար աշխատանքի են երաշխավորվում այնպիսի ընկերներ, որոնք ի վիճակի չեն կատարելու մասսաների կազմակերպչի և ղեկավարի պարտականությունները:

Հայէլեկտրագործարանի 19-րդ արտադրամասի արհմիութենական կոմիտեն նախկինում ավելի արդյունավետ է գործել, քան այս տարի: Նախկին նախագահը միշտ պլանավորել է արտադրամասի արհկոմի աշխատանքը, բազմաթիվ հարցեր է նախապատրաստել, քննության դրել: Պլանավորված են աշխատել արհկոմի հանձնաժողովները: Իսկ ներկայիս արհկոմը (նախագահ Համբարյան) չի կազմում աշխատանքի պլան, ընտրությունից հետո (1965 թ. դեկտեմբերին) միայն մեկ նիստ է հրավիրել: Արտադրամասային կոմիտեի հանձնաժողովները, բացի սոցապահովագրության հանձնաժողովից, չեն աշխատում, արտադրամասում չի կազմակերպված սոցմրցություն, ոչ մի աշխատանք չի տարվում արհմիութենական խմբակների կազմակերպիչների հետ, որոնց թիվը հասնում է 16-ի: Ընկ. Համբարյանը թեպետ լավ մասնագետ է, բայց թույլ կազմակերպիչ է և նրա թեկնածությունը սխալ է առաջ քաշվել արտադրամասի արհմիութենական կոմիտեի նախագահի համար:

Արհմիութենական աշխատանքը դժվարին, բայց պատվավոր գործ է: Այդտեղ պետք է առաջ քաշվեն աշխատասեր, ժրաջան, կազմակերպչական ունակություններ ունեցող և կոլեկտիվում հարգանք վայելող ու ճանաչված էնտուզիաստներ, որոնք իսկապես ցանկություն ունեն աշխատելու արհմիություններում և սիրում են հասարակական գործը: Իսկ այդպիսիների թիվը մեր կազմակերպություններում շատ է: Միայն թե անհրաժեշտ է լավ ճանաչել նրանց և չսահմանափակվել վաղուց արդեն ճանաչված մարդկանցով:

Յուրաքանչյուր տարի տասնյակ հազարավոր ակտիվիստներ ուսանում են ՀԱՄԽ-ի դասընթացներում, հանրապետական կոմիտեների և սկզբնական կազմակերպությունների սեմինարներում: 1966 թվականի անցյալ ամիսների ընթացքում ուսանել են 65000 ակտիվիստ: Նախատեսված է 1967 թվականին ուսուցել 80 հազար հոգի:

Առանձնակի ուշադրություն պետք է նվիրել արհմիութենական ակտիվի ինչպես տնտեսագիտական, այնպես էլ մարքս-լենինյան ուսուցմանը: Այդ նպատակով ՀԱՄԽ-ին, ինչպես և ճյուղային արհմիությունների հանրապետական ու խոշոր ձեռնարկությունների կոմիտեներին կից պետք է կազմակերպվեն մշտական գործող սեմինարներ, դասընթացներ:

Արհմիությունների ուժը կուսակցության ղեկավարության մեջ է: Արհմիություններն իրենց գործունեությունը ծավալում են կուսակցական կազմակերպությունների ամենօրյա ղեկավարության և օգնության պայմաններում:

Անհրաժեշտ է ապահովել արհմիութենական բոլոր կազմակերպությունների և նրանց օղակների նպատակասլաց, ստեղծագործ աշխատանքը, բարելավել կազմակերպչական գործունեությունը, մշտապես որոնել և գտնել աշխատանքի նոր ձևեր, ամենուրեք պատվաստել աշխատանքի լենինյան ոճը, ավելի ուժեղացնել կապը մասսաների հետ, գլխավորել նրանց ստեղծագործական եռանդը և այն ուղղել հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման խնդիրները պատվով լուծելու համար:

Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ
100-ամյակի առթիվ

# ԼԵՆԻՆԸ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՕՐԵՆՍԴՐՈՒԹՅԱՆ ՍՏԵՂԾՈՒՄԸ

Արշ. ԹՈՎՄԱՍՅԱՆ

Իրավաբանական գիտությունների թեկնածու, դոցենտ

1917 թվականի հոկտեմբերով սկսվեց սոցիալիստական մեծ հեղափոխու-
թյան հաղթական երթը, որն ազդարարեց կապիտալիստական հասարակու-
թյան մայրամուտը և նոր, կոմունիստական հասարակության պայծառ այգա-
բացը: Դա Վ. Ի. Լենինի հանճարեղ ղեկավարությամբ կատարվող համաշ-
խարհային պատմական մի թռիչք էր, մարքսիզմ-լենինիզմի անմահ ուսմուն-
քի պրակտիկ իրականացումը:

Մեծ հեղափոխության բուն պրոցեսում պրոլետարիատը, աշխատավո-
րական լայն զանգվածների ակտիվ մասնակցությամբ, ստեղծեց իր պետու-
թյունն ու իրավունքը՝ ելնելով աշխատավորական մասսաների տնտեսական ու
քաղաքական շահերը պաշտպանելու անհրաժեշտությունից: Անցնելով իշխա-
նության գլուխ, պրոլետարիատն իր պետության ուժն ու քաղաքական տիրա-
պետությունն օգտագործեց շահագործողների դասակարգային դիմադրությու-
նը ճնշելու, տնտեսությունն իր ձեռքում կենտրոնացնելու, սոցիալիստական
հայրենիքի պաշտպանության գործը կազմակերպելու և նոր հասարակություն
կառուցող մարդկանց դաստիարակելու համար:

Այդ վեհ և ներդաշնակ նպատակներին ծառայեց նաև Լենինի ղեկավա-
րությամբ, հաճախ նրա անմիջական մասնակցությամբ ստեղծված սոցիալիս-
տական իրավունքն իր բոլոր ճյուղերով, իրավունք, որի աղբյուրը պրոլետա-
րիատի քաղաքական տիրապետությունն էր, իսկ իրավաբանական հիմքը՝ այն
բազմաթիվ ու բազմաբովանդակ օրենքները, որոնք ընդունվեցին սովետական
նորաստեղծ օրենսդիր օրգանների կողմից: Այդ օրենքները օրենսդրական-
իրավական նախապայման էին նոր արդարադատության իրականացման և
նոր օրինականության արմատավորման համար:

Հոկտեմբերյան հեղափոխության առաջին տարիներին Վ. Ի. Լենինի ղե-
կավար ցուցումներով ընդունված օրենքները վերաբերում էին պետական,
աշխատանքային, քաղաքացիական, հողային, քրեական, ամուսնա-ընտանե-



կան, վարչական իրավունքին, ինչպես նաև քրեական և քաղաքացիական դա-
տավարություններին:

Պետական իրավունքին, իսկ շատ հարցերում՝ միջազգային իրավունքին
վերաբերող հիմնական օրենսդրական ակտերը Հոկտեմբերի առաջին դեկրետ-
ներն էին և դրանց հիման վրա կերտված սովետական առաջին՝ ՌՍՖՍՀ 1918
թվականի սահմանադրությունը: Այդ դեկրետներն ու սահմանադրությունը Սո-
վետների համառուսաստանյան համագումարի, Համառուսաստանյան կենտ-
րոնական գործադիր կոմիտեի և ՌՍՖՍՀ ժողովրդական կոմիսարների սովե-
տում Լենինի առաջարկով ընդունված ակտերն էին, որոնցով դրվեցին նոր
պետականության և իրավակարգի, հետևաբար և նոր արդարադատության ու
օրինականության հիմքերը:

Դրանք իրավաբանորեն ձևակերպեցին ու ամրապնդեցին, մի կողմից՝
բուրժուական պետական ողջ ապարատի ջախջախման և, մյուս կողմից՝ սո-
ցիալիստական պետության նոր ապարատի ստեղծման համաշխարհային
պատմական պրոցեսը: Դրանք ամրապնդեցին սովետական հասարակական
կարգը, կազմավորվող տնտեսության սոցիալիստական սիստեմը, տնտեսա-
կան, հասարակական և քաղաքական բնագավառներում աշխատավորների այն
հիմնական նվաճումները, որ նրանք, փաստորեն, ձեռք էին բերել իրենց հե-
ղափոխական պայքարում:

Դարագլուխ կազմող այդ նվաճումներից են ազգային ճնշման լիկվիդա-
ցումը, ազգերի ինքնորոշման իրավունքի իրականացումը, սոցիալիստական
շինարարության ճանապարհին կատարած առաջին մեծ քայլերը՝ հողի, բան-
կերի, տրանսպորտի, իսկ մի փոքր ավելի ուշ՝ խոշոր ու միջին արդյունա-
բերության ազգայնացումը, հաշտության նախապատրաստումը և խաղաղու-
թյան ու խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքների ազդարարումն ու իրա-
կանացումը: Հենց այս պատմական նվաճումներն էին, որ իրենց օրենսդրա-
կան ամրապնդումը գտան Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների, Աշ-
խատավոր և շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիաներում,
Հաշտության, Հողի և Բանկերի ազգայնացման մասին դեկրետներում, որոնք
պատմության մեջ մտել են որպես Հոկտեմբերի առաջին դեկրետներ:

Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան, որի բնա-
գիրը կազմվել էր Վ. Ի. Լենինի անմիջական ղեկավարությամբ ու մասնակ-
ցությամբ, հռչակեց Ռուսաստանի ժողովուրդների հավասարությունն ու սու-
վերենությունը, ինքնորոշման, ընդհուպ մինչև նրանց անջատումն ու ինքնու-
րույն պետություն կազմելու իրավունքը: Այն վերացրեց ամեն տեսակ ազ-
գային և ազգային-կրոնական սահմանափակումներն ու արտոնությունները և
հռչակեց ազգային փոքրամասնությունների ու խմբավորումների իսկական
դեմոկրատական իրավունքներ: Ինչպես տեսնում ենք, դեկլարացիայում ազ-
դարարվեցին սովետական պետության լենինյան ազգային քաղաքականու-
թյան հիմնական սկզբունքները: Այդ ակտն ընդունվեց ՌՍՖՍՀ ժողովրդական
կոմիսարների սովետում 1917 թվականի նոյեմբերի 15-ին և ընդունման հա-
ջորդ օրը հրատարակվեց «Պրավդա»-ում: Նրա ընդունումն ու հրապարակումը
պատմական այդ շրջանում մեծագույն հեղափոխականացնող ազդեցություն
ունեցավ միջազգային իրադարձությունների ու հարաբերությունների վրա:
Այսպիսին էր Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան:

Աշխատավոր և շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիան, որը սերտորեն առնչվում է նախորդ ակտի հետ, ընդունվեց սովետների համառուսաստանյան III համագումարում, մի փոքր ավելի ուշ՝ 1918 թվականի հունվարի 25-ին։ Դեկլարացիայի տեքստը ամբողջովին պատկանում էր Վ. Ի. Լենինի գրչին։ Այն հանրագումարի բերեց սոցիալիստական հեղափոխության ընթացքում աշխատավորների ձեռք բերած դարակազմիկ նվաճումները և ազդարարեց կառավարության քաղաքականությունը սոցիալիզմի շինարարության համար մղվող հերոսական ու անձնուրաց պայքարում։

Դեկլարացիան Ռուսաստանը հռչակեց Սովետական Սոցիալիստական Ֆեդերատիվ Հանրապետություն և իրավաբանորեն օրինականացրեց կենտրոնում ու տեղերում իշխանությունը սովետներին անցնելու արդեն կատարված պատմական փաստը։ Ընդգծվեցին մեր պետության առաջիկա խնդիրները՝ մարդու կողմից մարդու շահագործման վերացումը, հասարակության մեջ թշնամական դասակարգերի լիկվիդացումը, շահագործողների դասակարգային դիմադրության ճնշումը և սոցիալիզմի կառուցումը։ Դեկլարացիան վերացրեց հողի նկատմամբ մասնավոր սեփականության իրավունքը և հաստատեց բանվորական հսկողության, ժողովրդական տնտեսության Գերագույն խորհուրդ կազմելու, ինչպես նաև բանկերի ազգայնացման մասին դեկրետները։ Այն մտցրեց աշխատանքային պարհակ և դեկրետավորեց աշխատավորների զինումն ու սովետական բանակի կազմավորումը։

Հոկտեմբերի առաջին դեկրետներից առանձնահատուկ տեղ է գրավում Հաշտության մասին հռչակավոր դեկրետը, որը խոշոր նշանակություն ունեցավ ո՛չ միայն իր ժամանակի, այլև հետագայի համար։ Նրա ոգին խաղաղության պահպանումն էր և վիճելի հարցերը բանակցություններով լուծելը, որը, ինչպես միշտ, այնպես էլ հիմա, դրված է սովետական պետության արտաքին քաղաքականության հիմքում։

Սովետների նույն համագումարում Լենինի առաջարկությամբ ընդունվեց Հողի մասին դեկրետը, որը Ռուսաստանի անհող և սակավահող միլիոնավոր գյուղացիների շահերից ելնող մի օրենք էր։ Այն սահմանեց սովետական պետության հողային իրավունքի հիմքերը և հետագայում իրավաբանական աղբյուր հանդիսացավ ինչպես ՌՍՖՍՀ, այնպես էլ միութենական մյուս հանրապետությունների առաջին հողային օրենսգրքերի համար։

Հողը տրվում էր ոչ որպես սեփականություն, այլ միայն օգտագործման իրավունքով։ Այն կարող էին ստանալ սովետական բոլոր քաղաքացիները, առանց նրանց ազգային պատկանելության կամ դավանանքի որևէ խտրության, պայմանով, որ հողը նրանք օգտագործեն սեփական աշխատանքով։

Գնահատելով այդ շրջանի հողային օրենսդրության նշանակությունը, Լենինը համառուսաստանյան կենտգործկոմի IX գումարման IV սեսիայում, ասաց. «... մեր օրենքները 1917 թվականի հոկտեմբերի նշանավոր 25-ից հետո, առաջին իսկ օրից սկսած, միանգամից, ի տարբերություն բոլոր և ամեն տեսակի օրենքների, հանդես եկան մի կանոնադրությամբ հողի մասին, որը տեխնիկապես, գուցե և իրավաբանորեն, շատ անկատար էր, բայց որը տվեց այն ամենաէականը, որը գյուղացու համար բացարձակապես անհրաժեշտ է, որն ապահովում է նրա դաշինքը բանվորի հետ» (հատ. 33, էջ 465)։

Ահա այս էր Լենինի կողմից բարձր գնահատված հողային օրենսդրության բովանդակությունն ու նշանակությունը։



Սովետական իրավունքի պատմության մեջ իր մեծ դերն ուներ նաև բանկերի ազգայնացման մասին դեկրետը, որի նախաձեռնողը նույնպես Լենինն էր։ Այն ընդունվեց համառուսաստանյան կենտրոնական գործադիր կոմիտեում 1917 թվականի դեկտեմբերի 27-ին։ Դեկրետը բանկային գործը հռչակեց որպես պետական մենաշնորհ։ Մինչ այդ, Ռուսաստանում գոյություն ունեցող բոլոր ակցիոներական բանկերն ու բանկային գրասենյակները փակվեցին, և նրանց ամբողջ գույքը հանձնվեց միասնական համառուսաստանյան պետական բանկին։ Բանկերի ազգայնացումը և բանկային գործի հռչակումը որպես պետական մենաշնորհ քայքայեցին Ռուսաստանում քաղաքականապես արդեն տապալված շահագործողական դասակարգերի տնտեսական հզորությունը և դրեցին ժողովրդական տնտեսության համար կարևոր գործի սկիզբը։ Այդ իրադարձության ուժով երկրում դրամական ու վարկային գործը, որի նշանակությունը դժվար է գերագնահատել, սկսվեց կազմակերպվել սոցիալիստական հիմունքներով։ Հիմնադրվեց սովետական դրամական և վարկային գործի սիստեմը, առանց որի տնտեսության մեջ նորի արմատավորման մասին խոսք լինել չէր կարող։

Վ. Ի. Լենինի մեծ հեղինակությամբ, նրա գործուն մասնակցությամբ ու ընդհանուր ղեկավարությամբ կազմված և սովետական առաջին օրենսդիր օրգաններում ընդունված ու կիրառության դրված վերոհիշյալ օրենսդրական ակտերը սովետական պետության առաջին սահմանադրության՝ ՌՍՖՍՀ սահմանադրության հիմքը դարձան։ Ահա թե ինչու Վ. Ի. Լենինը ամենայն իրավամբ համարվում է սովետական առաջին սահմանադրության ստեղծողը։

Լինելով պրոլետարական դիկտատուրայի պետության առաջին սահմանադրությունը, այդ ակտը օրինականացրեց քաղաքական կյանքի սոցիալիստական հիմունքները, տվեց սովետական քաղաքական սիստեմի, հասարակության կազմակերպման սովետական ձևի սիստեմատիկ շարադրանքն ու հաստատումը։ Այն օրենսդրորեն ամրապնդեց նաև սովետական պետական ձևի՝ սովետների իշխանության ողջ սիստեմը, սրա զարգացման առաջին շրջանում։

1918 թվականի սահմանադրությունն աշխարհում առաջին սոցիալիստական պետության հիմնական օրենքն էր։ Այն սահմանեց և օրենսդրորեն ամրապնդեց նրա հասարակական և պետական կառուցվածքը, իշխանությունների կազմակերպման ու գործունեության սիստեմն ու սկզբունքները, քաղաքացիների հիմնական իրավունքներն ու պարտականությունները։ Այն իրավաբանական բազա դարձավ սովետական օրենսդրական օրգանների հետագա գործունեության համար։

Սովետական պետության համար մեծ նվաճում էր 1918 թվականին առաջին աշխատանքային օրենսգրքի ընդունումը, որի նախաձեռնողը Լենինն էր։ Այն իր բովանդակությամբ ու խնդիրներով միանգամայն նոր երևույթ էր։ Օրենսգիրքը ողջ աշխարհին ցույց տվեց, որ միայն սովետական պետության հաստատմամբ հնարավոր դարձավ լիովին իրականացնել բանվոր դասակարգի պահանջներն աշխատանքի իրական պաշտպանության բնագավառում։ Օրենսգրքում ամփոփվեցին մինչ այդ գոյություն ունեցած սովետական աշխատանքային օրենսդրության օրինադրույթները և ավելացվեցին նորերը։

Օրենսգիրքը և դրա սկզբունքներով ստեղծված հանրապետական օրենսգրքերը մեծ դեր խաղացին աշխատանքի կազմակերպման գործում, ակտիվորեն օժանդակեցին սոցիալիստական շինարարության լենինյան պլանի իրա-

կանացմանը, օգնեցին աշխատավորների բարօրության և կուլտուրական մակարդակի բարձրացմանը։

Խոսելով այդ օրենսգրքի նշանակության մասին, Վ. Ի. Լենինը 1922 թվականի հոկտեմբերին Համառուսաստանյան կենտրոնական գործադիր կոմիտեի IV սեսիայում ունեցած ելույթում մատնանշում էր. «Վերցնենք առաջին օրենսգիրքը, որ ձեզնում արդեն անց է կացվել,— աշխատանքի օրենսգիրքը։ Սա սովետական իշխանության հսկայական նվաճումն է, որ մի այնպիսի ժամանակ, երբ բոլոր երկրները զինվում են բանվոր դասակարգի դեմ, մենք հանդես ենք գալիս մի օրենսգրքով, որը հաստատապես սահմանում է աշխատանքային օրենսդրության հիմունքները, ինչպես, օրինակ 8-ժամյա աշխատանքային օրը» (Երկեր, հատ. 33, էջ 463—464)։

Այն հանգամանքը, որ առաջնորդն օրենսդրական այդ ակտը անվանում է «սովետական իշխանության հսկայական նվաճում», ինքնըստինքյան վկայում է դրա արժանիքների մասին։ Այդ ակտի պատմական նշանակությունը նաև այն էր, որ առաջին անգամ աշխատանքային հարաբերություններն իրենց իրավաբանական կարգավորումն ստացան մի երկրում, որտեղ տնտեսական հրամայական բարձունքները գտնվում էին աշխատավորների ձեռքում։ Օրենսգիրքն իր բովանդակությամբ ու ձևով սոցիալիստական էր և որպես այդպիսին աշխատանքային հարաբերությունների բնագավառում մեծապես նպաստեց երկրում օրինականության արմատավորման գործին։

Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ գործող օրենսդիր օրգանները Հոկտեմբերի առաջին տարիներին ստեղծեցին նաև ամուսնա-ընտանեկան հարաբերությունները կարգավորող օրենսդրական ակտեր, որոնցից հիմնականը ՌՍՖՍՀ 1918 թվականի օրենսգիրքն էր։ Այդ ակտերի նպատակն էր վերացնել ցարական Ռուսաստանի ամուսնության օրինադրությունը, հաղթահարել և չեզոքացնել եկեղեցու ազդեցությունն ամուսնա-ընտանեկան հարաբերություններում, ազատագրել կնոջը տղամարդու ստրկական իշխանությունից և նրան տալ տղամարդուն հավասար իրավունքներ ինչպես ամուսնա-ընտանեկան հարաբերությունների, այնպես էլ հասարակական ու քաղաքական կյանքի մյուս բնագավառներում։ Օրենքները հռչակում էին մայրության և մանկության պետական պաշտպանության սկզբունքը, սահմանում էին, որ քաղաքացիական կացության ակտերը վարվում են միայն պետական իշխանության օրգանների կողմից, և որ միայն գրանցված ամուսնությունն է ամուսինների համար հարուցում իրավունքներ ու պարտականություններ։ Դրանք ամրապնդում էին ամուսինների ռեալ և իրավական հավասարությունն ինչպես անձնական, այնպես էլ գույքային իրավահարաբերություններում։ Ծնողական իրավունքների իրականացումը ելնում էր բացառապես պետության և երեխաների շահերից, արգելված էին չարաշահումները։

Ամուսնա-ընտանեկան հարաբերություններին վերաբերող օրենքների և օրենսգրքի նշանակությունն նաև այն էր, որ դրանցում, պատմության մեջ առաջին անգամ, ուրվագծվեցին նոր սովետական ընտանիք կազմելու ուղիներն ու օրենսդրական հիմքերը։ Ընտանիքը համարվում էր ո՛չ թե հասարակական-քաղաքական ֆունկցիաների կատարման պարտականությունից հեռու կանգնած ինչ-որ մի ինստիտուտ, այլ, ընդհակառակը, այդ ֆունկցիաները կատարելու համար կյանքի կոչված և կազմակերպված ինստիտուտ։

Սովետական իրավունքի բնագավառում խոշոր նվաճում էր նոր քաղա-



քացիական օրենսդրության ստեղծումը։ Մեծ Հոկտեմբերը, փաստորեն, լիկվիդացրել էր նախահեղափոխական Ռուսաստանի քաղաքացիական օրենսդրությունը, որը կառուցված էր բուրժուական հասարակական հարաբերությունների պահանջներին համապատասխան և ելնում էր շահագործողների դասակարգային շահերից։ Անհրաժեշտ էր ունենալ սեփական այնպիսի քաղաքացիական օրենսդրություն, որն օգներ նոր հասարակության կառուցման գործին և միաժամանակ նպաստեր իրենց դարն ապրած ու ընդդարմացած հարաբերությունների ու կարգերի վերացմանը։

Նման օրենսդրություն ստեղծվեց և նրա կիզակետը հանդիսացավ սովետական առաջին քաղաքացիական օրենսգիրքը, որն ընդունվեց Համառուսաստանյան կենտրոնական գործադիր կոմիտեի IV սեսիայում, 1922 թվականին։

Օրենսգիրքն ամրապնդում էր սոցիալիստական հեղափոխության նվաճումները տնտեսության և քաղաքացիական-իրավական հարաբերությունների բնագավառում։ Այն մեկ անգամ ևս օրենսդրորեն ամրապնդեց հողի, նրա ընդերքի, անտառների, ջրերի, երկաթուղիների, խոշոր և միջին ֆաբրիկա-գործարանային ձեռնարկությունների, բանկերի, բնակարանային հիմնական ֆոնդերի ազգայնացումը և արտաքին առևտրի մենաշնորհը։ Դրանով իսկ հավաստվում էր պետական սոցիալիստական սեփականության տիրապետող դերն ու նշանակությունը։ Օրենսգրքի շատ սկզբունքներ, ինստիտուտներ ու հասկացություններ իրենց արտահայտությունն են գտել մեր քաղաքացիական նոր օրենսգրքերում։

Լենինը մեծ նշանակություն էր տալիս օրենսգրքին, այն համարելով բանվորների և գյուղացիների սոցիալիստական պետության տնտեսական հիմքի ամրապնդման գործիք։ Նա պահանջում էր օրենսգրքի նախագիծը կազմելիս, ամենից առաջ, հաշվի առնել ու ելնել պետության ընդհանուր շահերից և ոչ թե մասնավոր կապիտալիստական սեկտորի շահերից, որ տակավին գոյություն ուներ մեր երկրում։

Օրենսգրքի նախագծի մշակման առթիվ նա ՌՍՖՍՀ այն ժամանակվա արդարադատության ժողովրդական կոմիսար Դ. Ի. Կուրսկուն գրում էր, թե նախագիծը կազմելիս ելնել նրանից, որ «Մենք ոչինչ «մասնավոր» չենք ճանաչում, մեզ համար տնտեսության բնագավառում ամեն բան հանրա-իրավական է, այլ ոչ թե մասնավոր» (Երկեր, հատ. 29, էջ 419)։ Դրա հետ միասին Լենինը մեկ ուրիշ առիթով անհրաժեշտ է համարում, որ «1) Արդժողկոմը պետք է հետևի և անձամբ հսկի, թե հատկապես ով է պատասխանատու քաղաքացիական օրենսգրքի յուրաքանչյուր կարևոր բաժնի համար։

2) Անպայման վերցնել այն բոլորը, ինչ արևմտաեվրոպական երկրների գրականության ու փորձի մեջ գոյություն ունի ի պաշտպանություն աշխատավորների։

3) Չսահմանափակվել դրանով (դա ամենագլխավորն է)։ Կուրորեն չհետևել Արդգործժողկոմատին։ Չհաճոյանալ «Եվրոպային», այլ ավելի առաջ գնալ «մասնավոր-իրավական հարաբերություններին» քաղաքացիական գործերին պետության միջամտությունն ուժեղացնելու գործում։ ...չկեղծել, փոքրոգություն չանել, ձեռքից բաց չթողնել «քաղաքացիական» հարաբերություններին պետության միջամտությունը ընդլայնելու ամենափոքր հնարավորություններն անգամ» (Երկեր, հատ. 33, էջ 233)։

Քաղբյուրոյին հասցեագրած մի նամակում, 1922 թվականի փետրվարի

22-ին, շոշափելով նույն այդ օրենսգրքի նախագծի մշակման հարցերը, առաջնորդը մատնանշում էր, որ անհրաժեշտ է «Լիովին ապահովել պրոլետարական պետության շահերը՝ բոլոր մասնավոր ձեռնարկություններին, առանց բացառության, վերահսկելու (հետագա վերահսկողության) հնարավորության տեսակետից և վերացնել այն բոլոր պայմանագրերն ու մասնավոր գործարքները, որոնք հակասում են ինչպես օրենքի տառին, այնպես էլ բանվորական ու գյուղացիական աշխատավոր մասսաների շահերին («Большевик», 1937, № 2, էջ 62)։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթական երթին լուրջ խոչընդոտում էին զանազան արատավոր տարրերի հանցավոր գործունեությունը, ծանր հանցագործությունները։ Կազմակերպելով խռովություններ, դավադրություններ, տեռորիստական ակտեր և այլ հակապետական կամ տնտեսական հանցագործություններ, այդ տարրերը ամեն կերպ ճգնում էին թուլացնել սովետական պետության թիկունքը, քայքայել այն։ Կաշառքի, սպեկուլյացիայի, խուլիգանության ձևով էին դրսևորում իրենց նաև մանրբուրժուական անարխիստական տարրերը, որոնք նույնպես սպառնում էին մեր պետության և նրանում սահմանված հանրակարգի գոյության հիմքերին։ Այդ բոլորը հաղթահարելու համար, ինչպես Վ. Ի. Լենինն էր ասում, անհրաժեշտ էր ժամանակ և «ճարկավոր էր երկաթե ձեռք» (Երկեր, հատ. 27, էջ 317)։

Սովետական քրեական օրենսդրությունը, հանձինս հարյուրների հասնող քրեական օրենքների և հանրապետությունների քրեական օրենսգրքերի, ստեղծվեց հենց այս երևույթների դեմ դատական-իրավական պայքար ծավալելու համար։ Այդ օրենքներից շատերի հեղինակը Վ. Ի. Լենինն էր։ Նա էր նաև առաջին սոցիալիստական քրեական օրենսգրքի՝ ՌՍՖՍՀ 1922 թվականի քրեական օրենսգրքի նախագիծը կազմող հանձնաժողովի իրական ղեկավարն ու ուղղություն տվողը։

Քրեական օրենսգրքի ստեղծման, ինչպես նաև սովետական պատժիչ օրգանների՝ այդ շրջանում տարվող վերակառուցման ու է՛լ ավելի հաստատուն սոցիալիստական օրինականության իրականացման կապակցությամբ անհրաժեշտ էր օրենսգրքում նախատեսել, մի կողմից՝ այնպիսի իրավանորմեր, որոնք վերաբերեին ընդհանուր քրեական հանցագործություններին, մյուս կողմից՝ շահագործող դասակարգերի ու նրանց գործակալների դիմադրության ճնշման կոնկրետ ձևերին։ Հենց այս առթիվ էլ Լենինը Դ. Ի. Կուրսկուն հասցեագրած 1922 թվականի մայիսի 17-ի նամակում գրում էր, որ նախապատրաստվող քրեական օրենսգրքում անհրաժեշտ է «...բացահայտորեն առաջադրել սկզբունքային ու քաղաքականապես ճշմարտացի (և ոչ թե միայն իրավաբանորեն—նեղ) դրույթ, որը պատճառաբանի տեռորի էությունը և արդարացումը, նրա անհրաժեշտությունը, նրա սահմանները։

Դատարանը պետք է տեռորը չվերացնի, այդ խոստանալը ինքնախաբեություն կամ խաբեություն կլիներ, այլ դա հիմնավորել ու սկզբունքորեն օրինականացնել պարզ կերպով, առանց կեղծիքի և առանց զունավորման։ Ձևակերպել պետք է որքան կարելի է լայն, որովհետև միայն հեղափոխական իրավագիտակցությունը և հեղափոխական խիղճը կդնեն գործնականում կիրառելու ավելի կամ պակաս լայն պայմաններ» (Երկեր, հատ. 33, էջ 423)։

Այս նույն առիթով էր, որ նա ՌՍՖՍՀ առաջին քրեական օրենսգրքի նախագիծը կազմողներին ուղարկեց հակահեղափոխական հանցագործություն-



ների մասին իր այն հոդվածների ձևակերպումը, որոնք հետագայում մտցվեցին քրեական օրենսգրքում։ Դրանք ձևակերպելիս, Լենինը ելնելով ժամանակաշրջանի իրադրությունից, պահանջում էր խստագույն քրեական պատիժներ, իսկ որոշ դեպքերում՝ նույնիսկ մահապատժի ենթարկել այն անձանց, ովքեր իրենց գործողություններով օժանդակում են միջազգային բուրժուազիայի այն մասին, որը չի ընդունում կապիտալիզմին փոխարինելու եկող սեփականության կոմունիստական սիստեմի իրավահավասարությունը և ձգտում է բռնությամբ տապալել այն՝ լինի դա ինտերվենցիայի, բլոկադայի, լրտեսության, թե մամուլի ֆինանսավորման և այլ միջոցներով։

Ստեղծված օրենսգիրքը պետք է լիներ և դարձավ սոցիալիստական օրինականության հիմքը, այն ապահովեց սովետական պետությունն ու նրանում սահմանված հանրակարգի պաշտպանությունը։ Օրենսգրքի այդ նպատակի մասին մատնանշված էր նրա տեքստում։ Այնտեղ ասված էր, որ օրենսգիրքն ուժի մեջ է մտցվում բանվորա-գյուղացիական պետությունը և հեղափոխական իրավակարգը սպառնացող խախտումներից և վտանգավոր տարրերից պաշտպանելու, հեղափոխական իրավագիտակցության հիմքեր սահմանելու համար։

Այդ նպատակը կարմիր թելի նման անցնում էր օրենսգրքի ինչպես ընդհանուր, այնպես էլ հատուկ մասի բոլոր նորմերով։ Այսպես. տալով հանցագործության բնորոշումը, օրենսգիրքը նշում էր. հանցագործություն է համարվում հանրության համար վտանգավոր ամեն մի այնպիսի արարք, որն սպառնում է սովետական հանրակարգի հիմքերին և դեպի կոմունիստական հասարակարգը տանող անցման ժամանակաշրջանի այն իրավակարգին, որը սահմանվել է երկրում։ Բնութագրելով պատժի դասակարգային էությունը, օրենսգիրքը միաժամանակ ընդգծում էր դրա նախազգուշական կողմը. պատժամիջոցների կիրառման նպատակն է՝ ասված էր այնտեղ, ա) կանխել ընդհանրապես թե՛ հանցագործի և թե հասարակության այլ անկայուն տարրերի նոր հանցագործությունների կատարումը. բ) ուղղիչ աշխատանքների միջոցով հանցագործին ընտելացնել նոր կյանքի համակեցության պայմաններին և գ) հանցագործին զրկել հետագայում նոր հանցագործություններ կատարելու հնարավորությունից։

Օրենսգիրքը երկու բաժին էր նվիրել պատժատեսակներին և սրանց կիրառման հիմունքներին ու սահմաններին։ Սովետական իրավունքի պատմության մեջ առաջին անգամ տրվում էր ո՛չ միայն որոշակի պատժասիստեմ, այլև սահմանվում էր օրենքով թույլատրված պատժատեսակների կոնկրետ ժամկետները կամ չափերը։ Օրենքը մատնանշում էր, որ կիրառվող պատիժը պետք է նպատակահարմար լինի և միաժամանակ զուրկ՝ պատժվողին տանջահարելու նշաններից, այն չպետք է հետապնդի վրեժի կամ հատուցման նպատակ։ Սահմանելով հանցանքը ծանրացնող և այն մեղմացնող հանգամանքները, օրենսգիրքը, դրանց հետ միասին, ընդունում էր պայմանական դատապարտության և պայմանական վաղակետ ազատման ինստիտուտները։

Օրենսգիրքը սովետական կարգերի հիմքերին սպառնող ամենածանր հանցագործությունների դեմ պայքարելու համար, որպես պատժի բացառիկ միջոց, թույլատրում էր մահապատժի (գնդակահարության) կիրառումը։

Օրենսգիրքն ուներ իր հատուկ մասը, որի մեջ, ըստ առանձին գլուխների, խմբավորված էին համապատասխան իրավանորմերը։ Դրա առաջին գլխում զետեղված էին մի շարք հոդվածներ, որոնք նախատեսում էին ամենածանր

պետական հանցագործությունները, դրանք խմբագրված էին անձամբ Վ. Ի.
պետական հանցագործությունները, դրանք խմբագրված էին անձամբ Վ. Ի.
Լենինի կողմից։ Այդ հոդվածներն էին 57-րդը, ուր տրվում էր հակահեղափո-
խական հանցագործությունների ընդհանուր բնորոշումը, 58-րդը, որը նախա-
տեսում էր հակապետական զինված ապստամբության, 61-րդը՝ հակասովե-
տական կազմակերպության գործունեության, և 70-րդը՝ հակահեղափոխական
պրոպագանդայի և ագիտացիայի հանցակազմը (տե՛ս Երկեր, հատ. 33, էջ
422—423 և 619)։
Այդ շրջանում գործող քրեական օրենսդրության և պատժական իրա-
վունքի հիմնական սկզբունքներից մեկը մեղքի ինստիտուտն էր, որի հիման
վրա էլ իրականացվում էր դատական-պատժական քաղաքականությունը։ Դրա
էությունն այն էր, որ առանց հանցանքի ու մեղքի ոչ ոք չէր կարող քրեական
պատասխանատվության կանչվել ու պատժվել։ Վ. Ի. Լենինը անդադրում
պահանջում էր մարդկանց դատական պատասխանատվության կանչել և պատ-
ժել միայն այն դեպքում, երբ նրանք մեղավոր են, կատարել են այս կամ
այն հանցանքը։ Մեղքը քրեական և վարչական պատասխանատվության միակ
նախադրյալն է և միակ նախապայմանը. ահա Լենինի ղեկավարությամբ
ստեղծված քրեական օրենսդրության հիմքը, այդ օրենսդրության ելակետը։
Վ. Ի. Լենինը քննադատելով բուրժուական օրինականությունն ու բուր-
ժուական իրավաբաններին ասում էր, որ օրենքը նրանց տրված է, որպեսզի
խեղաթյուրեն մեղքի և պատասխանատվության հասկացությունները (տե՛ս
Երկեր, հատ. 4, էջ 502), իսկ խոսելով սովետական քրեական արդարադատու-
թյան էության ու իրականացման սկզբունքների մասին, նա պահանջում էր
մեղքի ճշգրիտ և խստիվ դիֆերենցիացիա կատարել, անձնական պատասխա-
նատվություն սահմանել, պատիժը անհատականացման ենթարկել։ Այսպես,
օրինակ, իր նամակներից մեկում քննության առնելով շվեդական «Նիտվես և
Գոլմ» գործարանի պարապուրդի պատճառները, նա դատապարտում է ստեղծ-
ված վիճակը և պահանջում հետաքննել այդ գործարանի պարապուրդի գործն ու
մեղավորներին դատարանի միջոցով քրեական պատասխանատվության կան-
չել (այստեղ և հետագայում ընդգծումներն իմն են—Ա. Թ.)։ Այս նամակում,
ինչպես նաև իր այլ աշխատություններում, Լենինը դնում է որոշակի հարց.
պատասխանատվության կանչել միայն կոնկրետ և ուղղակի հանցագործու-
թյունների մեջ մեղավոր անձանց (Երկեր, հատ. 26, էջ 401, հատ. 35, էջ 433,
464, 562, 569, 575, 577 և այլն)։ Նրա երկերում հետևողականորեն անց է
կացվում մարդկանց միայն անհատական պատասխանատվության ենթարկե-
լու սկզբունքը, ելնելով արարքի և անձի վտանգավորության աստիճանից։
Կուսակցության XI համագումարին տված քաղաքական հաշվետվության
մեջ, շոշափելով մեզ հետաքրքրող հարցը, Վ. Ի. Լենինը էլ ավելի որոշակի
ասում էր. «Մենք պրոլետարական դատարան ունենք... և նա պետք է պա-
տասխանատվության ենթարկի նրանց, ովքեր մեղավոր են... ես կարծում եմ,
որ պրոլետարական դատարանը կկարողանա պատժել, իսկ պատժելու համար
հարկավոր է գտնել մեղավորներին... (Երկեր, հատ. 33, էջ 351)։
Քրեական արդարադատության իրականացման համար Վ. Ի. Լենինի
ջանքերով կազմված ու կիրառված օրենքներից, լենինյան վերոհիշյալ ասույթ-
ներից, ինչպես նաև դատարան-տրիբունալային օրգանների պրակտիկայից
երևում է, որ պատմական այդ շրջանում անմեղ մարդը չէր կարող պատժվել։
Այս հանգամանքն արժանի է հատուկ ուշադրության, որովհետև Լենինի



մահից հետո անհատի պաշտամունքի տարիներին կոպիտ խախտվում էր լե-
նինյան դատական քաղաքականության մեջ մեղքի հենց այդ սկզբունքը։
Այս երևույթի դեմ վճռական պայքար մղելու անհրաժեշտությամբ է բա-
ցատրվում այն, որ ՍՄԿԿ XX, XXI և XXII համագումարները կուսակցական ու
սովետական բոլոր օրգաններին պարտավորեցրին աչալուրջ կանգնել օրինա-
կանության պաշտպանության դիրքերում, վճռաբար և խիստ կասեցնել անօրի-
նականության, կամայականության, սոցիալիստական իրավակարգի խախտ-
ման ամեն մի դրսևորում։
Մարդ սրտի անհուն բերկրանքով է կարդում ՍՄԿԿ ծրագրի այն տողերը,
ուր ընդգծված է, թե մեր երկրում գնալով «մեծ նշանակություն է ստանում
սոցիալիստական իրավակարգի հետագա ամրապնդումը, իրավական նորմերի
կատարելագործումը», որ կուսակցությունը խնդիր է դնում «ապահովել սոցիա-
լիստական օրինականության խստիվ պահպանումը, իրավակարգի ամեն տե-
սակ խախտումների վերացումը, հանցագործությունների, այդպիսիք ծնող բո-
լոր պատճառների վերացումը»։
Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ Հոկտեմբերյան մեծ հեղափոխության
առաջին տարիներին, սովետական նորաստեղծ օրգանները կազմեցին, օրենս-
դրորեն հաստատեցին և կիրառեցին նաև քրեական ու քաղաքացիական դա-
տավարության օրենսգրքերը։ Դրանցից առաջինն ընդունվեց համառուսաս-
տանյան կենտգործկոմի II սեսիայում, 1922 թվականի մայիսի 25-ին, իսկ
երկրորդը՝ հաջորդ սեսիայում, նույն թվականի հուլիսի 7-ին։
Քրեական դատավարության օրենսգիրքը մի միասնական և ամբողջական
ակտ էր, որն իր իրավանորմերով կարգավորում էր դատարանի, հետաքննու-
թյան օրգանների, դատախազության և ադվոկատուրայի գործունեությունը՝
քրեական գործերի հետաքննության, նախաքննության և դատաքննության ժա-
մանակ։ Կարգավորվում էին նաև քրեական դատավարության բոլոր մասնա-
կից անձանց՝ մեղադրյալների, փորձագետների, վկաների և այլ անձանց, այդ
թվում պաշտոնատար անձանց, իրավունքներն ու պարտականությունները։
Քրեական դատավարության օրենսգիրքը ապօրինության դեմ դատավա-
րական բնույթի կատարյալ երաշխիքներ էր տալիս բոլոր նրանց, ովքեր մե-
ղադրվում էին այս կամ այն հանցագործության մեջ. դատարանը ճշմարտու-
թյան հասնելու ճանապարհին որոշակի նորմերով սահմանափակված չէր,
հռչակված էր մեղադրանքի պաշտպանության հրապարակայնության սկըզ-
բունքը, ինչպես նաև ամրապնդված էր մեղադրյալի պաշտպանության իրա-
վունքը, որը ներկայումս սահմանադրական բնույթի դատավարական սկզբունք
է։ Գործերի նախաքննությունն ու հետաքննությունը տարվում էին քննիչի կող-
մից դատախազի հսկողության ներքո, որպիսի հանգամանքը ապահովում էր
այդ նույն գործերով օրինականության իրականացումը։ Դատաքննությունը, լի-
նելով դռնբաց, կառուցված էր անմիջականության սկզբունքի վրա։ Օրենսգիրքը
նախանշում էր նախաքննությամբ և հետաքննությամբ ձեռք բերված բոլոր
տվյալների, այսինքն՝ մեղադրական և արդարացնող բնույթի ապացույցների,
պարտադիր ստուգումը դատական քննության միջոցով, մեղադրյալի և պաշտ-
պանի, տուժողի ու քաղաքացիական հայցվորի ամենալայն մասնակցության
ճանապարհով։ Այսպիսին էր քրեական դատավարության օրենսգիրքը։
Քաղաքացիական դատավարության օրենսգրքի երևան գալը ժամանակի
հրամայական պահանջն էր։ 1921 թվականի դեկտեմբերին տեղի ունեցած

*ՌԿԿ(բ) համառուսաստանյան XI կոնֆերենցիայի որոշումներից մեկում աս-*
*ված էր. «Հեղափոխական պրոցեսում և իշխանության կողմից կիրառվող տըն-*
*տեսական քաղաքականության հիման վրա ստեղծված հարաբերությունների*
*նոր ձևերը պետք է իրենց արտահայտությունը գտնեն օրենքի մեջ և պաշտ-*
*պանությունը դատական կարգով։ Գույքային հարաբերությունների բնագա-*
*վառում ծագող ամեն տեսակ կոնֆլիկտները լուծելու համար պետք է սահ-*
*մանվեն քաղաքացիական հաստատուն նորմեր։ Պետական օրգանների հետ*
*պայմանագրային հարաբերությունների մեջ մտած քաղաքացիներն ու կոր-*
*պորացիաները պետք է հավատացած լինեն, որ իրենց իրավունքները կպաշ-*
*պանվեն» (ՍՄԿԿ-ն բանաձևերում... 1-ին մաս, Հայպետհրատ, Երևան, 1954 թ.,*
*էջ 758)։ Քաղաքացիական դատավարության օրենսգիրքը կազմվեց ու ընդուն-*
*վեց կուսակցության այս ցուցումի հիման վրա։*

*Այս օրենսգիրքը մի միասնական և համապարփակ օրենսդրական ամ-*
*բողջական ակտ էր, որը սիստեմի ենթարկված իր մեջ ամփոփում էր սովե-*
*տական քաղաքացիական դատավարական իրավունքի բոլոր այն իրավանոր-*
*մերը, որոնք կարգավորում էին քաղաքացիական գործերի դատաքննության և*
*նրանց լուծման, դատական վճիռների, որոշումների և քաղաքացիական գան-*
*ձումներին վերաբերող այլ օրինական կարգադրությունների կատարման կար-*
*գը։ Օրենսգիրքն իր մեջ պարունակում էր նաև այնպիսի իրավանորմեր, որոնք*
*կարգավորում էին դատարանի, դատախազի, հայցվորի, պատասխանողի, եր-*
*րորդ անձանց, կողմերի ներկայացուցիչների և ընդհանրապես քաղաքացիա-*
*կան դատավարության բոլոր մասնակիցների դատավարական իրավունքներն*
*ու պարտականությունները։*

*Սովետական առաջին քաղաքացիական դատավարության օրենսգիրքը*
*մշակելիս և ընդունելիս նրա հիմքում դրվեցին դատական կարգով սովե-*
*տական պետության և աշխատավոր մասսաների շահերի համակողմանի և*
*խստիվ պաշտպանության անհրաժեշտության մասին Վ. Ի. Լենինի ցուցում-*
*ները։ Դրան համապատասխան էլ օրենսգիրքը մեծ իրավունքներ էր տալիս*
*դատարանին, դատախազությանը և արհմիութենական կազմակերպություն-*
*ներին, իրավունքներ, որոնք անհրաժեշտ էին այդ բնագավառում ևս ակտիվո-*
*րեն պաշտպանելու պետության և աշխատավորների օրինական շահերը։*

*Ամփոփենք. սովետական իրավունքի պատմությունը ցույց է տալիս, որ*
*Վ. Ի. Լենինի ստեղծած և գլխավորած սովետական պետության օրենսդիր օր-*
*գանների ջանքերով, դեռևս Հոկտեմբերյան մեծ հեղափոխության առաջին*
*տարիներին, ստեղծվեցին սովետական սոցիալիստական իրավունքի բոլոր*
*կարևորագույն օրենսդրական ակտերը։ Այդ ակտերն, իրենց ամբողջությամբ*
*վերցրած, դարձան նոր արդարադատության իրականացման և նոր օրինակա-*
*նության, սովետական սոցիալիստական օրինականության արմատավորման*
*ու ամրապնդման իրավաբանական նախադրյալներ ու հիմքեր։*

*Այդ բոլոր օրենսդրական ակտերի և, մանավանդ, օրենսգրքերի ստեղծ-*
*ման գործում տիտանական աշխատանք կատարեց Վ. Ի. Լենինը։ Դրանք սո-*
*վետական իրավունքի աղբյուրներն էին և լիակատար պայմաններ ստեղծեցին*
*այն բանի համար, որ մեր երկրում իրականացվի լենինյան արդարադատու-*
*թյունը, արմատավորվի սովետական սոցիալիստական օրինականությունը։*

# ԿԱՍՊԱՐՈՎԸ ԼԵՆԻՆԻ ՀԱՆՁՆԱԿԱՏԱՐ

Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Վլադիսլավ Մինասի Կասպարովը (Կասպարյանցը) (1884—1917) բոլշևիկյան կուսակցության ականավոր գործիչներից մեկն է: Նա կուսակցության շարքերն է ընդունվել 1903 թվականին, եղել է ՌՍԴԲԿ Բաքվի և Պետերբուրգի կոմիտեների անդամ, ղեկավար դեր է խաղացել 1912 թվականին Դոնի Ռոստովի բոլշևիկյան կազմակերպությունը վերականգնելու գործում: 1913 թվականի հունվարին նա ստիպված էր թողնել Ռուսաստանը և, որպես քաղաքական վտարանդի, մեկնել Բեռլին, որտեղ ապրում և գործում էր մինչև 1914 թվականի սեպտեմբերը: Այնուհետև տեղափոխվում է Շվեյցարիա, ապրում սկզբում Բեռնում, ապա՝ Դավոսում, ուր ծանր հիվանդությունից մեռնում է 1917 թվականի սեպտեմբերին:

Բեռլին մեկնելուց առաջ Վ. Մ. Կասպարովին հանձնարարված էր կապվել բոլշևիկների արտասահմանյան կենտրոնի, անձամբ Վ. Ի. Լենինի հետ և օգնել տեղական կազմակերպությունների ու կենտրոնի միջև կապի հաստատմանը: Բեռլինում, իսկ հետագայում՝ Շվեյցարիայում եղած ժամանակ Կասպարովը նամակագրական կապ է հաստատում Վ. Ի. Լենինի ու Ն. Կ. Կրուպսկայայի հետ, դառնում Իլյիչի մերձավոր ընկերներից ու զինակիցներից մեկը, ամենայն բարեխղճությամբ կատարում նրա հանձնարարությունները, որոնք համակուսակցական խոշոր նշանակություն ունեին:

***

1900-ից մինչև 1917 թվականի ապրիլը Լենինը երեք տարի իսկ հնարավորություն չունեցավ ապրելու ռուսական կայսրության սահմաններում: Նա բնակվում էր Արևմտյան Եվրոպայի զանազան փոքր ու մեծ քաղաքներում և, որպես մեծ ստրատեգ, ղեկավարում էր հեղափոխության նախապատրաստումը, բազմաթիվ թելերով կապված էր Ռուսաստանի ու նրա ազգային ծայրամասերի հետ: Անխափան գործում էր կենդանի կապը, որովհետև կային այդ կապն անխզելի պահող մշտարթուն ու անխոնջ հեղափոխական գործիչներ:

1913-ի շեմին, Կասպարովի Բեռլին գալու պահին, երբ Ռուսաստանում սկսվում էր հեղափոխական կյանքի նոր վերելքը, կապերի ընդարձակումն ու

նոբերի ստեղծումը օրվա ամենահրատապ հարցերից մեկն էր: Կասպարովը
Բեռլին էր եկել՝ իր թղթերում ու մտքում բազում հասցեներ՝ կուսակցության
կենտրոնին ու անձամբ Վ. Ի. Լենինին հանձնելու համար:

Բեռլին հասնելուց հետո ծանոթներ չգտնելով, նա գրեց այդ ժամանակ
Պետերբուրգում գտնվող իր հին բարեկամ, նշանավոր հեղափոխական Աբել
Ենուկիձեին, որ հասցեներ ուղարկի տեղում ծանոթություններ հաստատելու
համար: Ենուկիձեն նրան միանգամից ուղարկում է Վ. Ի. Լենինի հասցեն: Դա
1913-ի մարտին էր: Վլադիմիր Իլյիչն այդ ժամանակ Նադեժդա Կոնստանտի-
նովնայի հետ ապրում էր Կրակովում, իսկ ապրիլի երկրորդ կեսին տեղափոխ-
վեց Պորոնին գյուղը: Ենուկիձեն Լենինին ու Կրուպսկայային նամակով ծանո-
թացնում է Կասպարովի հետ, ըստ երևույթին հայտնելով նաև, որ նրանց
հասցեն ինքը հաղորդել է Կասպարովին՝ նամակագրության համար: Եվ, ահա,
ապրիլի առաջին օրերին Լենինը և Կրուպսկայան ստանում են Կասպարովի
նամակը: Ամսի 18-ին պատասխանում է կուսակցության Կենտկոմի քարտու-
ղարը՝ Կրուպսկայան: Անմիջապես սկսվում են գործնական հարաբերություն-
ներ: Կասպարովը հանձնարարություններ է ստանում: Կրուպսկայան խնդրում
է, որ նա անհապաղ իրենց հայտնի Ստեփան Շահումյանի հասցեն, շեշտելով,
որ շատ հարկավոր է: Մյուս կողմից՝ ուզում է ճշտել Աբել Ենուկիձեի հասցեն:
Կրուպսկայան գիտեր, որ Կասպարովը կովկասցի է և անպայման կունենա
կովկասյան հասցեներ, ուստի գրում է. «Այժմ մեզ պետք է որքան կարելի է
շատ իմանալ Կովկասի մասին, և ասես դիտմամբ, ոչ ոք ոչինչ չի գրում, այն-
պես որ փոքրագույն պատկերացում անգամ չունենք այն մասին, թե ինչ է
արվում այնտեղ»: Սրանով չբավարարվելով, Կրուպսկայան անդրադառնում է
Ռոստովին. «Որիշ տեղեկություններ չկա՞ն Ռոստովից»: Նշանակում է՝ Կաս-
պարովն իր նամակում որոշ տեղեկություններ հայտնել էր, իսկ Կրուպսկայան
ցանկանում էր ավելին իմանալ:

Հետագա նամակներում ևս Կրուպսկայան պահանջում էր նորանոր հաս-
ցեներ: Ապրիլի 27-ին, շնորհակալություն հայտնելով ստացածի համար, նա
գրում էր, թե իրենք զբաղված են հասցեներ հավաքելով, և Կասպարովին
խնդրում է օգնել ինչով կարող է: Կրուպսկայան Կասպարովին հանձնարարում
է տեղեկություններ հավաքել զանազան վայրերի մասին, կապվել Պոլտավայի
հետ, ավելացնելով. «Պոլտավան ինքնին ինձ այնքան չի հետաքրքրում, որքան
հետաքրքիր են կովկասյան թղթակցությունները»:

Գրեթե միշտ, ինչ հարցով էլ դիմեր, Կրուպսկայան չէր մոռանում Կով-
կասը: 1914 թվականի հունվարի 13-ին, օրինակ, մի շարք հարցումներից հե-
տո, գրում էր. «Եվ վերջապես, ամենակարևորը, ի՞նչ են գրում Կովկասից»:
Հունիսի 10-ին նա ցանկանում էր իմանալ, թե Կասպարովը չունի՞ արդյոք
կապեր Ռոստովի և Բաքվի հետ: 1913-ի հունիսի 22-ին նա դարձյալ ցանկա-
նում էր իմանալ, թե ի՞նչ են գրում Կովկասից: 1914-ի հունվարին նույնն էր
հարցնում Ռոստովի մասին: Հարցնում էր և հետևում, որ շտապ ստացվեն
պատասխանները: Ապրիլի 18-ի նամակից հինգ օր անց նա գրում էր Կաս-
պարովին,-թե ինչո՞ւ չի պատասխանում, չէ՛ որ ինքը խնդրել էր շտապ հայտ-
նել Շահումյանի հասցեն, հաստատել Ենուկիձեինը կամ տալ նրա նոր հաս-
ցեն, իսկ եթե կապեր ունի Կովկասի հետ, ապա դրանք ևս թող ուղարկի, բնու-
թագրելով հասցետերերին:



1913 թվականի ապրիլից առաջ, այսինքն՝ մինչև Կասպարովի նամակն
ստանալը, Լենինն ու Կրուպսկայան կապեր ունեին Բաքվի հետ, բայց հետո
իրենց հետ կապված ընկերները ձերբակալվել էին և այնտեղ տիրող վիճակի
մասին այլևս տեղեկություններ չկային: Կասպարովն ուղարկում է իր ունեցած
հասցեները: Կրուպսկայան անմիջապես նամակներ, գրականություն է ուղար-
կում ում հարկն է, տեղ է հասցնում Լենինի խոսքն ու հանձնարարություն-
ները: 1913 թվականի ապրիլի 27-ին նա Կասպարովին հայտնում էր, թե Շա-
հումյանին արդեն գրել են: Ըստ երևույթին այս նամակը տեղ չի հասել:
Շահումյանը Վ. Ի. Լենինին պատասխանել է 1913-ի հունիսի 10-ին, նշելով՝
«մոտ օրերս նամակ ստացա...»: Վ. Ի. Լենինն ու Ն. Կ. Կրուպսկայան ցանկա-
ցել էին իմանալ Շահումյանի կարծիքը Կասպարովի մասին: Շահումյանը բար-
ձր կարծիք է հայտնում, գրելով, թե բեռլինցին, որի մասին իրենից հարցնում
են, «Մեր լավ բարեկամն է», ասել է թե՝ բոլշևիկների բարեկամը, որին իրենք
կարող են «լիովին վստահել»: Այսպիսով վերականգնվում է այժմ գրականու-
թյան մեջ լայնորեն հայտնի նամակագրությունը Վ. Ի. Լենինի և Ստ. Շահում-
յանի միջև:

Ավելի ուշ՝ 1913 թվականի սեպտեմբերի 20-ին Կրուպսկայան Կասպարո-
վին գրում էր, թե Բաքվից ու Թիֆլիսից նամակներ են ստացվել, և որ այն-
տեղի ընկերներն ունեն իրենց հասցեները: Փոքր բան չէր. Բաքվի բոլշևիկները
վերականգնում էին ընդհատված նամակագրությունը Վ. Ի. Լենինի հետ: Ո՛չ
միայն նամակն էր տեղ հասնում, այլև ստացվում էր պատասխանը: Իսկ
ամեն րոպե կարող էին ձախողումներ լինել: Եվ լինում էին: Մի հասցեով
հաճախ կապը չէր ապահովվում: Թերևս այդ է պատճառը, որ 1914-ի հունիսի
29-ին Կրուպսկայան Կասպարովին դարձյալ գրում էր. «Անհապաղ հայտնե-
ցեք Կովկասի բոլոր հասցեները»:

Պահնորդական բաժանմունքը հասցեները և, մանավանդ, արտասահմա-
նից ստացված նամակները հսկողության տակ էր պահում: Ամեն ինչ պատա-
հում էր: 1914 թվականի սկզբներին, օրինակ, չունենալով Ենուկիձեի նոր հաս-
ցեն, Կասպարովը նրան գրել էր հնով: Նամակն ընկել էր ժանդարմական վար-
չության ձեռքը: Ենուկիձեին կանչել էին, հարցաքննել, թե ումից է այն, ովքեր
են նամակում հիշատակված Իլյիչն ու մյուսները: Ենուկիձեն, հիշտ է, կարո-
ղացել էր իր պատասխաններով հերքել վարչության կասկածները, բայց փաս-
տը մնում էր փաստ, որ այդ հասցեն հուսալի չէր: Ուրեմն, նորն էր պետք:
Ձախողումների և զանազան այլ պատճառներով հեղափոխական գործիչների
հասցեները, առհասարակ, հաճախ էին փոխվում: 1913-ի հունիսի 3-ին
Կրուպսկայան Կասպարովին գրում էր, թե նրա ուղարկած հասցեով Շահում-
յանին թեև գրել է, բայց պատասխան չի ստացել: Չէր կարող պատահել, որ
Շահումյանն ստանալուն պես չարձագանքեր: Հավանաբար, հասցեն էր փոխ-
վել: Պետք էր պարզել, նորը գտնել: Եվ կրկին հանձնարարություն. չունե՞ք
արդյոք այն պոլտավցու հասցեն, որը մեկնել է Կովկաս, հարցնում էր Կրու-
պսկայան: Նշանակում է, Կասպարովը մինչ այդ հայտնել էր պոլտավցիների
մասին, ավելացնելով նաև, որ այնտեղի ընկերներից մեկը մեկնել է Կով-
կաս:

Պոլտավցին Կասպարովի Ռոստովի ընկերներից Ակակիա Կոբախիձեն էր,
որ արտաքսվել էր Պոլտավա, իսկ արտաքսման ժամկետը լրանալուց հետո
այնտեղից վերադարձել Վրաստան՝ Քութայիսի նահանգի Ռաչինի գավառ

Ռոմաուրի գյուղը: Պոլտավայում Կոբախիձեն բոլշևիկյան բջիջ էր ստեղծել
փոստում, հեռագրատանն ու դեպոյում: Այնտեղից նա կապ է հաստատում
խարկովի հետ: Շուտով, երբ Պոլտավա են գալիս Ալեքսեյ Գեգեչկորին և մի
քանի այլ բոլշևիկներ, քաղաքում բոլշևիկյան աշխատանքն ավելի է ծավալ-
վում, և այդ, բնականաբար, պետք է հետաքրքրեր կուսակցության կենտրոնին:

Կասպարովը բոլորովին անսպասելիորեն Կոբախիձեից նամակ է ստա-
նում նրա նոր ապրելատեղից: Բայց նա ոչինչ չէր գրում Պոլտավայի հասցեի
մասին: Կասպարովը պատասխանում է, խնդրում Պոլտավայի հասցեներ, իսկ
Կրուպսկայային գրում է, թե հարկ է սպասել մինչև Կոբախիձեի պատասխա-
նը: Այնուամենայնիվ, Կրուպսկայան հունիսի 14-ին դարձյալ գրում էր Կաս-
պարովին, որ նա իրենց կապի «Պոլտավայի ընկերների հետ»: Դեռ ապրիլի
18-ին Կրուպսկայան Կասպարովից հարցնում էր, թե անվնա՞ս են, գործո՞ւմ
են արդյոք պոլտավցիները: Նա ցանկանում էր իմանալ՝ հին հասցեն պիտանի
է, թե՞ ոչ, իսկ եթե ոչ, ապա պետք է նորը ճարել:

Հունիսի 22-ին դարձյալ նույն հարցը. «Իսկ ի՞նչ եղավ Պոլտավայում
ապրող ընկերոջ հասցեն: Որտե՞ղ է նա այժմ»: Եվ այսպես մի քանի անգամ:
Կասպարովը հարցին պատասխանում է միայն այն ժամանակ, երբ Կոբա-
խիձեն մեկնել էր Քութաիսի նահանգը: Այսպիսով՝ մի Անդրկովկասյան հասցե
ևս՝ ՌՍԴԲԿ Կենտկոմի հասցեների գրքում: Կոբախիձեն, ինչպես և Ռոստովի
նրա մյուս ընկերները, գրում էին Կասպարովին, հայտնում իրենց գործերի
մասին և խնդրում, որ նա կապ հաստատի կենտրոնի, անձամբ Լենինի հետ:
Այդ արդեն Կենտկոմի քարտուղար Կրուպսկայայի գործն էր: Իսկ Կրուպսկա-
յան աշխատում էր մեծ լարվածությամբ՝ գիշեր ու ցերեկ, անդադար: Ո՛չ միայն
նամակներ, թերթեր ու գրականություն էր ուղարկում, այլև տեղերն էր հա-
ցրնում Կենտկոմի, անձամբ Վլադիմիր Իլյիչի հանձնարարությունները, հե-
տևում դրանց կատարման ընթացքին և ընդհանրացնում, ի մի բերում ստաց-
ված տեղեկությունները:

Մի անգամ Կրուպսկայան Կասպարովին գրած նամակում շատ նրբորեն
ցանկություն է հայտնում, որ նա ևս մասնակցի նամակների և այլ նյութերի
առաքմանը: Կարող է, որ վաղօրք նա Կասպարովին ասել էր, որ ստանալով
հասցեները, ինքը գրում է նամակներ, ուղարկում գրականություն և այլն: Եվ
ահա 1913 թվականի հունիսի 14-ի նամակում նա իր և Կասպարովի միջև մի
տեսակ աշխատանքի բաժանման վարիանտ է առաջարկում. «Ուզում եք,
կուղարկենք մենք ինքներս և Դուք ուղարկեցեք միայն հասցեներ կամ թե
ուղարկեցեք Դուք, իսկ մենք Ձեզ կուղարկենք անհրաժեշտ գրականություն»:
Կրուպսկայայի միտքը պարզ է. ուզում է, որ Կասպարովը հասցեներ ուղար-
կելուց առաջ անցնի, մասնակցի նյութերի առաքմանը նույնպես, բայց հար-
կավոր էր իմանալ՝ Կասպարովը կարո՞ղ էր այդ անել, թե ոչ: Բանը միայն
նրա պատրաստակամությունը չէր: Կրուպսկայան դրանում չէր կասկածում:
Նրան հետաքրքրում էր՝ կարո՞ղ էր Կասպարովը գրականություն ստանալ իրեն-
ցից և ի՞նչ հասցեով: Նա Կասպարովին խորհուրդ էր տալիս տանտիրոջից
թույլտվություն խնդրել գրականությունը նրա անունով ուղարկելու համար,
քանի որ, գրում էր նա. «...Բեռլինում ռուսներին հսկում են, և Դուք կարող եք
փչացնել Ձեր լեգալությունը, եթե դուք լեգալ մարդ եք...»: Այժմ դժվար է
բոլոր մանրամասնությունները պարզել, բայց երևում է, որ Կասպարովն իր



անվտանգության հարցը լուծում է: 1914 թվականի հունվարի 13-ին, օրինակ,
Կրուպսկայան միանգամից երեք նամակ է ուղարկում Կասպարովին, որպեսզի
նա առաքի հասցեատերերին:

Երբ 1913 թվականի ամռանը Նադեժդա Կոնստանտինովնան պատրաստ-
վում էր Վ. Ի. Լենինի հետ մեկնել Բեռն՝ բուժվելու, վաղօրք գրում է Կաս-
պարովին, թե երկու շաբաթով բացակայելու են, իսկ գործ շատ կա անելու,
և խնդրում է, որ մնացածն ինքն անի: Պետք էր գրել Ռոստով և Բաքու, բայց
այլևս ժամանակ չկա, գրում է Կրուպսկայան. «Այդ էլ գրեցեք ինքներդ»: Թե
ինչ էր գրելու, դժվար է ասել. բայց պարզ է, որ իր անունից չէր գրելու: Սա
ավելի քան վստահության արտահայտություն է:

1914 թվականի ապրիլի 24-ին Կասպարովը, ի պատասխան Կրուպսկա-
յայի հարցման, հայտնում էր, թե Շահումյանից միայն մի հեռագիր է ստա-
ցել և որ ինքը նրա հասցեն չգիտե, հարցնում է արել և ստանալուն պես կգրի:
Բայց, այնուամենայնիվ, տալիս է մի հասցե, որով շատ շտապ լինելու դեպ-
քում կարելի էր գրել. Բաքու, Պիտոևի գրասենյակ, Միխայիլ Ալեքսանդրի
Ղարագյոզովին, Ստեփանի համար:

Ստանալով հասցեն, Լենինը և Կրուպսկայան անմիջապես գրում են Շա-
հումյանին:

Նամակները գրվում և ուղարկվում էին զանազան ձևերով: Կրուպսկայան
մշակել էր գաղտնագրության ձևերից մեկը: Ուղարկում էր որևէ գիրք կամ
ամսագիր, որի էջերից մեկի տողամիջում անտեսանելի թանաքով (քիմիական
նյութով) գրում էր նամակը, իսկ ուրերորդ էջում նշում, թե որ էջում է գրված:
Էջը իմանալուց հետո մշակված եղանակով վերականգնվում էր գրությունը:

Մի խոսքով հասցեներն առաջ են բերում նորանոր կապեր, կենտրոնում
պատկերացում ստեղծում տեղերում տիրող վիճակի մասին, իսկ կենտրոնի
խորհուրդներն ու ցուցումները խթանում են հեղափոխականների գործունեու-
թյանը տեղերում: Այնպես որ Կասպարովը տեխնիկական գործով չէր զբաղ-
ված: Նա կատարում էր համակուսակցական մեծ նշանակություն ունեցող
աշխատանք, որը զարգացման տվյալ էտապում չափազանց կարևոր էր և խո-
շոր չափով պայմանավորում էր կուսակցության ընդհանուր գործունեության
վերելքը Ռուսաստանում: Կասպարովը, կատարելով Վ. Ի. Լենինի՝ կուսակ-
ցության առաջնորդի ու ղեկավարի հանձնարարությունները, գտնվում էր կու-
սակցական աշխատանքի կենտրոնում և մեծ գործ էր կատարում եղած ուժերը
համախմբելու ուղղությամբ: Փոքր բան չէր այդ. Ռուսաստանից ստացված
նամակներն արտացոլում էին համառուսաստանյան բոլշևիկյան կուսակցա-
կան և հեղափոխական շարժման իրական պատկերը, առանց որի անհնար էր
ժամանակի ու հանգամանքների ճիշտ վերլուծությունը, կոնկրետ անելիքների
ու նպատակների սահմանումը, որով զբաղված էր Լենինը:

Ստացված նամակներից Վ. Ի. Լենինը, Ն. Կ. Կրուպսկայան և Վ. Մ. Կաս-
պարովը իմացան, որ 1913 թվականի առաջին ամիսներին Դոնի-Ռոստովում
շարունակվում է բոլշևիկյան աշխատանքը բջիջները միավորելու ուղղությամբ,
որը հանգեցրել է «ղեկավար կոլեկտիվի» ստեղծմանն ու ՌՍԴԲԿ Դոնի-Ռոս-
տովի կոմիտեի ձևավորմանը: Մարտին տեղի էր ունեցել մեծ ձերբակալու-
թյուն: Ձերբակալվածների մեջ էր նաև բոլշևիկ կազմակերպիչ Դմիտրի
Կուդրյավցևը, որը նույնպես արտաքսվում է Պոլտավա, ուր գտնվում էին նրա
ընկերներ Ակակիա Կոբախիձեն և Վարվառա Կոռնեևան: Նրանք իրենց համար

հացե են ընտրում Ռեչնիցկի նրբանցքի վրա գտնվող հայազգի Բեժանովի
տունը և այդ մասին հայտնում են Կասպարովին:
Մինչև Կասպարովի Բեռլին գալը Կրուպսկայան նամակագրություն ուներ
Ռոստովի ընկերների հետ: Բայց Կասպարովը տալիս է նոր, անհամեմատ հու-
սալի հասցեներ: 1913 թվականի հունիսի 13-ին Կրուպսկայան Կասպարովին
հայտնում էր, որ ինքն արդեն Ռոստով գրել է: Այդ ժամանակ Կուդրյավցևը
վերադարձել էր Ռոստով և այնտեղից նամակագրություն ուներ Կասպարովի
հետ: Նույն հունիսին նա Կասպարովի միջոցով Վ. Ի. Լենինին ու Կրուպսկայա-
յին հայտնում էր, որ տվյալ պահին քաղաքում բոլշևիկյան կազմակերպու-
թյուն, որպես այդպիսին, չկա, բայց ստեղծելու փորձեր են արվում: Իսկ դրա
համար հիմք կար, որովհետև գրված վինակում գործում էին կուսակցության
107 անդամ:
Կրուպսկայան շատ հարցերով էր դիմում Կասպարովին, այդ հուսալի ու
վստահելի մարդուն: Նրանից կարելի էր ոչ միայն հասցեներ, այլև տեղե-
կություններ ստանալ հեղափոխական գործիչների մասին, իմանալ նրանց
տեղը և այլն: 1913 թվականի հունիսի 14-ին Կրուպսկայան Կասպարովին
հարցնում էր, թե նա գիտե՞ արդյոք Սերգո Օրջոնիկիձեի մասին և չի՞ կարող
ասել, թե ինչպես կարելի է նրան փող ուղարկել: Հարցնում էր նաև Տիմոֆեյի
ու Կոբայի (Սպանդարյանի և Ստալինի) մասին: Խնդրում էր, որ Կասպարովը
տա օգնության կարիք ունեցող բանտարկված ու աքսորված ընկերների կամ
նրանց հարազատների անունները, որպեսզի հնարավոր լինի փող ուղարկել
նրանց: Կրուպսկայան ասում էր, թե Կրակովում է գտնվում քաղաքական աք-
սորյալների օգնության միությունը, որը կստանձնի այդ գործը: Գրելով այդ
ամենի մասին, ի վերջո նա հարցնում էր, թե ճանաչո՞ւմ է արդյոք Կասպա-
րովը ընկեր Բեկզադյանին:
Հարցումներից ամեն մեկը մի նպատակ էր հետապնդում: 1914 թվականի
փետրվարի 2-ին, Կրուպսկայան իմանալով, որ Գ. Շկլովսկու մոտ աքսորյալ-
ներին օգնելու համար 100 ֆրանկ փող կա, գրում էր նրան՝ այդ փողն ուղար-
կել Սպանդարյանին, հայտնելով նրա աքսորավայրի ու կնոջ հասցեն, նշելով,
թե Սպանդարյանը, որը Կենտկոմի նախկին անդամ է, խիստ կարիքի մեջ է:
Իր հարցումներով ու հանձնարարություններով Կրուպսկայան ընդարձա-
կում էր Կասպարովի ճանաչողության և գործունեության ոլորտը: Կասպարովը
ո՛չ միայն տեղեկանում էր ներկուսակցական կյանքի կարևոր իրադարձու-
թյուններին, այլև դառնում այդ կյանքի եռանդուն մասնակիցներից մեկը:
Հիշենք, որ Կասպարովը Բեռլին ժամանեց այն պահին, երբ արևմտա-
եվրոպական սոցիալ-դեմոկրատական շարժման մեջ ուժեղ հետաքրքրասիրու-
թյուն էր առաջացել ազգային հարցի նկատմամբ և ո՛չ միայն իսկական հե-
ղափոխական մարքսիստները, այլև ամեն գույնի սոցիալիստները զբաղված
էին ազգային հարցի տեսության յուրովի մշակմամբ: Ազգային հարցի մարք-
սիստական տեսության մշակմանը մեծ նշանակություն էր տալիս Լենինը և
իր քաղաքական-տեսական գործունեության մեջ հատուկ ուշադրություն էր
նվիրում դրան: Նա հետևում էր արտասահմանում և Ռուսաստանում լույս
տեսնող գրականությանը և ձգտում կարդալ ազգային հարցի շուրջ հրատա-
րակվող ամեն բան: Հարկավոր էր ուշի-ուշով հետևել, ձեռք բերել այն ամե-
նը, ինչ լույս էր տեսնում, հավաքել մամուլի էջերում զետեղված հոդվածները:
Ն. Կ. Կրուպսկայան Իլյիչի հանձնարարությամբ զբաղված էր այդ գրակա-


թյան ու այլևայլ նյութերի հավաքմամբ: Այդ կապակցությամբ նա դիմում էր
առանձին ընկերների, խնդրում, որ նրանք ձեռք բերեն այս կամ այն թերթը,
հոդվածը, գիրքը կամ գրքույկը: Կասպարովը ևս իր մասնակցությունն ուներ
այդ գործում:
Լենինը կարևոր նշանակություն էր տալիս կովկասյան կյանքի ուսում-
նասիրությանը:
Կովկասի մասին հետաքրքրող հարցերի պատասխանները գտնելուն նրան
մեծ չափով օգնում էր Կասպարովը՝ կովկասյան կյանքի վերաբերյալ իր հետ
բերած տեղեկություններով, իր գիտելիքներով ու Կովկասի հետ կապեր հաս-
տատելու հմտությամբ: Նրան գրում էին շատերը: 1913 թվականի վերջին բոլ-
շևիկյան «Просвещение» ամսագրի խմբագրությունը խնդրում էր նրան գտնել
և ուղարկել վրացական «Զվենի ծղարո» ամսագիրը, որտեղ Կովկասի նա-
ցիոնալիստների դեմ ազգային հարցի մասին հոդվածներ էր տպագրում ակա-
նավոր մարքսիստ գրականագետ Ֆիլիպ Մախարաձեն: Քանի որ «Про-
свещение»-ն նույնպես հոդվածներ էր տպագրելու ազգային հարցի մասին,
ապա խմբագրությունը խնդրում էր Կասպարովին, որ նա նամակագրական
կապ ստեղծի Մախարաձեի հետ և նրան ընդգրկի գործի մեջ:
Կասպարովը հասցնում էր կատարել կուսակցության ղեկավարության
հանձնարարությունները և չէր մոռանում ո՛չ իր ուսումը, ոչ էլ Բեռլինի բոլ-
շևիկյան խումբը: Այդ մասին գիտեին Վ. Ի. Լենինն ու Կրուպսկայան: Ուստի,
նրանք հարցնում էին նաև իր՝ Կասպարովի գործերից, օգնելու, դեպքերի ըն-
թացքին տեղյակ պահելու համար հայտնում էին կարևոր տեղեկություններ
համակուսակցական իրադարձությունների մասին:
1913 թվականի ապրիլի 18-ին Կրուպսկայան ցանկանում էր Կասպարո-
վից իմանալ, թե ովքեր են մտնում բոլշևիկների Բեռլինի խմբի մեջ: Գիտեր
Կրուպսկայան, որ Բեռլինում շատ չեն բոլշևիկները և առանձնապես ծավալուն
չէ նրանց գործունեությունը: Կրուպսկայան փորձում է օգնել Կասպարովին՝
Բեռլինում համախմբելու բոլշևիկներին, նրանց գործունեությունն աշխուժաց-
նելու նպատակով: Կասպարովին նա ուղարկում է լատիշ բոլշևիկների հասցե-
ները, հայտնելով, որ նրանք վստահելի մարդիկ են և Կասպարովին կհայտ-
նեն բոլոր անհրաժեշտ տեղեկությունները: Եվ, որպեսզի նրանք վստահեն
Կասպարովին, Կրուպսկայան գրում է, որ թող ասի, որ ինքն ու Լենինն են
տվել այդ հասցեները: Կրուպսկայան ցանկանում էր, որ Կասպարովը կազ-
մակերպական աշխատանք տանի Բեռլինի բոլշևիկների շրջանում, անպայ-
ման նրանցից մի խումբ կազմակերպի: Այնպես 1913 թվականի օգոստոսի
27-ին նա չէր հարցնի, թե՝ «... առհասարակ Բեռլինում խմբի նման մի բան
ստեղծեցի՞ք արդյոք»: Իսկ հաջորդ տարվա հունվարի 13-ին չէր գրի՝ «Ի դեպ,
գրեցեք նաև Բեռլինի խմբի մասին»: Առաջինի իմաստը պարզ է: Երկրորդը
ապացույցն է այն բանի, որ Կրուպսկայան գիտեր խմբի գոյության մասին
և հետաքրքրվում էր նրա գործունեությամբ, որպես Եվրոպայի զանազան
քաղաքներում գործող բոլշևիկյան խմբերից մեկը:
Շատ հոգատար էր Կրուպսկայան Կասպարովի նկատմամբ, ցանկանում
էր, որ նա մենակություն չզգա, ճանաչի և մոտ լինի բոլշևիկների համախոհ-
ներին: Մի անգամ, ահա, նա Կասպարովին տեղեկացնում է. «Բեռլինում է
ապրում Տիմոֆեյի մի լավ ծանոթը»: Խոսքը հայ գրող Մուրացանի կնոջ՝ Ոսկի
Տեր-Հովհաննիսյանի մասին էր: Կրուպսկայան գրում էր, թե ճիշտ է, նա ու-

ցիալ-դեմոկրատ չէ, բայց օգնել է բոլշևիկներին և, առհասարակ, բոլշևիկները եղել են նրա մոտ և միջոցառումներ անցկացնելիս օգտվել նրա սիրալիր վերաբերմունքից: Հայտնելով Ոսկի Տեր-Հովհաննիսյանի հասցեն, Կրուպսկայան խորհուրդ էր տալիս՝ նրա մոտ գնալիս վկայակոչել Վլադիմիր Իլյիչին:

Կրուպսկայան ցանկանում էր, որ Կասպարովը ծանոթանա նաև գերմանական սոցիալ-դեմոկրատական գործիչներին, ուստի սիրով հանձն է առնում տալ հասցեներ: Ահա թե ինչ է գրում Կրուպսկայան. «Եթե դուք լավ գիտեք գերմաներենը և ցանկանում եք կապվել գերմանացիների հետ, մենք կարող ենք կապեր ստեղծել գերմանացիների հետ»: Սա արդեն ընկերական վերաբերմունք է, փոխադարձ հարգանքի արտահայտություն:

Կրուպսկայան Կասպարովին տեղեկացնում էր գրական և քաղաքական կյանքի նորություններին, հարցնում, թե ինչի կարիք ունի, կարդացե՞լ է արդյոք այս կամ այն հոդվածը, ավելացնելով՝ «Այդ ամենը, եթե ինքներդ ուզում եք, կարող եմ ուղարկել Ձեզ»: 1913 թվականի նոյեմբերի 7-ին Կրուպսկայան Կասպարովին գրած նամակում Կենտկոմի և կուսակցական աշխատողների համատեղ II խորհրդակցությունը բնութագրում է որպես իր կազմով շատ սոլիդ խորհրդակցություն, ուր տեղերից տրված զեկուցումներն ստեղծեցին վառ պատկերացում այն մասին, ինչ արվում էր Ռուսաստանում: Եվ, որպեսզի Կասպարովն ավելի մանրամասն իմանա խորհրդակցության մասին, Կրուպսկայան նրան գրում է, թե որոշման մի քանի օրինակ ուղարկել են Բեռլինի լատիշ ընկերներին, որոնցից մեկը կարող է ինքը վերցնել:

Ինչ խոսք, որ ամեն ինչ արվում էր գործի համար: Իսկ գործի բախտը վճռվելու էր, վերջին հաշվով, բուն Ռուսաստանում, որից հեռու, բայց որի համար աշխատում էին վտարանդի բոլշևիկները: Մինչդեռ Ռուսաստանից ստացված տեղեկությունները միշտ չէր, որ լիովին գոհացուցիչ էին լինում: 1914 թվականի հունվարի 13-ին Կրուպսկայան Կասպարովին գրում էր, թե Կովկասի բոլշևիկները, ճիշտ է, բավական կայտառորեն են տրամադրված, բայց նամակագրությունը «վատից էլ վատ է», և, որքան իրենց հայտնի է դարձել, «Правда»-ի բաժանորդագրությունն էլ լավ չէ այնտեղ. Գոմելում բաժանորդների թիվը 73 է, Իվանովո-Վոզնեսենսկում՝ 87, մինչդեռ ամբողջ Կովկասում՝ 114: Եվ Կրուպսկայան խնդրում էր Կասպարովին, որ նա հեռվից անհանգստացնի ընկերներին, որպեսզի բերրի ավելի շատ օրինակներ տարածեն:

Կասպարովը չէր մոռացել, ինչպես մի երկու ամիս առաջ Կրուպսկայան այն-ոգևորված գրում էր իրեն, թե Պիտերից ուրախ լուրեր են ստացվում, որ այնտեղ խոսում են համընդհանուր գործադուլի մասին և այլն: Չէր մոռացել և այն, որ Կրուպսկայան շատ բարձր էր գնահատում Կովկասի դերը համառուսաստանյան հեղափոխական շարժման մեջ: Իսկ դա Լենինի կարծիքն էր: Ուստի, նա գրիչ է վերցնում և գրում Կովկասի ընկերներին, հորդորում նրանց ավելի եռանդով գործի կպչելու, որպեսզի ետ չմնան Պիտերից և արդարացնեն իրենց նկատմամբ Լենինի տածած վստահությունը *:

---

* Հոդվածում օգտագործված են անտիպ նյութեր՝ ՍՄԿԿ ԿԿ-ին կից ՄԼԻ-ի, ԿԿԱ.-ի 2, 17, 29, 124, ՄԼԻ-ի ՀՖԱ.-ի 400 և Դոնի-Ռոստովի մարզային կուսարխիվի 829-րդ ֆոնդերից:

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՂԵԿԱՎԱՐ ՈՒԺԸ

*Երեք տարի առաջ Երևանի կաբելի գործարանն իր աշխատանքի արտադրողականությամբ և արդյունավետությամբ անմխիթար վիճակում էր, որի համար նրա դիրեկցիան, կուսակցական կազմակերպությունը և ամբողջ կոլեկտիվը քննադատվում էին մամուլի էջերում, սովետական ու տնտեսական վերադաս օրգանների կողմից:*

*Գործարանն այդ վիճակից դուրս բերելու համար լուրջ և դժվարին խնդիրներ էր դրված կուսակցական կազմակերպության նորընտիր բյուրոյի, տնտեսական ղեկավարների և հասարակական կազմակերպությունների առջև: Դրանց իրականացման համար գործարանային կուսակցական կազմակերպության բյուրոն (քարտուղար Ռ. Կոստանյան), ելնելով հաշվետու ընտրական ժողովում կոմունիստների քննադատական դիտողություններից, ադմինիստրացիայի, գործարկոմի և կոմերիտական կազմակերպության համատեղ ջանքերով մշակեց կոնկրետ, գործարար միջոցառումներ:*

*Կուսակցական կազմակերպության նորընտիր բյուրոն իր գործունեությունն սկսեց գործարանի կադրերի տեղաբաշխումից և արտադրության մեջ տեղ գտած թերությունների ու խոչընդոտների վերացումից:*

*Հաշվի առնելով գործարանի հյուսման, գլանման, ձգման արտադրամասերում ստեղծված ծանր դրությունը, կուսակցական կազմակերպության բյուրոն հատուկ հանձնաժողովներ ստեղծեց, որոնք ուսումնասիրեցին նշված արտադրամասերի արտադրական գործունեությունն ու կադրերի դասավորությունը: Այդ հարցի քննարկումից հետո արտադրության նեղ տեղերում և դժվարին օղակներում աշխատանքի նշանակվեցին գործիմաց, սկզբունքային կոմունիստներ: Փոխվեցին տնտեսական և տեխնիկական ղեկավար աշխատողները: Գլանման արտադրամասի պետ նշանակվեց երիտասարդ կոմունիստ Կ. Կրճիկյանը, վերանայվեցին ու փոխվեցին նաև մի շարք այլ կադրեր: Հյուսման արտադրամասում ևս փոխվեց ղեկավարությունը: Աշխատանքի նշանակվեցին գործին նվիրված, բարեխիղճ կոմունիստներ Ժ. Սարիբեկյանը, Ս. Հայրապետյանը և ուրիշներ:*

*Տարիներ շարունակ ձգման արտադրամասը չէր կատարում առաջադրանքները: Ահա թե ինչու կուսակցական կազմակերպության բյուրոն կադրերի վերանայման և տեղաբաշխման հետ միասին քննարկեց այդ արտադրամասի արտադրական գործունեությանը խոչընդոտող հարցերը և կազմակերպչական միջոցառումներ մշակեց ստեղծված վիճակից դուրս գալու համար: Արդյունքն*

եղավ այն, որ ձգման արտադրամասի կոլեկտիվը սկսեց կատարել և գերա-
կատարել արտադրական պլաններն ու սոցիալիստական պարտավորություն-
ները՝ թողարկեց բարձրորակ արտադրանք, պահպանեց խնայողության ռե-
ժիմն ու ֆինանսական կարգապահությունը:

Կուսակցական կազմակերպության բյուրոյին քիչ չմտահոգեց նաև ար-
տադրանքի որակի հարցը: Նա իր նիստերում և կազմակերպության ժողով-
ներում մի քանի անգամ անդրադարձավ դրան և իրականացրեց այնպիսի
միջոցառումներ, որոնց շնորհիվ զգալիորեն բարելավվեց արտադրանքի որա-
կը: Այսպես. եթե 1965 թվականի 8 ամսում էմալապատման արտադրամասում
ուղղելի խոտանը կազմում էր 4 տոկոս, ապա 1966 թվականի համապատաս-
խան ժամանակամիջոցում այն կազմեց 2,1 տոկոս, իսկ վերջնական խոտանը,
1965 թվականի 0,55 տոկոսի համեմատությամբ, 1966 թվականին կազմեց
0,34 տոկոս:

Կուսակցական կազմակերպությունը և տնտեսական ղեկավարությունն
իրենց գործունեության ընթացքում ուշադրությունը սևեռել են աշխատանքի
արտադրողականության բարձրացմանը և հասել ցանկալի արդյունքի: Արտա-
դրության մեջ նոր սարքավորումների տեղադրումը, գյուտարարական և նո-
րարարական առաջարկությունների ներդրումը, աշխատանքի լավ կազմա-
կերպումը, որակյալ կադրերով ապահովելը և խրախուսանքի բոլոր միջոցների
կիրառումը հասցրին այն բանին, որ 8 ամսում գործարանի մեկ աշխատողի
աշխատանքի արտադրողականությունը աճեց 2,6 տոկոսով, 1965 թ. 0,1 տո-
կոսի փոխարեն: Եթե տարիներ շարունակ գործարանն ունենում էր աշխատա-
վարձի ֆոնդի մեծ գերածախս, ապա անցած տարվա միայն 8 ամսում ունե-
ցել է 27 հազար ռուբլու տնտեսում: Այդ նույն ժամանակաշրջանում գործա-
րանի կոլեկտիվը արտադրական պլանը կատարել է 102,3 տոկոսով և արժա-
նացել ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության և
նույն արդյունաբերության արհմիութենական կոմիտեի երկրորդ կարգի մրցա-
նակի ու 22 հազար ռուբլու դրամական պարգևի: Այս բոլորը ոգևորեց գոր-
ծարանի ողջ կոլեկտիվին նորանոր հաջողությունների հասնելու համար: Բա-
վական է ասել, որ իրենց լավագույն և անբասիր աշխատանքի շնորհիվ ձեռ-
նարկության 23 առաջավոր կարելագործ արժանացան ՍՍՀՄ շքանշանների ու
մեդալների: Այժմ գործարանի բանվոր-ծառայողները նոր, լրացուցիչ պար-
տավորություններ են վերցրել Վ. Ի. Լենինի ծննդյան 100 և Հոկտեմբերյան
սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակի պատվին:

Առանց վարանելու կարելի է ասել, որ այս խոշոր ձեռնարկությունում
կուսակցական կազմակերպությունը կոլեկտիվի ոգին է, նրա առօրյա, բազ-
մաբովանդակ աշխատանքի կազմակերպիչն ու քաղաքական ղեկավարը: Լիո-
վին օգտագործելով քաղաքական-դաստիարակչական և կազմակերպական աշ-
խատանքի զինանոցի բոլոր միջոցները, կուսկազմակերպությունն ամեն ինչ
անում է, որպեսզի կուսակցականները և կոլեկտիվի անդամները դաստիա-
րակվեն բարձր գաղափարայնությամբ: Կուսակցական կազմակերպությունը
կոմպլեկտավորել է մարքս-լենինյան տեսությունն ուսումնասիրող 11 տարբեր
տիպի քաղխմբակներ և տեսական սեմինարներ, ուր ընդգրկված են 208 կու-
սակցական: Բոլոր խմբակներն ու սեմինարները ղեկավարում են գործա-
րանի լավագույն, քաղաքականապես պատրաստված ակտիվիստները: Գոհու-
նակությամբ պետք է նշել, որ քաղաքական ուսուցման բոլոր օղակներում



պարապմունքներն անցնում են կազմակերպված և գաղափարական բարձր
մակարդակով: Դա, իհարկե, առաջին հերթին, պայմանավորված է պրոպա-
գանդիստների վարպետությամբ և տեսական պատրաստականությամբ: Այս
դժվարին, բայց պատվաբեր աշխատանքում չի կարելի գովասանքի խոսք չա-
սել այնպիսի ջանասեր և բարեխիղճ պրոպագանդիստների մասին, ինչպիսիք
են՝ Ա. Հարությունյանը, Գ. Սմբատյանը, Վ. Ասատրյանը, Վ. Սիմոնյանը,
Ջ. Թովմասյանը, սեմինարավարներ՝ Ա. Կակոսյանը, Ս. Ասոյանը և Պողոս-
յանը:

Կուսակցական կազմակերպությունն առանձնահատուկ ուշադրություն է
նվիրում գաղափարական աշխատանքի կարևորագույն օղակին՝ դասախոսա-
կան պրոպագանդային: Գործարանն ունի իր լավագույն ուժերից կոմպլեկ-
տավորված դասախոսական խումբ, որի միջոցով, ինչպես և քաղաքի որակ-
յալ դասախոսների ուժերով, միայն վերջին մեկ տարվա ընթացքում կարդաց-
վել են 104 դասախոսություն:

Խրախուսանքի արժանի է կուսակցական կազմակերպության կողմից
առանձնացված 89 ագիտատորների աշխատանքը, որոնցից աչքի են ընկնում
Ա. Կիրակոսյանը, Ս. Ավագյանը, Ա. Զաքարյանը, Ա. Մանուկյանը, Վ. Ալեք-
սանյանը, Հ. Միրիջանյանը և ուրիշներ: Կուսակցական կազմակերպությունը
խելացի և մտածված գործունեություն է ծավալել նաև ցուցադրական ագի-
տացիայի կազմակերպման ուղղությամբ: Ի տարբերություն շատ ձեռնարկու-
թյունների, այստեղ այն զերծ է շաբլոն, դեկլարատիվ կոչերից: Գործարանի
տերիտորիայում և նրա արտադրամասերում փակցված ցուցատախտակները
գեղեցիկ ու ճաշակով են պատրաստված, բովանդակությամբ հարուստ են ու
բազմիմաստ: Գործարանի կուսկազմակերպությունը և նրա բյուրոն գործի են
դրել մարդկանց գաղափարապես դաստիարակելու բոլոր լծակներն ու մի-
ջոցները:

Կուսակցական կազմակերպությունը հոգում է նաև կոլեկտիվի անդամ-
ների էսթետիկական դաստիարակության մասին: Նա հասարակական կազ-
մակերպությունների միջոցով պարբերաբար կազմակերպում է կուլտուր-մաս-
սայական միջոցառումներ, որոնք մարդկանց մեջ պատվաստում են գրական-
գեղարվեստական բարձր ճաշակ:

Կուսակցական կազմակերպությունն առավել մեծ հոգատարություն է
ցուցաբերում կոլեկտիվի երիտասարդ անդամների դաստիարակության նկատ-
մամբ, այն համարելով իր սրբազան պարտքը: Գործարանում աշխատում են
223 կոմերիտական և արտամիութենական մեծ թվով երիտասարդներ: Կու-
սակցական կազմակերպությունը հաճախ է անդրադարձել երիտասարդության
դաստիարակության, կոմերիտական կազմակերպության աշխատանքի հար-
ցերին և գործարար միջոցներով օգնել նրանց:

Կուսկազմակերպության հոգացողության շնորհիվ գործարանում աշխա-
տող երիտասարդներն ընդգրկվել են հանրակրթական և մասնագիտական
ուսուցման մեջ: Այժմ գործարանում աշխատող ավելի քան 150 երիտասարդ
սովորում են միջնակարգ մասնագիտական և բարձրագույն ուսումնական հաս-
տատություններում: Նրանց ուսումնա-դաստիարակչական հարցերը հաճախ
քննության են առնվում կուսակցական և ԷԿԵՄ կոմիտեներում. նրանք երի-
տասարդներին անհրաժեշտ օգնություն են ցույց տալիս ուսման առաջավոր-
ներ դառնալու համար:

Կոմերիտականներին քաղաքական գիտելիքներով զինելու նպատակով ստեղծվել են չորս տարբեր տիպի քաղխմբակ։ Կազմակերպվել է նաև երիտասարդ բանվորների և վարպետների, ինչպես նաև ինժեներա-տեխնիկական անձնակազմի մասնագիտական պատրաստականությունը բարձրացնելու դասընթացներ։

Գործարանի երիտասարդությանը հեղափոխական տրադիցիաների, հայրենասիրության, ժողովուրդների բարեկամության, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով դաստիարակելու նպատակով անցկացվել են մի շարք միջոցառումներ։ Այսպես. կազմակերպվել է «Երեք սերնդի ներկայացուցիչների» երեկո, որին մասնակցել են հին բոլշևիկներ, քաղաքացիական և Հայրենական մեծ պատերազմի վետերաններ։ Այդ երեկոն երիտասարդների վրա թողել է մեծ տպավորություն։ Յուրաքանչյուր միջոցառում ունենում է իր գեղարվեստական մասը։

Գործարանում ամենայն ուշադրությամբ հաշվի են առնվում երիտասարդության հետաքրքրասիրությունները, պահանջներն ու ցանկությունները։ Նրանց զգալի մասն ընդգրկված են ֆիզկուլտուրայի և սպորտի, գեղարվեստական ինքնագործունեության տարբեր տիպի խմբակներում, ուր նրանք դրսևորում են իրենց շնորհքն ու ընդունակությունները։

Սոցիալիստական օրինականության պահպանման, աշխատանքային կարգապահության բարձրացման և հակահասարակական երևույթների դեմ մղվող պայքարում իրենց առանձնահատուկ տեղն ու դերն ունեն գործարանային ընկերական դատարանն ու ժողովրդական դրուժինան, որոնց գործունեության ակտիվ մասնակցում են զգալի թվով լավագույն երիտասարդներ։

Մի քանի տարի առաջ գործարանի տերիտորիան գտնվում էր հակասանիտարական, անբարեկարգ վիճակում. կուսակցական կազմակերպության նախաձեռնությամբ, կոլեկտիվի ուժերով վերջին երկու տարում այն ծառապատվեց, կանաչապատվեց ու ծաղկազարդվեց, տնկվեցին վարդաթփեր։ Այսպիսով, գործարանի շրջապատը մաքրվեց և հաճելի տեսք ստացավ։ Այդ բոլոր աշխատանքներին կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ մեծ բերկրանքով մասնակցեց և արժանացավ կուսակցական կազմակերպության խրախուսանքին։

Կոլեկտիվի դաստիարակությունը մեծ ջանքեր է պահանջում։ Կուսակցական կազմակերպությունը դրա համար օգտագործում է բազմազան ձևեր և ձգտում հասնել այն բանին, որ նրա յուրաքանչյուր անդամ դառնա մեր հասարակության լիարժեք քաղաքացին։

Գործարանի կուսակցական կազմակերպությունն իր աշխատանքի հիմքում դրել է ՍՄԿԿ XXIII համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումի որոշումները։ Նա բոլոր միջոցները գործադրում է նոր հնգամյակի առաջադրանքներն ու գործարանի առջև դրված խնդիրները պատվով կատարելու համար։

Ս. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ
Ս. ՍԱՂԱԹԵԼՅԱՆ



## ՀԱՇՎԵՏՈՒ ՇՐՋԱՆՈՒՄ

Կուսկոմի հաշվետվությունն ավարտված է։ Մտքերի աշխույժ փոխանակությունից, կուսկոմի գործունեությանը բավարար գնահատական տալուց և, ապա, բանաձևի քննարկումից ու հաստատումից հետո ժողովն ընտրեց կուսկոմի նոր կազմ, ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող հանձնաժողովներ։

Ինչպես շատ հիմնարկ-ձեռնարկություններում, այնպես էլ մեզ մոտ՝ «Պոլիվինիլացետատ» գործարանում արտադրամասային և համագործարանային կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական կուսժողովները ցուցադրեցին կոմունիստների քաղաքական-գաղափարական աճը, աննախընթաց ակտիվությունը, նրանց մարտունակության բարձրացումը, անհանդուրժողականությունը թերությունների նկատմամբ և սրտացավ վերաբերմունքը կուսակցական և պետական գործերին։

Այդ ժողովներում ելույթ ունեցած 130 կոմունիստները բարձրացրել են արտադրանքի որակի, արտադրության մեջ նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրման, անվտանգության կանոնների ճշտորեն պահպանման, արտադրության կուլտուրայի բարձրացման, ինչպես նաև բանվորների շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքի ու նրանց կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման հարցերը, որոնք իրենց արտացոլումն են գտել ընդունված որոշումներում։

Կուսկոմիտեն և արտադրամասային կուսակցական կազմակերպությունները հաճախ քննարկման հարց են դարձրել ինքնարժեքի իջեցման, խնայողության ռեժիմի կիրառման, անարտադրողական ծախսերի կրճատման և արտադրական այլ կարևոր հարցեր։

Ուսանելի է, օրինակ, 1—9—10 արտադրամասի կուսակցական կազմակերպության աշխատանքի դրական փորձը (կուսբյուրոյի քարտուղար Հ. Հովհաննիսյան)։ Մի ժամանակ այդ արտադրամասի կոմունիստներին խիստ անհանգստացնում էին վերականգնման բաժնում քացախաթթվի կորուստները։ Կուսբյուրոյի նախաձեռնությամբ մանրամասն ուսումնասիրվեց դրանց պատճառները, և ապա հարցը դրվեց կուսակցական կազմակերպության ժողովի քննարկմանը։ Ինչպես հարցի ուսումնասիրության, այնպես էլ քննարկման ժամանակ պարզվեց, որ քացախաթթվի կորուստները հետևանք են այն բանի, որ եռարաններից գոլորշիացումների ժամանակ հեռանում է նաև մեծ քանակությամբ քացախաթթու։ Կուսժողովի որոշմամբ այստեղ կազմակերպվեցին արտադրության թափթփուկների կրկնակի վերամշակում, որը տարեկան լրա-

ցուցիչ տալիս է 140 տոննա քացախաթթու կամ 77 հազար ռուբլու պայմանական օգուտ։ Ինչպես միշտ, կուսկազմակերպության այդ որոշման կենսագործման համար լարված աշխատանք կատարեցին արտադրամասի կոմունիստներ՝ Հ. Հովհաննիսյանը, Հ. Մկրտչյանը, Հ. Բարսեղյանը, Ռ. Գրիգորյանը, Վ. Մովսիսյանը և ուրիշներ, որոնք գլխավորեցին քացախաթթվի կորուստների վերացման համար պայքարը։

Նման օրինակներ կարելի է բերել նաև 1—2, 1—5, 1—6—14, 1—8, 1—12 և ուրիշ արտադրամասերի կուսկազմակերպությունների աշխատանքի պրակտիկայից, որտեղ անվանի քիմիագործի համբավ են ձեռք բերել կոմունիստներ Ղ. Ասատրյանը, Ա. Փարսյանը, Լ. Քարամյանը, Ա. Նիկողոսյանը, Ա. Մաթևոսյանը, Մ. Ալեքյանը, Ս. Հովսեփյանը և ուրիշներ, որոնք այս տարի արժանացան կառավարական բարձր պարգևների։

Գործարանի կոմունիստների և ողջ կոլեկտիվի շրջանում օր-օրի մեծանում է հետաքրքրությունը քաղաքական և միջազգային դրության հարցերի նկատմամբ։ Ընդլայնվում է բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների մտահորիզոնը, աճում են նրանց հոգևոր պահանջները։ Շուրջ հազար քիմիագործներ միայն գործարանի գրադարանի ակտիվ ընթերցողներ են, գրադարան, որի ֆոնդում այժմ հաշվվում է ավելի քան 20 հազար կտոր գիրք։ Մեր կոլեկտիվի անդամները մեծ հրճվանքով ընդունեցին գործարանային բազմատիրաժ «Քիմիագործ» թերթի առաջին համարը, որը լույս ընծայվեց 1966 թվականի հոկտեմբերի 25-ին։

Գրքերը, ամսագրերը, թերթերը հաստատապես մտել են մեր կոլեկտիվի անդամների կենցաղի մեջ։ Չկա մի բանվոր կամ ինժեներա-տեխնիկական աշխատող, որ մեկ և մեկից ավելի պարբերականի բաժանորդագրված չլինի։

Կենսագործելով ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները, գործարանի կուսկոմը և արտադրամասային սկզբնական կուսակցական կազմակերպությունններն ավելի հմտորեն են զուգակցում կուսակցական գործունեությունը տնտեսականի հետ, զգալիորեն բարելավել են կուսակցական-կազմակերպական աշխատանքը, մոտիկից են զբաղվում կոմունիստների և բոլոր աշխատողների քաղաքական-գաղափարական դաստիարակության, կադրերի հետ տարվող աշխատանքի, կոլեկտիվի կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման հարցերով։

Անցած մեկ տարում գործարանի կուսակցական կազմակերպությունը աճել և դարձել է բազմահազարանոց արտադրական կոլեկտիվի ղեկավար և ուղղություն տվող ուժ։ Նա ՍՄԿԿ շարքերն է ընդունել 23 անդամ և 39 անդամության թեկնածու, որոնք հիմնականում արտադրության առաջավորներ են, ինժեներա-տեխնիկական լավագույն աշխատողներ։

Ներկայումս գործարանում հաշվվում է 359 կուսանդամ և 35 կուսթեկնածու, որոնք միավորված են 23 արտադրամասային սկզբնական կազմակերպություններում։ Կուսկոմն ամեն կերպ ձգտել է բարձրացնել սկզբնական կուսկազմակերպությունների դերը։ Սիստեմատիկաբար հրավիրվել են կուսկազմակերպությունների քարտուղարների, նրանց տեղակալների, կուսբյուրոների անդամների սեմինար-խորհրդակցություններ, անցկացրել փորձի փոխանակում և այլ հետաքրքրական միջոցառումներ։ Հատկապես ուսանելի էր Կիրովականի արհեստական մետաքսաթելերի գործարանում անցկացված երկու հանդիպումները, որոնց մասնակցել են արտադրամասային գրեթե բոլոր սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարները։



Ավելի հետաքրքրական են դարձել արտադրամասային և համագործարանային կուսակցական ժողովները, որոնցում քննարկվում են տնտեսության ղեկավարման, կուսակցական-կազմակերպական և գաղափարական-դաստիարակչական աշխատանքի կարևորագույն հարցերը։

Գաղափարական-դաստիարակչական աշխատանքում, ամենից առաջ, իր ուրույն տեղն ունի քաղաքական ուսուցումը։ Կուսկազմակերպությունը կազմ ու պատրաստ սկսեց քաղուսցանցի նոր ուսումնական տարին։ Կուսկոմի որոշմամբ ստեղծված են քաղաքատնտեսության ուսումնասիրման սեմինար, մարքսիզմ-լենինիզմի հիմունքների ուսումնասիրման 13 դպրոց և 3 տարրական քաղդպրոց։ Այդ սեմինարներում և դպրոցներում ընդգրկված են 216 կոմունիստ։ Բացի դրանից, գործարանի կոմունիստներից 20-ը սովորում են մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանում, 59-ը՝ բուհերում, տեխնիկումներում և բաներիտ դպրոցներում. 35 պրոպագանդիստներն էլ գործարանի կոմունիստներից են։ Նրանցից շատերը մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանի շրջանավարտներ են, աշխատում են որպես արտադրամասի և բաժինների պետեր, լավ գիտեն մարդկանց և արտադրությունը։

Պրոպագանդիստներից Լ. Նազարյանը, Ա. Խաչատրյանը, Ս. Տերյանը, Լ. Բաբաջանյանը, Ա. Աղասարյանը, Կ. Գրիգորյանը, Ա. Հայրապետյանը, Վ. Մովսիսյանը առանձնապես բարեխղճորեն են վերաբերվում իրենց պարտականությունների կատարմանը, պարապմունքներն անցկացնում են աշխույժ և հետաքրքրական, տեսական հարցերը կապում են կոլեկտիվի պրակտիկ խնդիրների լուծման հետ։ Կուսկոմը ամենօրյա ղեկավարություն է ցույց տալիս քաղուսուցման ցանցին, ստեղծել է պրոպագանդիստների մշտական գործող դպրոց։

Պրոպագանդիստներին, ինչպես նաև կուսակցության պատմությունն ու տեսությունն ուսումնասիրողներին նշանակալից օգնություն է ցույց տալիս հասարակական հիմունքներով գործող քաղլուսկաբինետը (վարիչ Մ. Միրաքյան)։ Կուսակցության պատմությունն ու տեսությունն ուսումնասիրողների համար կազմակերպվում են դասախոսություններ, կոնսուլտացիաներ և մեթոդական զրույցներ։

Գործարանում մեծ ժողովրդականություն է վայելում ամեն ամիս անցկացվող «Դասախոսի օրը»։ Այդ օրը Գիտելիք ընկերության քաղաքային կոմիտեի դասախոսներն ու ընկերության գործարանային խմբի անդամներն արտադրամասերում և բաժիններում հանդես են գալիս հետաքրքրական դասախոսություններով, զեկուցումներով և քաղաքական զրույցներով, պատասխանում բանվորների բազմապիսի հարցերին։

Սակայն, պրոպագանդիստական աշխատանքներում դեռևս լուրջ թերություններ կան. երբեմն դասախոսություններն անցնում են անհետաքրքիր, առանձին դասախոսներ տեսական դրույթները չեն կարողանում առնչել կյանքի կոնկրետ երևույթների հետ։ Դրա համար էլ բանվոր-բանվորուհիները երբեմն պասսիվ են մասնակցում նման միջոցառումներին։

Գործարանի կուսկազմակերպությունը կոնկրետ աշխատանք է տանում կադրերի պատրաստման, բանվորների մասնագիտացման և նրանց արտադրական որակավորման բարձրացման ուղղությամբ։ Անցած մեկ տարում,

օրինակ, երիտասարդ բանվորներից 7-ը ավարտել են բուհերը, 20-ը՝ տեխնիկումները և 6-ը՝ բանվորական դպրոցները։ Հանրակրթական և մասնագիտական ուսման գործում բանվորներին մշտական օգնություն և աջակցություն են ցույց տալիս գործարանի տեխնիկական բաժնի աշխատողներ՝ Վ. Հովհաննիսյանն ու Լ. Շահինյանը։

Գործարանի ադմինիստրացիան, կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները բանվորներին ամեն կերպ օգնում են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ստանալու։ Ներկայումս կոլեկտիվի անդամներից 268-ը սովորում են բուհերում և տեխնիկումներում, 52-ը՝ բանվորական դպրոցներում։

Կուսկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները հաշվետու ժամանակաշրջանում կոլեկտիվի ստեղծագործական ուժերն ուղղել են արտադրական պլանների կատարմանը և ձեռք են բերել տեխնիկա-տնտեսական աչքի ընկնող հաջողություններ։ Նրանք ժամանակին ընթացք են տվել կոլեկտիվի, առանձին բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների ստեղծագործական նախաձեռնություններին։ Դրա շնորհիվ, գործարանը կարողացել է 1965 թվականին համախառն արտադրանքի պլանը կատարել 102,6 տոկոսով, թողարկելով մի քանի մլն. ռուբլու արտապլանային արտադրանք։ 1966 թվականին, 1965-ի համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 7,9 տոկոսով։ Արտադրական առաջադրանքները հաջող են կատարում բոլոր արտադրամասերը։

Կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովներում հանդես եկած կոմունիստները կուսակցական, տնտեսական և արհմիութենական ղեկավարներին խիստ քննադատեցին անվտանգության տեխնիկայի և արտադրական հիգիենայի կանոնները խախտելու, բանվորների կուլտ-կենցաղային սպասարկումը վատ կազմակերպելու համար։

«Պոլիվինիլացետատ» գործարանն իրավամբ երկրի ժամանակակից առաջավոր ձեռնարկություններից է, բայց այստեղ մարդիկ երբեմն աշխատում են առանց պաշտպանական ակնոցների, չկան համապատասխան չափսերի արտահագուստներ, լրիվ մաքրված և կարգավորված չէ գործարանի տերիտորիան։ Այն ունի ճաշարանի հոյակապ շենք, հարմարավետ լողարան, կառուցվել և շահագործման է հանձնվել առաջնակարգ պիոներական ճամբարը, բայց դրանք (հատկապես ճաշարանը) միշտ չէ, որ կարողանում են բավարարել բանվորների հարաճուն պահանջմունքները։

Գործարանային կուսկազմակերպությունները պատշաճ գործունեություն չեն ծավալել բանվորուհիների շրջանում։ Թերևս այդ է պատճառը, որ հաշվետու շրջանում կուսշարքերն են ընդունվել ընդամենը երկու կին։

Մենք լուրջ հետևություն ենք անում հաշվետու-ընտրական կուսժողովներից։ Նորընտիր կուսկոմը կոնկրետ միջոցառումներ է մշակել կոմունիստների քննադատական դիտողությունների իրականացման և կուսկազմակերպությունների գործունեության հետագա բարելավման ուղղությամբ։

Ս. ՀՈՎԱՍԱՓՅԱՆ
«Պոլիվինիլացետատ» գործարանի
կուսկոմի քարտուղար

---

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԵՎ ՍՊԱՌՄԱՆ ՀԱՐԱԲԵՐԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

Ընդլայնված վերարտադրության փուլերը՝ արտադրությունը, բաշխումը, փոխանակությունն ու սպառումը դիալեկտիկական միասնություն են կազմում, որտեղ որոշիչն ու առաջատարը արտադրությունն է։ Հասարակական արտադրության տարբեր աստիճաններում փոփոխվում են արտադրության, բաշխման, փոխանակության ու սպառման փոխազդեցությունները։ Վերարտադրության պրոցեսի երկու փուլերի՝ արտադրության ու սպառման կապը միջնորդավորվելով բաշխման ու փոխանակության փուլերով, վերջին հաշվով, պայմանավորում է վերարտադրության բնույթը։

Սոցիալիզմի ժամանակ վերարտադրության բնույթը արմատապես տարբերվում է կապիտալիստականից ինչպես իր նպատակի, այնպես էլ առանձին փուլերի փոխազդեցությունների իմաստով։ Արտադրության ու սպառման հակամարտ հակասությունները, որոնք կապիտալիզմի շրջանում, առաջին հերթին, հանդես են գալիս արտադրության հնարավորությունների և բնակչության գնողունակ պահանջարկի սահմանափակության ձևով, խորթ են սոցիալիստական հասարակությանը։ Սոցիալիզմի ժամանակ մեծանում է սպառման դերը՝ արտադրությունն անշեղորեն խթանելու, արտադրության ու սպառման ներդաշնակ զարգացումն ապահովելու, ընդլայնված վերարտադրությունը բարձր տեմպերով ու արդյունավետ վարելու համար։ Արտադրության ու սպառման ոչ հակամարտ հակասություններն ուղեկցում են արտադրության առաջընթացին՝ դրա զարգացման տարբեր աստիճաններում և պլանավորման միջոցով հնարավոր է լինում վերացնել այդ հակասությունները։

Սոցիալիզմի պայմաններում, իհարկե, արտադրության ու սպառման ներդաշնակ զարգացման օբյեկտիվ հնարավորությունը չի բացառում դրանց միջև հակասությունների առկայությունը։ Ընդլայնված վերարտադրության արմատական փոփոխության հետ միաժամանակ մեծանում է սոցիալիստական արտադրության ու սպառման հակասության բացահայտման և հաղթահարման նշանակությունը։ Կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում հասարակական արտադրության մակարդակի բարձրացման հետ միասին, երբ զգալիորեն մեծանում են նյութական բարիքների արտադրության մասշտաբները, պահանջարկի ու առաջարկի հարաբերակցության պլանային կարգավորման նշանակությունն ավելի է մեծանում։ Առավել ակնհայտ է դառնում այն օրինաչափությունը ըստ որի արտադրությունը առաջացնում է համապատասխան պահանջարկ։ Սակայն սոցիալիզմի փուլում արտադրանքի նոր տեսակների սպառ-

*ման ոլորտն ու չափերն ավելի արագ են աճում, քան նրանց արտադրությունը։ Զարգացող հասարակության պահանջմունքների աճն անընդհատ պրոցես է, այնպես ինչպես արտադրության ու տեխնիկայի աճը։ Քանի որ յուրաքանչյուր բավարարված պահանջմունք, ինչպես և նրա բավարարման համար ստեղծված պայմանները ծնում են նոր պահանջմունքներ, ապա բնակչության կենսամակարդակի անընդհատ բարձրացման պրոբլեմը օրակարգի մեջ է մնում սոցիալիստական շինարարության բոլոր էտապներում։ Այն սոցիալիստական արտադրության անընդհատ վերելքի նյութական հիմքերից է, նրա առաջընթացի կարևոր պայմանը։*

*Արտադրության ու սպառման փոխհարաբերությունը մեկնաբանելու համար անհրաժեշտ է տարբերել արտադրական ու անձնական սպառումը։ Արտադրական սպառումը կատարվում է, վերջին հաշվով, անձնական սպառման համար նյութական բարիքներ արտադրելու նպատակով։ Այս առումով սպառումը, առաջին հերթին, հասարակության անդամների անձնական սպառում է, իսկ արտադրության ու սպառման հարաբերակցությունը՝ արտադրության և անձնական սպառման հարաբերակցություն։ Սակայն, մեր գրականության մեջ սպառման բովանդակության և դրա ու արտադրության հարաբերակցության հարցերը քննարկելիս անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում արտադրական ու անձնական սպառման հարաբերակցությանը, որը, մեր կարծիքով, կարևոր նշանակություն ունի և՛ արտադրության ու սպառման դիալեկտիկական կապի պարզաբանման և՛ հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման տեսակետից։ Վերարտադրության մարքսիստական տեսությունը ո՛չ միայն սպառման առարկաների իրացումն է բացատրում, այլև արտադրության միջոցների իրացումն ինչպես առաջին ստորաբաժանման ներսում, այնպես էլ առաջին և երկրորդ ստորաբաժանումների միջև։*

*Ընդլայնված վերարտադրության ընթացքում անընդհատ մեծանում են արտադրական սպառման մասշտաբներն ու նշանակությունը։ Այս տեսակետից արտադրական սպառման ժամանակ աշխատանքի միջոցների ու առարկաների ռացիոնալ օգտագործումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, արտադրության ճյուղերի օպտիմալ կապերի ու համամասնությունների սահմանումը հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր պայման են։ Որքան արտադրական սպառումը արդյունավետ լինի, այնքան հասարակությունն ավելի շատ սպառման առարկաներ կարտադրի բնակչության կարիքները բավարարելու համար։ Միաժամանակ, վերարտադրության ընթացքում ստացված վերջնական արդյունքի մեջ կավելանա սպառման առարկաների արտադրության բաժինը, այսինքն՝ ընդլայնված վերարտադրության բարձր տեմպերը կիրականացվեն հասարակության պահանջմունքների առավել բավարարմանը զուգընթաց։ Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման նոր հնգամյա պլանի դիրեկտիվներում արտադրանքի միավորի ծախսումների՝ հումքի, վառելիքի, նյութերի և աշխատանքային ծախսումների կրճատում է նախատեսվում։ Արդյունաբերության մեջ վառելիքի ծախսման նորմաները կրճատվելու են առնվազն 8—10, իսկ մեքենաշինության ու մետաղամշակման մեջ սև մետաղների գլանվածքի տեսակարար ծախսումները՝ 20—25 տոկոսով։ Միայն 1970 թվականին կխնայվի 8 միլիոն տոննայից ավելի սև մետաղների գլանվածք, 85 միլիոն տոննա պայմանական վառելիք, 40—50 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա և այլն։*



*Միջճյուղային կապերի ուսումնասիրմամբ արտադրանքի թողարկման վրա կատարվող ծախսումների նորմատիվների սահմանումը զգալիորեն կնպաստի նյութական ու աշխատանքային ծախսումների խնայողաբար ու ռացիոնալ օգտագործմանը, արտադրական սպառման, հետևապես և արտադրության արդյունավետության բարձրացմանը։*

*Արտադրական սպառման արդյունավետության բարձրացումը ո՛չ միայն արտադրության միջոցների, այլև սպառման առարկաների արտադրության մեջ, վերջին հաշվով, կբարձրացնի հասարակական արտադրության արդյունավետությունը, կարագացնան սպառման առարկաների արտադրության աճի տեմպերը, կփոփոխվի ազգային եկամտի կուտակվող ու սպառվող մասի հարաբերակցությունը հօգուտ վերջինի, ավելի մեծ հնարավորություններ կընձեռվեն բնակչության կենսամակարդակը էլ ավելի բարձրացնելու համար։*

*Արտադրության ու սպառման հարաբերակցությունն ուսումնասիրելիս անհրաժեշտ է նկատի ունենալ, որ, ի վերջո, սպառման շրջանակներով են որոշվում արտադրության մասշտաբները։ Դրանց մեծացումը արտադրական սպառման հաշվին միայն ժամանակավոր բնույթ կարող է ունենալ և առաջացնել անցանկալի հետևանքներ (կարող է իջնել հասարակական արտադրության արդյունավետությունը, խախտվել արտադրության միջոցների ու սպառման առարկաների արտադրության, ազգային եկամտի կուտակման ու սպառման ֆոնդերի հարաբերակցությունը և, որոշ ժամանակ անց, արտադրության զարգացումը կկաշկանդվի անձնական սպառման սահմանափակ շրջանակներով։ Արտադրության միջոցների արտադրության աճը սպառման առարկաների արտադրության վերընթաց աճ է ապահովում։ Միաժամանակ սպառման առարկաների արտադրությունից ու բնակչության սպառումից անկախ արտադրության միջոցների արտադրությունը զարգանալ չի կարող։ Վ. Ի. Լենինը նշել է, որ արտադրության միջոցների արտադրությունը չի կարող զարգանալ «...սպառման առարկաների պատրաստումից* բոլորովին անկախ և առանց նրա հետ որևէ կապակցություն ունենալու» *(Երկեր, հատ. 4, էջ 63)։ Դրա համար էլ մեր երկրում ժողովրդական տնտեսության զարգացման պլանները և, հատկապես նոր հնգամյա պլանի առաջադրանքները, սովետական հասարակության աճող պահանջմունքներից ելնելով մշակվել են ըստ արտադրության ընդլայնման ռեալ հնարավորությունների։*

*Երբ արտադրողական ուժերը զարգացման ցածր մակարդակի վրա են գտնվում և ինդուստրացումն անհրաժեշտություն է, ազգային եկամտի համեմատաբար մեծ մասը ընդլայնված վերարտադրության նպատակներին ուղղելն արդարացվում է։ Դա հասարակական արտադրության մակարդակի աճի և, վերջին հաշվով, ժողովրդի կենսամակարդակի բարձրացման անհրաժեշտ նախադրյալն է։ Արտադրության զարգացման որոշակի բարձր մակարդակ ձեռք բերելուց հետո սպառման համեմատաբար ցածր մակարդակի պատճառով երկրում զգալիորեն բարդանում է էկոնոմիկայի հետագա աճի պրոբլեմը։ Քանի որ համեմատաբար երկար ժամանակ խզում է առաջանում անձնական սպառման հնարավորության ու արտադրական կարողությունների միջև, ընդլայնված վերարտադրությունը բնակչության նյութական բարեկեցության դանդաղ աճի հետևանքով սկսում է կաշկանդվել։ Բնակչության համար նյութական բարիքների արտադրության արագ տեմպերով աճը փոխարկվում է ժողովրդական տնտեսության զարգացման ամենագործուն միջոցի, իսկ սպառման*

ռացիոնալ նորմաների հիման վրա բնակչության պահանջմունքների հաշվառումը հանդես է գալիս որպես զարգացած սոցիալիզմի երկրի արտադրության մասշտաբների, տեմպերի ու համամասնությունների պլանավորման կարևոր պայման։ Ահա թե ինչու ՍՄԿԿ XXIII համագումարում ընկ. Ա. Ն. Կոսիգինը իր զեկուցման մեջ նշեց, որ սպառման առարկաների արտադրության աճի արագացումը մեր երկրի էկոնոմիկայի հետագա հաջող զարգացման անհրաժեշտ նախադրյալն է։

Արտադրության զարգացման տարբեր աստիճաններում սպառման, ինչպես և արտադրական ու անձնական սպառման, փոխազդեցությունն ու ներգործությունը փոխվում են։ Երբ արտադրությունը գտնվում է ցածր մակարդակի վրա, սպառման ակտիվ ներգործության ազդեցությունը համեմատաբար թույլ է արտահայտվում։ Արտադրության մակարդակի ու թողարկվող արտադրանքի մասշտաբների մեծացմանը զուգընթաց ավելի ակնհայտորեն է դրսևորվում արտադրության նկատմամբ սպառման հակադարձ ազդեցության կարգավորիչ նշանակությունը։ Այդ փոխհարաբերությունների առանձնահատկությունների բացահայտումն ու մեկնաբանումը հատուկ քննարկման նյութ է։ Նշենք միայն, որ արտադրության ու էկոնոմիկայի զարգացման ժամանակակից պայմաններում զգալիորեն մեծացել է անձնական սպառման դերն ու ազդեցությունը արտադրության ու սպառման հարաբերակցության, հետևապես և վերարտադրության ամբողջ պրոցեսի վրա։ Արտադրության զարգացման ցուցանիշները սահմանվում են ելնելով հասարակության պահանջմունքներից։ Սակայն, վերարտադրության պրոցեսի շղթայի (արտադրության, բաշխման, փոխանակության ու սպառման) օղակների հակադարձ կապը դեռևս բավականաչափ ճկուն չէ արտադրության ու սպառման հակասությունը ժամանակին վերացնելու համար։ Այդ է պատճառը, որ արտադրանքի ասորտիմենտն ու որակը հաճախ չի համապատասխանում հասարակության պահանջմունքներին։ Այնուհետև, եթե արտադրական սպառումը հնարավոր է նախապես անմիջականորեն պլանավորել, նկատի ունենալով ձեռնարկությունների արտադրական ծրագիրը, ապա բնակչության անձնական սպառման առարկաների պահանջարկի հաշվարկումը բոլորովին այլ բնույթ ունի։ Արտադրության ծավալի ընդլայնման պայմաններում անձնական սպառման և արտադրության հակասությունը դրսևորվում է անմիջականորեն, տեսանելի ձևով՝ ապրանքային պաշարների գերնորմատիվային կուտակման և լայն սպառման ապրանքների իրացման բազմաթիվ դժվարություններով։

Համեմատաբար ավելի բարդ ու թաքնված է հանդես գալիս արտադրության միջոցների արտադրության և դրանց սպառման փոխհարաբերությունը։ Պլանային սոցիալիստական տնտեսության պայմաններում արտադրության մեջ օգտագործվող մեքենաները, սարքավորումները, հումքն ու նյութերը միշտ չէ, որ համապատասխանում են տեխնիկայի ու արտադրության ժամանակակից պահանջներին։ Սակայն, քանի որ դրանց բաշխումը կատարվում է կենտրոնացված պլանային կարգով, ապա որոշ իմաստով թուլանում է արտադրական սպառման հակադարձ ազդեցության դրական նշանակությունը արտադրության վրա։ Այստեղ տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունը (կենտրոնացված կարգով արտադրության միջոցների արտադրության ու իրացման պլանավորումը) կարող է փոխարկվել իր հակադրության և կաշկանդել նոր տեխնիկայի ներդրման ու կատարելագործման առաջընթացը։ Դրա



համար էլ սոցիալիզմի փուլում ավելի է մեծանում գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները կարճ ժամանակամիջոցում արտադրության մեջ արմատավորելու անհրաժեշտությունը։ ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի (1965 թ.) որոշումներն ուղղված են արտադրության միջոցների արտադրության վրա սպառման ազդեցությունն ակտիվացնելուն, ձեռնարկությունների կողմից բարձր արտադրողական և որակյալ սարքավորումների արտադրության համար նրանց նյութական շահագրգռվածությունը բարձրացնելուն։ Նյութատեխնիկական մատակարարման ասպարեզում ավելի լայն զարգացում կստանան արտադրող և սպառող ձեռնարկությունների անմիջական կապերը։ Սպառման շրջանների մատակարարման-իրացման տերիտորիալ բազաների միջոցով արտադրության միջոցների մեծածախ առևտրի կազմակերպումը, սպառող կազմակերպությունների և ձեռնարկությունների իրավունքը՝ հրաժարվելու ցածր տեխնիկա-տնտեսական ցուցանիշներ ունեցող սարքավորումներից ու նյութերից, արտադրությանը կստիպի վերակառուցվելու՝ բարձրորակ արտադրանք թողարկելու համար։ Սպառման միջոցով արտադրությունը բարելավելու նպատակին են ուղղված արդյունաբերական արտադրանքի մեծածախ գները կատարելագործելու, արտադրական ֆոնդերը վճարովի դարձնելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումները։

Արտադրության ու սպառման սերտ կապին մեծ չափով կնպաստի նաև ձեռնարկության համախառն արտադրանքի ցուցանիշը իրացված արտադրանքի ցուցանիշով փոխարինելը։ Իրացված արտադրանքի ցուցանիշը ցույց է տալիս, որ ձեռնարկությունում թողարկված արտադրանքը հասարակական ճանաչում է ստացել, որ այն համապատասխանում է վերարտադրության պրոցեսի վերջնակետի՝ սպառման պահանջներին (լինի այն հասարակական, թե անձնական)։ Այդ ցուցանիշը ուղղված է հասարակական արտադրության արդյունավետությունը բարձրացնելու կարևոր խնդրի իրականացմանը, արտադրության ու սպառման միջև անմիջական ու ռացիոնալ կապ ստեղծելու միջոցով։ Այսպիսով, արտադրական սպառման ուսումնասիրությունը կարևոր նշանակություն ունի միջճյուղային կապերն ու հասարակական արտադրության ծախսումների նորմատիվները կատարելագործելու, արտադրության ճյուղերի զարգացման տեմպերն ու համամասնությունները բարելավելու միջոցով վերարտադրության պրոցեսի արդյունավետությունը բարձրացնելու տեսակետից։

Սակայն, վերջին հաշվով, սպառումը անձնական սպառման համար թողարկված նյութական բարիքների սպառում է, քանի որ արտադրական սպառման և ընդհանրապես արտադրության նպատակը սպառումն է, որի ժամանակ արդյունքը դուրս է գալիս արտադրության, բաշխման ու փոխանակության ոլորտից և փոխարկվում առանձին պահանջմունքներ բավարարող առարկայի։ Արտադրությունը վերարտադրության պրոցեսի ելակետն է, իսկ սպառումը՝ վերջնակետը, որի ժամանակ ավարտվում է արդյունքի հասարակական շարժումը։ Միաժամանակ, առանց սպառման արտադրությունը անիմաստ կլիներ, քանի որ արտադրությունն առաջացնելով սպառում, իր հերթին վերարտադրում է պահանջմունքներ արտադրությունը խթանելու համար (տե՛ս К. Маркс, Ф. Энгельс, соч., т. 12. էջ 717 — 718)։

Սոցիալիզմի ժամանակ ևս արտադրության ու սպառման հարաբերակցությունը հիմնականում դրսևորվում է առաջարկի ու պահանջարկի միջոցով։ Առաջարկը արտադրության, պահանջարկը՝ սպառման արտահայտիչն է։ Առա-

ջարկն ու պահանջարկը հասարակական հարաբերություններ են արտահայտում և ապրանքային փոխանակության ընթացքում ցույց են տալիս արտադրության ու սպառման փոխհարաբերությունը։ Սոցիալիզմի փուլում առաջարկի ու պահանջարկի փոխհարաբերության տարբերիչ գիծը նրա պլանային կարգավորումն է՝ սպառման գիտականորեն հիմնավորված ռացիոնալ նորմաների պլանավորման հիման վրա։ Բնակչության պահանջարկը պահանջմունքների դրսևորման ձև է։ Պահանջմունքների շրջանակները շատ ավելի լայն են, քան պահանջարկինը։ Գնողունակ պահանջարկի աճը կոչված է ավելի ու ավելի բավարարելու բնակչության պահանջմունքները, սակայն վերջինիս առաջանցիկ աճը այդ դիալեկտիկական միասնության օրինաչափությունն է։ Զարգացող հասարակության պահանջմունքների աճի նկատմամբ արտադրության առաջանցիկ աճի ապահովումը պրակտիկորեն անհնար է։ Նախ, այն պատճառով, որ արտադրությունը անընդհատ նորանոր պահանջմունքներ է ծնում, որոնք կարող են բավարարվել աստիճանաբար, բացի այդ, պահանջմունքների հարաբերական ինքնուրույնությունը ևս նպաստում է նրա առաջանցիկ աճին։

Մեր երկրի զարգացման արդի էտապում նոր ձևով է դրվում արտադրության ու բնակչության սպառման հարաբերակցության պլանավորման հարցը։ Այժմ խնդիրը ո՛չ միայն արտադրությունը բնակչության պահանջարկին համապատասխան զարգացնելն է, այլ արտադրության մեջ պահանջմունքների հիման վրա համապատասխան փոփոխություններ կատարելը։

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965) պլենումի որոշումներում նշված է, որ «... տնտեսական ու պլանային օրգաններից պահանջվում է... փոփոխվող տնտեսական իրադրությունը ժամանակին հաշվի առնելու, ռեսուրսներով մանևրելու, **արտադրությունը բնակչության աճած պահանջմունքների ու պահանջարկի հետ շաղկապելու... եղանակները** գտնելու հմտություն» (ընդգծումը մերն է — Մ. Շ.)։

Բնակչության աճած պահանջմունքները և արտադրության հարաբերակցությունը ճիշտ պլանավորելու համար անհրաժեշտ է, առաջին հերթին, հաշվի առնել պահանջարկի (գնողունակ) աճը, որովհետև պահանջմունքները հիմնականում դրսևորվում են պահանջարկի միջոցով։ Առաջարկի ու պահանջարկի հարաբերակցությունը պայմանավորված է սոցիալիստական վերարտադրության բնույթով։ Պահանջարկը բնորոշող գործոններից են՝ ազգային եկամտի աճը, նրա բաշխումը կուտակման ու սպառման ֆոնդի, կուտակման ֆոնդի բաշխումը ըստ ժողովրդական տնտեսության ճյուղերի, աշխատավարձի ֆոնդի բաշխումը բնակչության խմբերի միջև, դրամական և բնաձևով վարձատրության հարաբերակցությունը, հասարակական սպառման ֆոնդերը և այլն։ Վերոհիշյալ գործոնները պայմանավորում են ո՛չ միայն պահանջարկի մեծությունը, այլև նրա կառուցվածքը։

Բացի այդ, գները կարևոր նշանակություն ունեն բաշխմամբ առաջարկի ու պահանջարկի հարաբերակցությունը սահմանելու համար։ Միաժամանակ առաջարկն ու պահանջարկը գնագոյացման գործոն են։ Պլանային գնագոյացմամբ առաջարկն ու պահանջարկը կարելի է կարգավորել, սակայն դրանց հարաբերակցությունը գների միջոցով սահմանելը ճիշտ չէր լինի։ Պրակտիկայում կարող է իրացման համար ապրանքների մասսայի գների գումարը և գնողունակ պահանջարկը համապատասխանեն, սակայն առանձին ապրանքների առաջարկի ու պահանջարկի միջև անհամամասնություն ստեղծվի։ Բացի



այդ, որը և գլխավորն է, գները նախ՝ պետք է նպաստեն արտադրության մեջ համապատասխան փոփոխությունների միջոցով առաջարկի ու պահանջարկի հարաբերակցությունը կարգավորելուն։ Եթե որոշ ապրանքների առաջարկն ավելին է պահանջարկից, ապա պլանային կարգով գների իջեցումը հասարակության մասշտաբով արտադրության վրա կատարված ծախսումների մի մասը ծածկելու միջոց է միայն։ Որոշ ապրանքներ պահանջարկից ավելի արտադրելու հետևանքով կուտակվում են իրացման ոլորտում և անհրաժեշտություն է առաջանում իջեցնել դրանց գները։ Օրինակ, մեր երկրում ժամացույցների արտադրության աճին զուգընթաց սկսվել է կրճատվել դրանց սպառումը։ 1964 թվականին 3,9 միլիոն ժամացույց ավելի է արտադրվել, քան 1958 թվականին։ Սակայն 1960 թվականի համեմատությամբ, 1964 թվականին պակաս վաճառվեց մոտավորապես 3,2 միլիոն ժամացույց։ Այդ է պատճառը, որ ժամացույցների որոշ տեսակների գները իջեցվեցին։

Իրացման դժվարությունները մեղմելու նպատակով գների իջեցումը որոշ ապրանքների արտադրության ու սպառման միջև ստեղծված անհամամասնության վկայություն է։ Ճշգրիտ պլանավորման միջոցով անհրաժեշտ է կանխել առանձին ապրանքների արտադրության ու սպառման, առաջարկի ու պահանջարկի անհամապատասխանությունը, խուսափելով գների հարկադրված իջեցումից։ 1965 թվականի սկզբներին մանրածախ առևտրում գերնորմատիվային պաշարները կազմում էին 3 միլիարդ ռուբլի։ Իհարկե, չիրացվող ապրանքների գների իջեցումը հասարակության ծախսումների մի մասը փոխհատուցելու և արտադրության ու սպառման հարաբերակցությունը բարելավելու միակ ճիշտ քաղաքականությունն է։ Սակայն չպետք է արտադրել այնքան և այնպիսի որակով (արտադրության և սպառման, առաջարկի ու պահանջարկի հարաբերակցությունը պայմանավորված է նաև թողարկվող արտադրանքի որակով, որն այդ հարաբերակցությունների առաջացման կարևոր ցուցանիշներից մեկն է), որ իրացման ոլորտում ստեղծված դժվարություններից հետո միայն զգացվի դրանց գների վերանայման անհրաժեշտությունը։ Կ. Մարքսը նշում է, որ կապիտալիզմի ժամանակ պահանջարկից ավելի ապրանքների արտադրության հետևանքով դրանք վաճառվում են շուկայական գնից ցածր, որ նշանակում է՝ «...հասարակական բանվորական ժամանակի մի մասը վատնվել է, և այս դեպքում ապրանքային մասսան շուկայում հասարակական աշխատանքի մի շատ ավելի փոքր քանակ է ներկայացնում, քան իրապես պարունակվում է այդ մասսայի մեջ։ (Միմիայն այնտեղ, որտեղ արտադրությունը հասարական իրական կանխորոշող վերահսկողության է ենթակա (սոցիալիզմի ժամանակ — Մ. Շ.), հասարակությունը կապ է ստեղծում որոշ արդյունքների արտադրության վրա կիրառվող հասարակական բանվորական ժամանակի ծավալի ու այս արդյունքներով բավարարելի հասարակական պահանջմունքի ծավալի միջև» (տե՛ս Կ. Մարքս, Կապիտալ, հատ. III, մաս I, էջ 168, Հայպետհրատ, 1947)։

Մեր կարծիքով, սոցիալիզմի ժամանակ ևս առանձին ապրանքների պահանջարկից ավելի թողարկումը և դրանց իրացումն ապահովելու համար գների անխուսափելի իջեցումը հասարակության բանվորական ժամանակի ծախսումների մի մասի կորուստ է նշանակում։ Հասարակությունը հնարավորություն ունի պլանային կարգով միջոցներն ու աշխատանքը այնպես բաշխել արտադրության ճյուղերի միջև, որ չառաջանա ապրանքների որոշ խմբերի ավելցուկ

պահանջարկի նկատմամբ՝ մի այլ խումբ ապրանքների արտադրությունը պահանջարկից ետ մնալու պայմաններում: Այժմ, երբ խնդիր է դրված ձեռնարկությունները փոխադրել լրիվ տնտհաշվարկի և դրանց տնտեսական գործունեությունը գնահատել իրացված արտադրանքի ու շահույթի ցուցանիշով, արտադրության ու սպառման հարաբերակցությունը ճիշտ պլանավորելու միջոցով արտադրության արդյունավետությունը բարձրացնելու գործում ավելի է մեծացել պլանավորող ու տնտեսական օրգանների դերը:

Սոցիալիզմի փուլում գների իջեցման մայրուղին ապրանքների արտադրության հասարակական ծախսումների կրճատումն է:

Արտադրության ու սպառման, առաջարկի ու պահանջմունքների և պահանջարկի հարաբերակցության ուսումնասիրությունը մեզ ընդհուպ մոտեցնում է սոցիալիզմի ժամանակ արտադրության ու բնակչության գնողունակ պահանջարկի փոխհարաբերության հարցին:

Երկար տարիներ տիրապետում էր այն տեսակետը, թե սոցիալիզմի փուլում բնակչության գնողունակ պահանջարկը պետք է առաջ անցնի արտադրությունից: Այդպիսի հարաբերակցությունը համարվում էր սոցիալիստական արտադրության անընդհատ վերելքի անհրաժեշտ պայման և բնակչության բարեկեցության բարձրացման վկայություն: Իրականում տեսության մեջ այդ դրույթը կոչված էր արդարացնելու արտադրության ու բնակչության պահանջարկի ցանկացած ճեղքվածքն ու ապրանքների մշտական պակասը պրակտիկայում: Ստացվում էր այնպես, որ ապրանքների պակասն ու կարիքը ներկայացվում էր որպես սոցիալիզմի առավելություն և բնակչության համար բարիք: Վերոհիշյալ տեսակետը արդարացիորեն քննադատվեց մեր տնտեսագետների կողմից և առաջ քաշվեց տրամագծորեն հակադիր մի այլ տեսական դրույթ, որի համաձայն արտադրությունը պետք է առաջ անցնի բնակչության գնողունակ պահանջարկից: Այդ տեսակետը վերջին տարիներին տիրապետող է դարձել տնտեսագիտական գրականության մեջ: Այն հիմնավորվում է նրանով, որ արտադրությունը առաջնային է ինչպես սպառման, այնպես էլ պահանջարկի նկատմամբ, և բնակչության կենսամակարդակը բարձրացնելու համար նյութական բարիքների առատությունը ենթադրում է դրանց արտադրության արագ աճ պահանջարկի համեմատությամբ: Առանձին հեղինակներ գնողունակ պահանջարկի նկատմամբ արտադրության առաջանցիկ աճը համարում են աշխատավորների բարեկեցության բարձրացման անհրաժեշտ պայման և կասկած չհարուցող ճշմարտություն: «Ինչպես հայտնի է, աշխատավորների իսկական բարեկեցությունը ապահովելու համար արտադրությունը պետք է առաջ անցնի բնակչության գնողունակ պահանջարկի աճից» (А. И. Струев, Торговля и спрос, изд. «Знание», 1965, էջ 11) կամ «ոչ ոքի մեջ կասկած չի հարուցում նման դրույթի ճշմարտացիությունը» (Учет соотношения спроса и продолжения в ценнообразовании, изд. АН СССР, 1964, էջ 94): «Միայն արտադրության առաջանցիկ աճի ժամանակ հնարավոր կլինի ապահովել ժողովրդի կենսամակարդակի ավելի լրիվ բարձրացում» (Курс политической экономии, под редакцией Н. А. Цаголова 1963, т. 2, էջ 185 և այլն):

Պահանջարկի նկատմամբ արտադրության առաջանցիկ աճի կողմնակիցները գտնում են, որ նման հարաբերակցությունն անհրաժեշտություն է նաև հասարակական ռեզերվների ավելացման և բնակչությանը անխափան մատակարարելու նպատակով խանութներում ու պահեստներում սպառման առար-



կաների անհրաժեշտ պաշարներ ստեղծելու համար: Այդ պատճառով էլ բնակչության պահանջարկի նկատմամբ արտադրության առաջանցիկ աճը նույնիսկ համարվում է սոցիալիզմի օրինաչափություն (տե՛ս նույն տեղը, էջ 254): Հասարակական ռեզերվների ու ապրանքային պաշարների գոյությունը ընդլայնված վերարտադրության իրականացման կարևոր պայման է: Հետևապես արտադրության ու պանհանջարկի հարաբերակցությունն իր մեջ արդեն ներառնում է ապրանքային ռեզերվների ու պաշարների առկայությունը: Այդ նշանակում է, որ պահանջարկի նկատմամբ արտադրության առաջանցիկ աճը ռեզերվների ու պաշարների ավելացման անհրաժեշտությամբ բացատրելը հիմնավորված չէ: Ընդհանրապես գնողունակ պահանջարկի նկատմամբ արտադրության առաջանցիկ աճի դրույթը տեսականորեն հիմնավորված չէ, իսկ պրակտիկորեն վնասակար է այնպես, ինչպես արտադրության նկատմամբ գնողունակ պահանջարկի առաջանցիկ աճի դրույթը:

Եթե նկատի ունենանք սոցիալիստական հասարակության անդամների պահանջմունքների աճը, որը բավարարվում է հիմնականում պահանջարկով, ապա պրակտիկորեն հնարավոր չէ դրա նկատմամբ արտադրության առաջանցիկ աճ: Այստեղ նկատի չի առնվում առանձին ապրանքների, օրինակ, կարի մեքենաների, ժամացույցների, պահածոների առանձին տեսակների, արտադրության գերազանցումը դրանց պահանջարկից: Դա, նախ վկայություն է այն բանի, որ ճիշտ չի հաշվի առնվել այդ ապրանքների պահանջարկը և անհամամասնություն է ստեղծվել դրանց արտադրության ու պահանջարկի միջև: Բացի այդ, շրջանառության ոլորտում որոշ ապրանքների գերնորմատիվային պաշարների ավելացումը և իրացման դժվարությունները ահազանգ են այն բանի, որ դրանց որակը բարելավելու հետ միասին անհրաժեշտ է հասարակության տրամադրության տակ եղած արտադրության միջոցներն ու աշխատանքը վերաբաշխել հօգուտ ավելի մեծ պահանջարկ ունեցող ապրանքների արտադրության: Այսինքն՝ անհրաժեշտ համամասնություն սահմանել արտադրության ու սպառման միջև գիտականորեն հիմնավորված պլանավորմամբ:

Բնակչության գնողունակ պահանջարկի նկատմամբ արտադրության առավել աճը կարող է տեղի ունենալ ինչպես արտադրության բարձր տեմպերի, այնպես էլ գնողունակ պահանջարկի սահմանափակ աճի հետևանքով: Մեր երկրի զարգացման արդի էտապում ռեալ հնարավորություններ են ընձեռվել հասարակության անդամների պահանջմունքներն է՛լ ավելի բարելավելու համար: Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման նպատակին ուղղված բոլոր միջոցառումները կոչված են ապահովելու բնակչության գնողունակ պահանջարկի անշեղ աճը, որը կարելի է ապահովել արտադրության համապատասխան տեմպերի աճով: Այսպիսով, հավասարապես ճիշտ չեն ինչպես արտադրության նկատմամբ գնողունակ պահանջարկի առաջանցիկ աճի, այնպես էլ գնողունակ պահանջարկի նկատմամբ արտադրության առավել աճի տեսակետները: Պրակտիկայում առաջինը ապրանքային պակասը, երկրորդը՝ որոշ ապրանքների արտադրության ու սպառման համամասնության ոչ ճիշտ պլանավորումը արդարացնելու միջոց է: Մարքսիստական վերարտադրության տեսությունից բխում է, որ սոցիալիզմի ժամանակ անհրաժեշտ համամասնություն պետք է ստեղծվի արտադրության և սպառման, արտադրության ու բնակչության գնողունակ պահանջարկի միջև: Արտադրության ու սպառման դիալեկտիկական կապի ուսումնասիրությունը ոչ մի հիմք չի տալիս

արտադրության ու գնողունակ պահանջարկի հարաբերակցությունը դրանցից որևէ մեկի առաջանցիկ աճով պայմանավորելը։ Հարցադրումը ճիշտ կլիներ, երբ նկատի առնվեր արտադրության ու պահանջարկի համապատասխանությունը։ Այս տեսակետից ուշագրավ է ՍՄԿԿ ծրագրի հետևյալ դրույթը, ըստ որի՝ «ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը պետք է լրիվին բավարարի այդ ապրանքների նկատմամբ աճող պահանջարկը և համապատասխանի դրա փոփոխություններին» (ՍՄԿԿ ծրագիր, Հայպետհրատ, 1961, էջ 111)։ ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965) պլենումի որոշումներում նշվում է արտադրությունը բնակչության աճած պահանջմունքների ու պահանջարկի հետ շաղկապելու անհրաժեշտությունը։ Իսկ ՍՄԿԿ XXIII համագումարում ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների հնգամյա պլանի դիրեկտիվների վերաբերյալ տված զեկուցման մեջ Ա. Ն. Կոսիգինը ասաց. մեր խնդիրն է՝ ապրանքային ռեսուրսները լրիվ հաշվեկշռել բնակչության գնման պահանջարկի հետ։

Այսպիսով, արտադրության ու բնակչության պահանջարկի ճիշտ հարաբերությունը, դրանց համապատասխանությունը, շաղկապված լինելն ու բալանսավորվածությունն է և ոչ արտադրության առաջանցիկ աճը պահանջարկից։

Շ. ՄԱՐԳԱՐՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու

## ԿԱՊԻՏԱԼ ՆԵՐԴՐՈՒՄՆԵՐԻ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ ԵՎ ՖՈՆԴԱՍՏԱՑՔԸ ԼՈՌԻ-ՓԱՄԲԱԿԻ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Ներկայումս, ինչպես նշեց ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումը, մեր կարևոր խնդիրներից մեկը կապիտալ ներդրումների և արտադրական հիմնական ֆոնդերի օգտագործման աստիճանի բարձրացումն է, որպես ֆոնդաստացքի (фондоотдача) չափերի ավելացման խթան։

Գյուղատնտեսության բնագավառում նման կարևոր խնդրի լուծումը, առաջին հերթին, պայմանավորված է հողատարածությունների և արտադրական կարողությունների ռացիոնալ համամասնությունից ու դրանց հարաբերակցությունից։ Այն ճիշտ նախագծելու համար անհրաժեշտ է ունենալ հիմնավորված նորմատիվներ։ Ելնելով տնտեսությունների արտադրական ուղղությունից, մասնավորապես պետք է մշակել հիմնական ֆոնդերում կապիտալ ներդրումների չափերի ու կառուցվածքի դիֆերենցված նորմատիվներ։

Պահանջվող հիմնական ֆոնդերի նորմատիվներն որոշելու համար մեր կողմից հետազոտությունները տարվել են՝ ա) հիմնական արտադրական ֆոնդերի փաստացի չափերի ու կառուցվածքի տնտեսական վերլուծման, բ) կապիտալ ներդրումների ու հիմնական ֆոնդերի առանձին խմբերի տեսակարար նորմատիվների և գ) արտադրության ու որոշակի կառուցվածք ունեցող հիմնական ֆոնդերի ծավալի աճի միջև փոխադարձ կապի ճիշտ որոշման մեթոդներով։



Կոլտնտեսություններում հիմնական ֆոնդերի կառուցվածքը պետք է համապատասխանի արտադրության ուղղության, գյուղատնտեսության ինտենսիվացման մակարդակին և զանազան առանձնահատկություններին։

Լոռի-Փամբակի գոտու անասնաբուծական ուղղություն ունեցող կոլտնտեսությունների հիմնական ֆոնդերի փաստացի չափերի տնտեսական վերլուծությունը ցույց տվեց, որ տնտեսությունների մասնագիտացումը մեծապես ազդում է այդ ֆոնդերի կառուցվածքի վրա։ Օրինակ, հիշյալ գոտու շրջաններում ինտենսիվ անասնաբուծական տնտեսությունների առկայությամբ է պայմանավորված հիմնական արտադրական ֆոնդերում բանող և մթերատու անասունների, շենքերի ու կառուցվածքների բարձր տեսակարար կշիռը։ 100 հեկտար գյուղատնտեսական հողատարածության հաշվով բանող և մթերատու անասունների տեսակարար կշիռը հիմնական արտադրական ֆոնդերում կազմում է 29—35, իսկ շենքերինն ու կառուցվածքներինը՝ 50—52 տոկոս։

Ուսումնասիրվող գոտում արտադրության միանման ուղղության կոլտնտեսություններն ունեն նաև հիմնական արտադրական ֆոնդերի ավելի կայուն կառուցվածք։ Դա հիմք կարող է ծառայել հիմնական արտադրական ֆոնդերի տիպիկ կառուցվածքը որոշելու գործում, որը շատ կարևոր է կապիտալ ներդրումների արդյունավետ ուղղությունը պլանավորելիս։

Ցույց տալու համար, թե արտադրամիջոցների հագեցվածության ինչպիսի մակարդակի դեպքում է ստացվում ամենալավ արդյունքը և ինչ ծավալի հիմնական ֆոնդեր են պահանջվում, կոլտնտեսությունները խմբավորենք ըստ հիմնական ֆոնդերի հագեցվածության, և, միաժամանակ, մեկ միավոր հողատարածության հաշվով բերենք գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրանքի տվյալները Լոռի-Փամբակի գոտու կոլտնտեսությունների 1964 թվականի տվյալներով։

Տնտեսությունների առաջին և երկրորդ խմբերի տվյալների համեմատությունից երևում է, որ մեկ հեկտար վարելահողի հաշվով համախառն արտադրանքն ավելանում է 28 տոկոսով, մինչդեռ, հիմնական արտադրական ֆոնդերը միայն 2 տոկոսով, իսկ երրորդ խմբում արտադրանքի ֆոնդունակությունն իջնում է 20 տոկոսով։

Երրորդ խմբի տնտեսություններում համախառն արտադրանքը համապատասխանաբար ավելանում է 56, իսկ հիմնական արտադրական ֆոնդերը 45 տոկոսով, միաժամանակ ֆոնդունակությունն իջնում է 7 տոկոսով. չորրորդ խմբի տնտեսություններում արտադրանքի ֆոնդունակությունը նորից իջնում է 23 տոկոսով և ընդհակառակը, բարձրանում է հինգերորդ խմբի տնտեսություններինը։ Առաջին խմբի հետ համեմատած, աշխատանքի արտադրողականությունն այս խմբերի (IV և V) տնտեսություններում աճում է 64 տոկոսով, մինչդեռ, մյուս երկու խմբերում (II և III) այն կազմում է 30 և 39 տոկոս։ Իսկ համախառն եկամտի աճը, եթե IV և V խմբերինը կազմում է 72 և 94 տոկոս, ապա II և III խմբերինը հասնում է 47-ի և 62-ի։ Հետևապես այս գոտու գյուղատնտեսության արտադրության ամենալավ ցուցանիշները պետք է համարել չորրորդ և հինգերորդ խմբերինը, որտեղ համեմատաբար ավելի ճիշտ է պլանավորվել և իրականացվել արտադրության ծավալը։ Վերջիններիս հիմնական ֆոնդերի կառուցվածքն ու չափերը մեկ հեկտար վարելահողի հաշվով և արտադրանքի ֆոնդունակությունը կարող են ելակետ հանդիսանալ ուսումնասիրվող գոտու անասնաբուծական ուղղություն ունեցող տնտեսությունների

համար։ Պետք է նշել նաև այն, որ տվյալ էտապում, երբ միշտ չի կարելի նոր-
մատիվ պահանջների համաձայն հիմնական միջոցներով ապահովել տնտե-
սությունները, դրանց ամեն մի խմբի տեսակարար նորմատիվներն որոշելու
համար ընդունված է ուղղակի հաշվառման մեթոդ։ Այլ խոսքով, ընտրված են
ըստ իրենց արտադրական ուղղության՝ տիպիկ տնտեսություններ և արտա-
դրրա-ֆինանսական պլանների, նախագծվող տեխնոլոգիական քարտերի, գի-
տահետազոտական ինստիտուտների տեխնիկա-տնտեսական նորմատիվ ցու-
ցանիշների, Հայպետգյուղնախագծի մշակած արտադրական շենքերի ու կա-
ռուցվածքների տիպային նախագծերի և ուրիշ շատ ցուցանիշների հիման վրա
հաշվարկված է հիմնական արտադրական ֆոնդերի պահանջը։ Այդ պահանջի
ճիշտ ու ժամանակին իրականացումը կարևոր նշանակություն ունի կոլտնտե-
սությունների էկոնոմիկայի զարգացման համար։

Ուսումնասիրվող գոտու լեռնային հացազգի այլախոտային արոտավայ-
րերում ու մարգագետիններում առատ բուսականությամբ պետք է բացատրել
անասնաբուծության, մասնավորապես, տավարաբուծության զարգացումը։ Այն-
տեղ 56 հազար հեկտար գյուղատնտեսական օգտագործելի հողերի 71 տոկո-
սը կազմում են արոտավայրերն ու խոտհարքները, իսկ վարելահողը՝ 27 տոկոսը
կամ 15,2 հազար հեկտարը։ Անասնաբուծության համախառն արտադրանքում
տավարաբուծության բաժինը կազմում է 83, իսկ ապրանքայինում՝ 71 տոկոս։
Միաժամանակ, տավարաբուծության համախառն արտադրանքում կաթի տե-
սակարար կշիռը կազմում է 62, մսինը՝ 34 տոկոս։ Այս տվյալներից ելնելով
կարելի է ասել, որ այստեղ անասնաբուծության արտադրության հիմնական
ճյուղը կաթնա-մսային տավարաբուծությունն է։

Այսպիսով, գոտու ինչպես տիպիկ, այնպես էլ մյուս կոլտնտեսություն-
ների անասնաբուծության վարման սխեմի գնահատումը բերում է այն եզ-
րակացության, որ անհրաժեշտ է պահպանել ու խորացնել տնտեսություննե-
րում գոյություն ունեցող արտադրության մասնագիտացումը։ Լրացուցիչ ճյու-
ղերի զարգացման մակարդակը պայմանավորված է դրանց արդյունավետ
զուգակցումից։ Այսպես, օրինակ, ոչխարաբուծության զարգացման նպատա-
կահարմարությունը կախված է տավարի համար ոչ պիտանի արոտավայրերի
օգտագործման հետ, իսկ հացահատիկի ոչ բավարար արտադրությունը զգա-
լիորեն սահմանափակում է խոզաբուծության և թռչնաբուծության զարգա-
ցումը։

Գլխավորն այստեղ խոշոր եղջերավոր անասուններն են, որոնց ընդհանուր
արժեքի ավելացումը պայմանավորված է կովերի գլխաքանակի զգալի աճով։
Հայտնի է, որ ցածր արտադրանքի հիմնական պատճառներից մեկը հոտի
անբավարար կառուցվածքն է։ Այս տեսակետից, գոտու կոլտնտեսություննե-
րում կովերի տեսակարար կշիռը, եթե 1965 թվականին կազմել է 38, ապա
1970-ին նախագծվում է հասցնել 40—45 տոկոսի։ Միաժամանակ, կովերի
միջին կաթնատվությունը փաստացի 1900-ից նախագծվում է 2200—2500 լիտր,
իսկ խոշոր անասունի կենդանի քաշը պետք է կազմի մոտավորապես 400—450
կիլոգրամ։

Վերը նշված տվյալների հիման վրա հաշվարկված կապիտալ ծախսում-
ների տեսակարար նորմատիվները բերվում են անասունների հոտի կառուց-
վածքի երեք տարբերակներով (վարիանտներով), որը երևում է հետևյալ աղ-
յուսակից։



Անասնաբուծության մեջ Լոռի-Փամբակի կոլտնտեսությունների հիմնական
արտադրական ֆոնդերի նորմատիվները 100 հեկտար վարելահողի հաշվով (հազ. ռ.)

| Կապիտալ ներդրումների ուղղությունը | Անասնահոտի կառուցվածքի տարբերակները | | |
|---|---|---|---|
| | 1 | 2 | 3 |
| Մթերատու անասունների արժեքը | 17,6 | 28,9 | 31,0 |
| Բանող անասունների արժեքը | 0,9 | 1,1 | 2,5 |
| Շենքեր և կառուցվածքներ | 37,7 | 42,7 | 62,1 |
| Մեքենայական միջոցներ (կիթը մասրնե-րում փոխադրվող ապարատներով) | 5,2 | 5,4 | 8,7 |
| Ընդամենը ծախսումներ (հաշված նաև 12,5 տոկոսի չափով այլ ծախսերը) | 61,4 | 78,1 | 104,3 |

Որպեսզի գյուղատնտեսության պլանավորող ծավալը լինի ռեալ և իրա-
գործելի, այդ տնտեսություններում նախագծված է ավելի մեծ չափով բարձ-
րացնել հիմնական ակտիվ ֆոնդերը. դրա հետ մեկտեղ շատ կարևոր դեր են
կատարում արտադրական շենքերի, կառուցվածքների խումբ միջոցները։ Վեր-
ջիններիս տեսակարար կշիռը ընդհանուր արտադրական ֆոնդերում կազմում
է 50%-ից ավելի, և մեծ բաժինն ընկնում է անասնապահական շենքերին։

Կոլտնտեսություններում կապիտալ ներդրումների կարևոր ուղղություն-
ներից մեկը գյուղատնտեսական արտադրության առանձին ճյուղերի ժամա-
նակակից տեխնիկայով հագեցվածությունն է։ Վարդաբլուր, Սվերդլով, Պուշ-
կինո, Բլագադարնո և Կալինինո գյուղերի կոլտնտեսությունների տեխնոլոգիա-
կան քարտերի վերլուծությունը ցույց է տալիս, որ գյուղատնտեսական աշխա-
տանքների պրոգրեսիվ ձևերի կիրառումն ու կոմպլեքսային մեքենայացումը
կբարձրացնի աշխատանքի արտադրողականությունը։

Գյուղատնտեսական կուլտուրաների մշակման աշխատանքների կոմպլեք-
սային մեքենայացման համար օգտագործվող ու նախագծվող բարձր արտադրո-
ղականություն ունեցող մեքենաների և արտադրության պրոգրեսիվ տեխնոլո-
գիայի կիրառումով, ֆիզիկական աշխատանքի ծախսումները, 1965 թվականի
համեմատությամբ, կկրճատվեն ցորենի արտադրության գծով 4,5 անգամ,
կարտոֆիլինը՝ 2,5—3, սիլոսի համար մշակվող եգիպտացորենինը՝ 8—10 և
բանջարեղենինը՝ 10—12 անգամ։ Միաժամանակ, անասնաբուծության հիմ-
նական ճյուղում՝ տավարաբուծության մեջ, աշխատանքի արտադրողականու-
թյունը կաճի մոտավորապես 2,2 անգամ։ Դրան կարելի է հասնել մեքենայաց-
ված կթի և ներֆերմային տրանսպորտի ու այլ միջոցառումների շնորհիվ։

Հիմնական արտադրական ֆոնդերում գյուղատնտեսական մեքենաների և
սարքավորումների տեսակարար կշիռը, եթե Լոռի-Փամբակի գոտում 1965 թվա-
կանին կազմում էր 12, ապա 1970-ին այն պետք է հասնի 24 տոկոսի։ Մեքե-
նա-տրակտորային պարկի կազմավորումը նախագծելու համար հաշվի է առ-
նըված տնտեսությունների զարգացման պլանն ու արտադրության կառուց-
վածքը, ինչպես նաև արտադրության կոմպլեքսային մեքենայացումը։

Արտադրական հիմնական ֆոնդերում առանձին խումբ են կազմում փո-
խադրական միջոցները, որտեղ մեծ տեղ է տրվում ավտոմեքենաներին։ Այս

կապակցությամբ, հիմնական միջոցներում (իրենց տնտեսական նշանակությամբ) նսեմանում է բանող անասունների դերը։

Այսպիսով, կատարված հաշվարկները թույլ են տալիս նախագծելու գոտու տնտեսությունների բուսաբուծության և անասնապահության գծով պահանջվող հիմնական արտադրական ֆոնդերի ընդհանուր նորմատիվների չափերը, որոնք ցույց են տալիս աղյուսակի տվյալները։

Գյուղատնտեսության մեջ հիմնական արտադրական ֆոնդերի տեսակարար նորմատիվների չափերն ու համախառն արտադրանքը (*հազ. ռուբ.*)

| Կապիտալ ներդրումների ուղղությունը | 100 հեկտար վարելահողի հաշվով համախառն արտադրանքը — մինչև 100 հազ. ռ. | 101—150 հազ. ռ. | 151 հազ. ռ. բարձր |
|---|---|---|---|
| | Անասնահոտի կառուցվածքի տարբերակները | | |
| | 1 | 2 | 3 |
| Արտադրական շենքեր և կառույցներ | 45,4 | 50,6 | 75,0 |
| Այդ թվում անասնաբուծության մեջ | 37,7 | 42,7 | 62,1 |
| Մեքենայացում՝ ընդամենը | 22,8 | 25,6 | 34,0 |
| Այդ թվում՝ անասնաբուծության մեջ | 5,2 | 5,4 | 8,7 |
| Բանող և մթերատու անասունների արժեքը | 18,5 | 29,9 | 33,5 |
| Բազմամյա տնկարքներ [1] | 1,2 | 1,2 | 1,2 |
| Ներտնտեսական ճանապարհներ | 1,2 | 1,5 | 1,6 |
| Այլ ծախսումներ | 1,2 | 1,1 | 1,4 |
| Ընդամենը | 90,3 | 109,9 | 146,7 |

Նախագծվող ֆոնդերի հաշվարկների համեմատությունը փաստացի հագեցվածության տվյալների հետ ցույց է տալիս, որ ուսումնասիրվող գոտու բոլոր տնտեսությունները դեռևս չեն հասել պահանջվող օպտիմալ չափերի։ Հետևապես, որպեսզի կոլտնտեսությունները նորմատիվ չափերի համեմատ ապահովված լինեն հիմնական արտադրական ֆոնդերով, անհրաժեշտ է այն ավելացնել 1,5 անգամ։ Միաժամանակ, որպեսզի գյուղատնտեսության համախառն արտադրանքի աճի տեմպն առաջ անցնի հիմնական արտադրական ֆոնդերից, պահանջվում է այն ավելացնել երկու անգամ։

Գյուղատնտեսության ընդլայնված վերարտադրության կարևոր պայմանը, հիմնական ֆոնդերի համեմատությամբ, արտադրանքի աճի առաջացումն է։ Այս մեթոդական սկզբունքով է որոշվում համախառն արտադրանքի աճի տեմպերին համապատասխան կապիտալ ներդրումների ծավալի հեռանկարային պլանը, որը շատ կարևոր նշանակություն ունի կապիտալ ներդրումներին ավելի արդյունավետ ուղղություն տալու համար։ Որպեսզի ապահովվեն գյուղատնտեսության ընդլայնված վերարտադրությունը, ինչպես և հիմնական ֆոնդերը, անհրաժեշտ է պլանում նախատեսել կապիտալ ներդրումների արդյունավետության աճ, որի չափը որոշվում է հաշվի առնելով առաջավոր կոլտնտեսությունների փորձը։

Հայտնի է, որ կապիտալ ներդրումների արդյունավետության հիմնական ցուցանիշը աշխատանքի արտադրողականության բարձրացումն է։ Շատ կարևոր է պարզել, թե ի՞նչ չափով է կապիտալ ներդրումների ծավալն ազդում աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա։

Աշխատանքի արտադրողականության մակարդակի փոփոխությունների վերաբերյալ կարելի է հետևություններ անել Լոռի-Փամբակի գոտու կոլտնտեսությունների ցուցանիշներից։ Այսպես, 1959 թվականի նկատմամբ, 1965 թվականին, այս գոտու կոլտնտեսություններում 100 ռուբլի համախառն արտադրանքի հաշվով, նյութական ծախսումներն իջել են 28, իսկ աշխատանքային ծախսումները՝ 35 տոկոսով։ Այս հնարավորություն է ընձեռում խոսելու արտադրանքի արժեքի իջեցման կամ հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացման մասին։ Դրա հետ մեկտեղ, նույն ժամանակաշրջանում համախառն արտադրանքի արժեքը 100 մարդ-օրերի հաշվով գոտու կոլտնտեսություններում ավելացել է 55 տոկոսով, որը, զգալի չափով, պետգնման գների բարձրացման արդյունք է։ 100 մարդ-օրերի հաշվով աշխատանքի վարձատրությունն աճել է 44, իսկ համախառն եկամուտը 100 ռուբլով, հիմնական արտադրական ֆոնդերի հաշվով՝ 48 տոկոսով։ Սակայն, դեռևս կան խոշոր թերություններ։ Այսպես, գոտու կոլտնտեսությունների մեծ մասում սիստեմատիկ կերպով սեփական եկամուտներով չեն ծածկվում արտադրանքի վրա կատարված ծախսերը, իսկ դա խանգարում է կոլտնտեսային արտադրությանը։ Այստեղ, շատ կոլտնտեսություններում, իջել է ֆոնդատատուքը։ Ամբողջ գոտում 1959 թվականի հետ համեմատած, 1965 թվականին, ֆոնդատատուքը, միջին հաշվով, իջել է 14 տոկոսով։ Որպեսզի լուծվի դրա բարձրացման պրոբլեմը, անհրաժեշտ է արմատապես բարելավել հողը, բարձրացնել բերրիությունն ու անասնաբուծության մթերատվությունը։ Առաջին հերթին, կապիտալ ներդրումները պետք է ուղղել այնպիսի ֆոնդերի ստեղծման վրա, որոնց աճն ավելի ազդեցություն ունենա արտադրության ավելացման վրա։ Դրանք են՝ քիմիական պարարտանյութերի օգտագործումը, ոռոգման ու մելիորացիայի կազմակերպումը, անասնապահական և այլ շենքերի շինարարությունը և այլն։ Միաժամանակ, պահանջվում է բարելավել կապիտալ շինարարության համար առանձնացվող միջոցների օգտագործումը, հիմնական ֆոնդերի կազմը՝ ապահովելով մեքենաների, սարքավորումների և այլ տեխնիկայի տեսակարար կշռի բարձրացումը, ընդլայնել պրոգրեսիվ տեխնոլոգիական պրոցեսների ու առաջավոր ագրոզոոտեխնիկական միջոցառումների կիրառումը, ձգտել հիմնական ֆոնդերի էժանացմանն ու դրանց օգտագործման բարելավմանը։

Վ. ՋՈՒԲԻՆԵԹՅԱՆ
Գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման գիտահետազոտական ինստիտուտի ավագ գիտաշխատող

1 Բազմամյա տնկարքների վրա ծախսվող կապիտալ ներդրումներն առաջին տարբերակում կազմել են 9,8 հազ. ռուբլի, երկրորդում՝ 8,4, երրորդում՝ 6,0 հազ. ռ.։ 100 հեկտար վարելահողի հաշվով կապիտալ ներդրումների տեսակարար նորմատիվը բոլոր տարբերակներում հավասար է։

## ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԱՆՄՈՌԱՑ ԲԱՐԵԿԱՄԸ

Հայաստանի կոմունիստները և բոլոր աշխատավորները խոր հարգանքով ու երախտագիտությամբ նշեցին ականավոր կոմունիստ և ինտերնացիոնալիստ, հայ ժողովրդի սրտակից բարեկամ Սերգո Օրջոնիկիձեի ծննդյան 80-ամյակը: Խոշոր է Գրիգորի Կոնստանտինովիչի դերը հայ ժողովրդի նորոգ կյանքի, Հայաստանի կոմունիստական կուսակցության ձևավորման ու ամրապնդման, Հայաստանում կուսակցական ու պետական անձնուրաց կադրեր աճեցնելու ասպարեզում: Հատկապես ուշագրավ է և անգնահատելի նրա դերը բանական թվականներին ՀԿ (բ) Կ ղեկավար շրջաններում ծագած ներքին տարաձայնությունների հարթման բնագավառում:

Հայտնի է, որ Հայաստանում սովետական իշխանությունը հաղթանակեց ներքին և միջազգային բարդ իրադրության պայմաններում: Դաշնակցական կառավարությունը հարկադրված էր կապիտուլյացվել: 1920 թվականի դեկտեմբերի 2-ին ՌՍՖՍՀ-ի լիազոր ներկայացուցիչ Բ. Վ. Լեգրանի և դաշնակցական կառավարության միջև համաձայնագիր կնքվեց իշխանությունը Հայաստանի Հեղկոմին հանձնելու վերաբերյալ, որով սահմանված էր նաև վերաբերմունքը դաշնակցական կուսակցության նկատմամբ. նախատեսվում էր Հայաստանի դաշնակցական և մյուս բուրժուա-ազգայնական կուսակցությունների անդամներին ռեպրեսիայի չենթարկել իրենց կուսակցական պատկանելության համար: Համաձայնագրի 4-րդ և 5-րդ կետերով ներում շնորհվեց դաշնակցական կառավարության բանակի սպաներին, դաշնակցության և մյուս ազգայնական կուսակցությունների անդամներին: Կոմունիստական կուսակցության մարդասիրական այդ քայլը բխում էր, նախ՝ «մեր իդեալի մեջ բռնությունը մարդկանց նկատմամբ տեղ չունի» լենինյան սկզբունքից (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 80) և ապա Հայաստանի քաղաքական յուրահատուկ իրադրությունից: Կոմունիստական կուսակցությունը



պատրաստ էր մոռանալու իր այն հակառակորդների ու թշնամիների անցյալի գործունեությունը, ովքեր անվերապահորեն լծվելու էին քայքայված երկրի վերականգնման ազնիվ աշխատանքին:

«Կոմունիստական կուսակցության առաջ,— ասել է Գ. Կ. Օրջոնիկիձեն,—ծառացավ քաղաքական վարքագծի հարցը Հայաստանում, որտեղ մեր քաղաքականությունն առանձնապես կզուշ պետք է լիներ: Պրոլետարիատի բացարձակ բացակայությունը, եթե չհաշվենք Ալեքսանդրապոլի երկաթուղային բանվորների մի փոքրիկ խումբը, գյուղացիական բնակչության հետամնացությունը, այս ամենը ստիպում էր շատ կզուշ քաղաքականություն վարել: Ուստի և Հեղկոմը ստեղծվեց այնպիսի ընկերներից, որոնց դիրեկտիվ տրվեց չշտապեցնել Հայաստանի կոմունիզացիան, չվանել ինտելիգենցիայի լայն շրջանները և այլն» (Գ. Կ. Օրջոնիկիձե, Ընտիր հոդվածներ և ճառեր, Հայպետհրատ, 1950 թ., էջ 58):

«Հայաստանում,— այնուհետև գրել է Օրջոնիկիձեն,— շատ յուրահատուկ դրություն ստեղծվեց: Սովետական իշխանությունը դաշնակներին ձեռք չէր տալիս: Ես անձամբ կողմնակից էի, որ նրանց հետ որքան կարելի է համբերատար վերաբերվել և բոլորովին ձեռք չտալ Դրոյի և Վրացյանի խմբին, որոնք չէին խնայում ո՛չ խոսքեր, ոչ, թերևս գործողություններ, որպեսզի ապացուցեին սովետական իշխանությանն իրենց կողմնակից լինելը: Հայաստանում չէին հալածվում նույնիսկ կադետները» (նույն տեղը, էջ 48):

Բայց դաշնակները շուտով չարաշահեցին բոլշևիկների մեծահոգությունը, հայ ժողովրդի շահերից բխող մեղմ քաղաքականությունը: Խիստ գաղտնի ու քողարկված՝ նրանք նախապատրաստում էին փետրվարյան ավանտյուրան:

Օրջոնիկիձեն էական դեր է կատարել դաշնակցականների 1921 թվականի փետրվարյան ավանտյուրայի ջախջախման գործում: Երևանի գրավման լուրը ցնցում է նրան, բոլոր ուղիներով նա փորձում է կապվել Ղամարլու նահանջած հեղկոմի հետ: Փետրվարի 19-ին Օրջոնիկիձեն ՌԿ (բ) Կ Կենտկոմին հայտնում է, որ Երևանում հեղաշրջումը կատարվել է Վրացյանի գլխավորությամբ և պահանջում է անմիջապես ձերբակալել Դրոյին. վերջինս այդ ժամանակ գտնվում էր Մոսկվայում (ՄԼԻ-ի ԿԿՊԱ, ֆ. 85, ց. 14. գ. 57):

Փետրվարի 24-ին Ղամարլվի ռազմաճակատում գտնվող Հայաստանի հեղկոմի նախագահ Ս. Կասյանին և Հայաստանի Կարմիր Բանակի հրամանատար Մ. Մալխաչանովին Օրջոնիկիձեն ռադիոյով տալիս է քաղաքական-տակտիկական մի շարք ցուցումներ:

Կատարելով ՌԿ (բ) Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի դիրեկտիվները՝ Հայաստանի Հեղկոմը, Ս. Կասյանի գլխավորությամբ, կորահրամանատարության հետ միասին, կարգի բերելով կորամասերը և պարտիզանական ջոկատները, Ղամարլու—Վեդի գծում կազմակերպում է 45-օրյա հերոսական պաշտպանություն՝ դաշնակների գերազանց ուժերի հարձակումներից:

Ռազմական գործողությունների ժամանակ Օրջոնիկիձեն ձեռնարկում էր բոլոր միջոցները, որպեսզի Կարմիր Բանակի կորամասերի առաջխաղացումը որքան հնարավոր է անարյուն լինի: Հրամանատարներից ու քաղաշխատողներից նա պահանջում էր ռազմաճակատներում ձեռնարկել այնպիսի գործողություններ, որոնք վնաս չհասցնեն դաշնակների մոլորեցրած ու ռազմաճակատ քշած գյուղացիներին, մարդկային կռիվների պատճառ չդառնան: Առանձնապես նախազգուշացնում էր հատուկ վերաբերմունք ունենալ ռազմագերիների նկատմամբ:

Հայտնի է, որ հայ մեծ բանաստեղծ Հովհաննես Թումանյանը Օրջոնիկիձեի հավանությամբ մեկնում է Երևան՝ Վրացյանին համոզելու կրակը դադարեցնել: Երբ նրա միջամտությունն արդյունք չտվեց, Օրջոնիկիձեն հատուկ նամակ ուղարկեց Վրացյանին, ուր ասված է. «Ինձ դիմեցին մի խումբ հայ ընկերներ, խնդրելով վերցնել Ձեզ դիմելու նախաձեռնությունը և առաջարկել դադարեցնել անիմաստ, անհեռանկար, ժողովրդի համար կործանարար պատերազմը: Վրաստանում կռիվը մենշևիկյան կառավարության և Սովետական իշխանության միջև ավարտվեց բանվորա-գյուղացիական իշխանության լիակատար և վերջնական հաղթանակով և ամբողջ Վրաստանում Սովետական իշխանությունը ճանաչելու և անցյալը մոռացության տալու մասին ձևական համաձայնագիր կնքելով:

Ամենքի համար պարզ է, և ամենափոքր կասկածի ենթակա չէ, որ ամբողջ Անդրկովկասում հասել է բանվորա-գյուղացիական իշխանության հաղթանակի ժամը: Ահա թե ինչու ես համաձայնեցի Ձեզ առաջարկել անհապաղ դադարեցնել անհուսալի կռիվը, վենքը լիովին ցած դնել և ճանաչել Հայաստանի Սովետական Սոցիալիստական անկախ հանրապետության հեղափոխական կոմիտեն, որին անցյալ տարվա դեկտեմբերին հենց դուք հանձնեցիք իշխանությունը: Հեղափոխական կոմիտեն ներում կշնորհի ավանտյուրայի բոլոր մասնակիցներին» (նույն տեղը, էջ 48): Դաշնակները խուլ մնացին նաև այս կոչին:

1921 թվականի մարտի 9-ին Գրուզկավռոստի աշխատողի հետ ունեցած զրույցի ժամանակ Օրջոնիկիձեն շարադրել է փետրվարյան ավանտյուրայի հիմնական պատճառները, մերկացրել դաշնակների պրովոկացիաները, նկարագրել ռազմական գործողությունների ընթացքը և նշել ավանտյուրան լիկվիդացնելու միջոցները:

Այդ զրույցում նա ցույց է տալիս, որ, նախ, դաշնակները ռազմական պարտություն կրեցին, իշխանությունը հարկադրված հանձնեցին Հայաստանի Հեղկոմին, որպեսզի դրանով պահպանեն իրենց ուժերն այն հույսով, որ թուրքերը պատերազմի մեջ կմտնեն Սովետական Ռուսաստանի դեմ, Անտանտի օգնությամբ կտապալվի սովետական իշխանությունը ամբողջ Կովկասում, և դարձյալ կվերականգնվի իրենց տիրապետությունը Հայաստանում: Այդ նկատառումներով դաշնակներն անցան Թուրքիայի կողմը: Նրանք սերտ կապերի մեջ էին Կովկասի բոլոր հակահեղա-

փոխական ուժերի հետ, որոնց ոգեշնչում և կազմակերպում էր Թիֆլիսում նստած Անտանտի դիվանագիտական կորպուսը: Մեծ դեր էր խաղում նաև Վրաստանի մենշևիկյան կառավարությունը, որը կենսագործում էր Անտանտի ցուցումները: Նրա միջոցով Անտանտն աջակցում էր Կովկասյան ամբողջ հակահեղափոխությանը: «Դաշնակցական երևանյան ավանտյուրայի ոգեշնչողներին պետք է փնտրել Թիֆլիսում, դրա ապացույցը Սաբախտաշվիլուն ուղղված Վրացյանի առաջին դիմումն է, որտեղ նա մթերք և հագուստեղեն է խնդրում, և Սաբախտաշվիլու պատասխանը՝ մեր թիկունքին խփելու»:

Օրջոնիկիձեն դաշնակներին, հատկապես իրենց «ձախ» համարող Վրացյանին և Դրոյին անարգանքի սյունին է գամում: Ցույց է տալիս, որ չնայած սովետական իշխանության մեծահոգի ներողամտությանը, նրանք ազգի ուխտադրուժ դավաճաններ դուրս եկան:

Դաշնակների փետրվարյան ավանտյուրայի լիկվիդացման ամբողջ ժամանակաշրջանում Օրջոնիկիձեն իրեն հատուկ համարձակ, ընկերական, ուշադիր, ոգեշնչող ու հուսադրող խորհուրդներով օգնում էր Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի և Հայաստանի Հեղկոմի անդամներին, Կարմիր Բանակի հրամանատարներին և քաղաշխատողներին: Նա մշտական կապ էր պահպանում Ղամարլուի, Սպիտակի և Ախտա-Ելենովկա ռազմաճակատների հետ: Պահպանված են այն բոլոր գրագրությունները, որ Օրջոնիկիձեի հետ ունեցել են Ս. Կասյանը, Գ. Աթարբեկյանը, Մ. Մալկաչանովը, Ի. Սվիրիդովը, Ա. Նուրիջանյանը, Մ. Վելիկանովը և շատ ուրիշներ: Դրանք ակնառու ցույց են տալիս, թե ինչպիսի անմիջականությամբ ու եռանդով է ղեկավարել Օրջոնիկիձեն դաշնակների ավանտյուրայի դեմ ուղղված պայքարը: Օրջոնիկիձեին ամեն օր, ամեն ժամ, բոլոր ռազմաճակատներից դիմել են ղեկավար գործիչները: Նրանք դիմել են վստահ, հաստատ իմանալով, որ Սերգոն անմիջապես օգնության կհասնի՝ կկարգադրի, կըհանձնարարի, կստուգի, կկարգավորի, կպարզաբանի, կպատասխանի: Ամբողջապես վստահելով Օրջոնիկիձեին, նրանք ոչինչ չեն թաքցրել, ամեն ինչ ասել են ճշմարտացի և պարզ:

Այդ ծանր օրերին գրված հուզումնալից, անկաշկանդ զեկուցագրերը, հեռագրերն ու նամակները կարդալիս զգում ես, որ դրանք գրված են անկեղծ ու պարզ հոգու թելադրանքով, դրանցում արտահայտված է այն ամենը, ինչ զգացել և ցանկացել են հեղինակները՝ առանց հարմար բառեր, դարձվածքներ, ձևակերպումներ որոնելու:

Բերենք միայն մի երկու օրինակ, ցույց տալու համար, թե Օրջոնիկիձեն ինչպիսի՜ անմիջականությամբ է արձագանքել ռազմաճակատից ստացվող զեկույցներին ու պահանջներին:

1921 թվականի մարտի 7-ին Աթարբեկյանը Ելենովկայից Օրջոնիկիձեին գրել է, թե փամփուշտները վերջանում են. այդ կարող է ազդել ռազմաճակատի դրության վրա: Խնդրում է շտապ ուղարկել 500 հազար ռուսական փամփուշտ: Հեռագիրն ստանալուն պես Օրջոնիկիձեն 11-րդ բանակի մատակարարման բաժնի պետին մակագրում է. «Ձեզ ցուցում էր տրված ուղարկել, ի՞նչ է արված: Եթե դեռևս չի ուղարկված, անհապաղ ուղարկել»:

Երբ Ղամարլուի ռազմաճակատում Հայաստանի հեղկոմի մարտիկները հերոսաբար ետ մղելով դաշնակների գերազանց ուժերի անընդհատ կրկնվող գրոհները, սպառում են պարենի բոլոր պաշարները, դարձյալ դիմում են Օրջոնիկիձեի օգնությանը:

Մարտի 14-ին Հայաստանի Հեղկոմի ռազմական ժողկոմ Ավիս Նուրիջանյանը Օրջոնիկիձեին Արարատ կայարանից հայտնել է. «Այսօր առավոտյան Երևանի վրա անցնում ենք վճռական հարձակման: Սպառազինության և պարենամթերքների կարիք ենք զգում: Մեզ անհապաղ օգնել է պետք, հակառակ դեպքում մենք կպարտվենք»:

Հաջորդ հեռագրում կարդում ենք. «Պարենամթերքը վերջանում է: Դրամանիշները շատ քիչ են: Շտապ, միայն ինքնաթիռով, պետք է ոսկի փոխադրել սննդամթերքի հետ փոխանակելու համար»:

Լեգենդար օդաչուներ Վսեվոլոդ Մելնիկովի և Բորիս Կուդրինի միջոցով Գ. Կ. Օրջոնիկիձեն անձամբ կազմակերպում է երեք փութ ոսկի դրամի փոխադրումը և փրկում դրությունը:

Երբ Ղամարլուի ռազմաճակատում դրությունը ծանր էր, Կարմիր Բանակի կորքերը դեռևս զբաղված էին Վրաստանի մենշևիկյան կառավարության զորամասերին հետապնդելով, որպեսզի ամրապնդեն Ղամարլվի ռազմաճակատի կորքերի մարտական ոգին, Օրջոնիկիձեն մարտի 16-ին հրամանատարությանը գրում է. «Մենշևիկների հետ ամբողջապես վերջացված է: Նրանց լքված գնացքներով մեր զորամասերը շարժվեցին դեպի Բաթումի, ուր նրանք կհասնեն այսօր: Մի բրիգադ է ուղարկված ձեզ մոտ, եթե պահանջվի, կփոխադրենք մի ամբողջ հեծելազորային դիվիզիա: Դիմացեք էլի մի որոշ ժամանակ: Տեղեկագրերը կստանաք: Բարև բոլորին: Շուտով կըհանդիպենք Երևանում» (տե՛ս սովետական բանակի կենտ. արխիվ, ֆ. 199, ց. 4, գ. 757, թ. 8):

Կարմիր բանակի զորամասերը և հայ աշխատավորության զավակներից կազմված ջոկատները 1921 թվականի ապրիլի 2-ին մտան Երևան, որը մեծ ցնծություն առաջ բերեց տանջված ու թալանված բնակչության մեջ: Այդ առթիվ Օրջոնիկիձեն գրել է. «Նույնիսկ այժմ,



Վրացյանի պրովոկացիաներից հետո, չքավոր դասակարգը Երևանում աներևակայելի ուրախությամբ դիմավորեց Կարմիր զորքերին» («Կարմիր աստղ», № 44, 29 ապրիլի, 1921 թ.):

**Գ. Կ. Օրջոնիկիձեն այսպիսով հայ ժողովրդի ամենածանր օրերին, սովետական իշխանությանը սպառնացող վտանգի ժամին, դարձյալ նրա հետ էր, դարձյալ իրեն հատուկ եռանդով օգնում և աջակցում էր Հայաստանի աշխատավորությանը՝ ջախջախելու հին կարգերը վերականգնելու ամեն մի փորձ:**

Երբ հայ ժողովուրդը տոնում էր իր հաղթանակը, Օրջոնիկիձեն չէր կարող հեռու մնալ, նա շտապեց գալ Երևան՝ բաժանելու հայ աշխատավորության խինդը:

Դաշնակցականների փետրվարյան ավանտյուրան ընդհատեց ներկուսակցական տարաձայնությունները: Կենտկոմի և հեղկոմի անդամները գտնվում էին տարբեր ռազմաճակատներում: Դաշնակցական ավանտյուրիստների դեմ մղված կըռվում, ռազմաճակատների ամրապնդման գործում ամենքն էլ տոգորված էին նույն վճռականությամբ: Բայց ավանտյուրայի ջախջախումից հետո, երբ նրանք հավաքվեցին Երևանում, վեճերը վերստին շարունակվեցին: Այս անգամ փոխադարձաբար իրար մեղադրում էին դաշնակցականների ավանտյուրայի համար: Այդ օրերին Կասյանը, Աթարբեկյանը, Հայկական բանակի կոմիսար Սվիրիդովը նամակներով դիմում են Օրջոնիկիձեին և խնդրում անհապաղ մեկնել Երևան:

Ներկուսակցական պայքարի այդ բուռն շրջանում անհրաժեշտ էր Սերգոյի ներկայությունը: Վիճող ընկերներից յուրաքանչյուրը կատարել և շարունակում էր կատարել իր հեղափոխական պարտքը տանջված ժողովրդի, կուսակցության, հեղափոխության հանդեպ: Նրանց բոլորի խիղճը մաքուր էր կուսակցության ու ժողովրդի առջև: Այդ սուր ու թեժ պայքարում նրանցից ոչ մեկի մոտ անձնական, կարիերիստական, փառասիրական ձգտման նշույլ անգամ չկար: Նրանք վիճում էին, մեղադրում միմյանց, երբեմն կոպտում ու նույնիսկ վիրավորում, բայց այդ ամենը անձնական կռվի չէին վերածում: Աթոռի կռիվ չէր դա, այլ հեղափոխականների պայքար, ուր հեղափոխության, ժողովրդի շահերը վեր էին դասվում ամեն շահից: Անձնական ինքնասիրությունը, փառքը, բարեկեցությունը ստորադասվում էին կուսակցության, ժողովրդի, հեղափոխության շահերին, Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության շահերին: Գերված արծիվների պես նրանք թշնամիների շրջապատումից ելք էին փնտրում ոչ թե իրենց, այլ ժողովրդի համար: Նրանցից մեկը ներկուսակցական պայքարի մասին ուղղակի ասել է. «Եթե վեճի թեժ պահին ներս մտներ մեկը և հայտներ, որ հացով բարձված էշելոն է գալիս, «ձախերը» և «աջերը» կգրկախառնվեին և կհամբուրվեին»:

1921 թվականի ապրիլի 17-ին Գ. Կ. Օրջոնիկիձեն Դիլիջանի խճուղիով Ս. Ի. Գեկկերի և Շ. Էլիվայի ուղեկցությամբ գալիս է Երևան: Նրա հետ միասին Երևան են գալիս Մոսկվայից և Բաքվից մոբիլիզացված մի խումբ կոմունիստներ, որոնց հետ՝ Պ. Մակինցյանը, Ա. Կարինյանը, Ս. Համբարձումյանը և ուրիշներ:

Գ. Կ. Օրջոնիկիձեն ծանոթանում է իրադրությանը, մանրակրկին ուսումնասիրում Կենտկոմի և Հեղկոմի անդամներին, «ձախերի», «աջերի» փոխհարաբերությունները, լսում նրանց բացատրությունները: Ղեկավար աշխատողների խորհրդակցությունում վերլուծելով այն պայմանները, որում գործել և պայքարել են նրանք, Օրջոնիկիձեն տալիս է յուրաքանչյուրի գործունեության գնահատականը: Լենինի նամակից հետո, «ձախ» խմբին պատկանող որոշ աշխատողների թվում էր, թե իրենք հարված կստանան, այն էլ՝ ծանր:

Խորհրդակցությունում Օրջոնիկիձեն ընկերական, բարեկամական մթնոլորտում վերլուծում է Հայաստանում և Հայաստանի շրջակայքում ավանտյուրայի ողջ ընթացքում ստեղծված իրադրությունը, տալիս այդ իրադրության մեջ գործող Հեղկոմի և Կենտկոմի անդամների գործունեության ճիշտ, մարքսիստական գնահատականը: Երկու կողմերն էլ ընդունում են իրենց թույլ տված սխալներն ու վրիպումները: Մասնավորապես բոլշևիկին հատուկ շիտակությամբ, ուղղամտությամբ է արտահայտվում Գ. Աթարբեկյանը, խոստանալով իր ողջ ուժերը նվիրել լենինյան նոր տնտեսական քաղաքականությանը և Կովկասի կոմունիստներին ուղղված նամակում առաջադրված խնդիրների իրականացմանը. խոստովանելով իր սխալը նա պատրաստակամություն է հայտնում մնալ Հայաստանում և իրագործել կուսակցության լենինյան նոր կուրսը. «Ո՛չ, Գևորգ, դու կաշխատես Անդրկովկասյան Չեկայում»,— տեղն ու տեղը վճռում է Սերգոն:

Այդ խորհրդակցությունում Սերգոն ամեն մեկին մատնացույց է անում իր սխալը, և յուրաքանչյուրը մեծագույն ակնածանքով նայելով Սերգոյի ժպտուն աչքերին՝ ընդունում է այն:

Նրանց բոլորին էլ հանգստացնելով, նա խոստանում է շուտով ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոյում Մյասնիկյանի հետ լուծել բոլորի աշխատանքի հարցը:

Գ. Կ. Օրջոնիկիձեն Թիֆլիս վերադառնալով, Հայաստանի դրության և նրա ղեկավարության ամրապնդման հարցերի շուրջ խորհրդակցում է ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի անդամների՝ իր մարտական զինակիցներ Ս. Կիրովի,

Հ. Նազարեթյանի, Մ. Օրախելաշվիլու հետ. Սերգոն Կենտկոմից պահանջում է արագացնել Մյասնիկյանի և Լուկաշինի ժամանումը:

Մյասնիկյանը Թիֆլիս է գալիս ապրիլի վերջին: Նա մասնակցում է ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի մայիսի 5-ի նիստին և պատմում Լենինի հետ ունեցած զրույցի մանրամասները: Նիստում ընթերցվում է Լենինի նամակը, որտեղ որոշվում է անհապաղ հրապարակել այն: Լենինյան նոր կուրս... Այսպես էին անվանում Լենինի դիրեկտիվ նամակը Կովկասի կոմունիստները:

Օրջոնիկիձեն Մյասնիկյանին ծանոթացնում է Հայաստանի գործերի վիճակին, հանգամանորեն զրուցում ղեկավարությունը վերակազմելու հարցի շուրջ: Որպեսզի կադրերը ճիշտ դասավորվեն ու օգտագործվեն, որոշվում է, որ մինչև ՌԿ(բ)Կ Կովկասյան բյուրոյի որոշումն ընդունելը, Մյասնիկյանը լինի Երևանում, անձամբ ուսումնասիրի դրությունը: Այդ պատճառով էլ ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոն մայիսի 2-ին որոշում է Հայաստանի Հեղկոմի և Կենտկոմի վերակազմման հարցը քննել այն բանից հետո, երբ Մյասնիկյանը կծանոթանա Հայաստանի իրադրությանը: Մայիսի 5-ին Մյասնիկյանը մեկնում է Երևան: Առաջին իսկ օրերին ծանոթանում է իրավիճակին, անցկացնում ղեկավար աշխատողների մի շարք խորհրդակցություններ, անձնական հանդիպումներ, զրույցներ ունենում նրանցից յուրաքանչյուրի հետ: Մտքերի անկեղծ և ազնիվ փոխանակման պայմաններում անցկացվող այդ խորհրդակցություններում ընտրվում են Կենտկոմի և Հեղկոմի ապագա անդամները:

Օրջոնիկիձեն առանձնապես ջերմ էր դեպի իր կուսակիցները, զինակիցները, ենթակաները: Մարդու մեջ նա միշտ նկատի ուներ ապագան, մարդու նշանակությունը կուսակցության համար: Օրջոնիկիձեն խիստ դյուրազգաց էր, նրա «առյուծի» սիրտը հաճախ փլվում էր, նա լաց էր լինում, հեկեկում: Իր ջերմ ու սրտաբուխ խոսքերով հուզում էր բոլորին: Որքա՜ն անկեղծ, հոգեբուխ էին Օրջոնիկիձեի արտասանած խոսքերը 26 կոմիսարների հիշատակին, Կամոյի թաղմանը, Ֆրունզեի հիշատակին, Ա. Մյասնիկյանի, Ս. Մոգիլևսկու և Գ. Աթարբեկյանի գերեզմանի վրա:

Օրջոնիկիձեն ջերմ մտերմությամբ կապված էր Հայաստանի Հեղկոմի և ՀԿԿ Կենտկոմի անդամների հետ: Նա լավ գիտեր նրանցից յուրաքանչյուրին, նրանց առավելություններն ու թերությունները: Չնայած Կասյանի մարդկային թուլություններին, Սերգոն նրան համարում էր «Գյուղացիական տրամադրությունների բարոմետր»:

Սերգոն մտերիմ էր և բարձր է գնահատել Ալեքսանդր Մյասնիկյանին, սիրել է նրան, եղբայրացել նրա հետ:

Ինչպիսի՜ ակնածանքով է խոսել Սերգոն իր սիրելի Շահումյանի՝ մարքսիզմի այդ ծանր հրետանու մասին... Օրջոնիկիձեն հմայել գիտեր, համոզել, կարողանում էր հաշտեցնել կռվողներին, հանգստացնել զայրացածներին, բարեկամացնել օտարներին և ստեղծել հեղափոխական գործիչների կոլեկտիվ, կուսակցական մի ընտանիք, ուր իշխում է գաղափարական միաբանությունը: Սակայն նա դատափետում, շանթում էր քաղաքական հակառակորդներին, լենինիզմի թշնամիներին:

Սերգո Օրջոնիկիձեի և Ալեքսանդր Մյասնիկյանի գլխավորությամբ Հայաստանում ստեղծվեց ղեկավարների մի խումբ, որը երկար տարիներ համերաշխ-շինարարական աշխատանք էր ծավալում, որի ջանքերով վերականգնվեց մեր քայքայված երկիրը և ոտք դրեց սոցիալիստական շինարարության ուղին:

Ս. ԱԼԻԽԱՆՅԱՆ



## ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

### «ՊԱՏՄԱ-ԲԱՆԱՍԻՐԱԿԱՆ ՀԱՆԴԵՍ»-Ը

Վերջին տասնամյակում, մեր հայրենիքում հասարակական գիտությունների զարգացման և ընդհանուր վերելքին զուգընթաց՝ զգալի առաջընթաց ապրեց նաև հայագիտությունը: Հրապարակ եկան բազմաթիվ նոր ուսումնասիրություններ նվիրված հայ ժողովրդի պատմության, հնագիտության, գրականության, լեզվի, արվեստի և այլ բնագավառներին, հրատարակվեցին մի շարք սկզբնաղբյուրներ, նոր բնագրեր, կատարվեցին պատմա-բանասիրական բնույթի կարևոր ճշգրտումներ, եղան անցյալի կուլտուրական ժառանգության արժեքավորման ուշագրավ փորձեր և այլն: Ճիշտ է, միշտ չէ, որ անսայթաք ու անխոտոր է եղել այս ուղին. շատ հարցեր տեղի են տվել վեճերի ու հակաշիր կարծիքների բախման: Ոչ ոք չի կարող ժխտել, սակայն, որ բեղուն է եղել զարգացման այս շրջանը և հատկանշական՝ առաջընթացի ու կատարելագործման ընդհանուր ձգտումով:

Բնականաբար, հայագիտության զարգացման գործում զգալի դեր են խաղացել սովետահայ գիտական պարբերականները: Սրանց մեջ ուրույն տեղ ու վաստակ ունի ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի Պատմա-բանասիրական հանդեսը, որը լույս է տեսնում 1958 թվականից՝ ակադեմիկոս Մ. Գ. Ներսիսյանի խմբագրությամբ: Հանդեսի՝ մինչև այժմ հրատարակված 35 գրքերում ամփոփված բազմազան ուսումնասիրությունները ու նյութերը որոշակի պատկերացում են տալիս հայագիտության վերջին տասնամյակի անցած ուղու, զարգացման տենդենցների մասին:

Մի տեսության մեջ հնարավոր չէ անդրադառնալ գիտական այսպիսի մի լուրջ պարբերականի արծարծած բոլոր խնդիրներին, առավել ևս անհնար է ըստ էության գնահատել նրա գործունեության բոլոր կողմերը. այնքան լայն են Հանդեսի ընդգրկման շրջանակները, թե՛ ժամանակագրական առումով (հնագույն շրջանից մինչև մեր օրերը) և թե՛ պրոբլեմատիկայով (պատմություն, հնագիտություն, լեզվաբանություն, բանահյուսություն, արվեստ, փիլիսոփայություն և այլն), որ միայն նեղ-մասնագիտական քննարկման միջոցով կարելի է հանգել համապատասխան եզրակացությունների: Տվյալ դեպքում մեզ հետաքրքրողը Հանդեսի ընդհանուր նկարագիրն է: Նախապես ընդգծենք նաև, որ հայ ժողովրդի պատմության առանձին շրջանների, հայ գրականության, լեզվաբանության, հնագիտության, փիլիսոփայության և գիտության այլ ճյուղերի լուսաբանմանը Հանդեսի էջերում ակտիվորեն մասնակցում են մեր ականավոր գիտնականները, հայագիտության տարբեր բնագավառների աչքի ընկնող մասնագետներից շատերը: Չխորանալով գիտական մանրամասների մեջ՝ աշխատենք ընթերցողին ներկայացնել Հանդեսի գործունեության մի քանի կարևոր կողմեր:

Համառոտակի նշենք, թե ինչ բնագավառներ է ընդգրկել Պատմա-բանասիրական հանդեսը: Բնականաբար, նրա էջերում առանձնակի տեղ են գրավում պատմության հարցերը. Հանդեսում տպագրվել են տարբեր բնույթի մոտ երեք հարյուր նյութ՝ ուսումնասիրություններ, առանձին պատմական դեպքերին ու դեմքերին նվիրված հետազոտություններ, արխիվային նոր փաստաթղթեր, գրախոսություններ և այլն, որոնք շոշափում են հայ ժողովրդի պատմության մի շարք արմատական պրոբլեմներ՝ սկսած հնագույն շրջանից մինչև մեր օրերը: Եթե դրան ավելացնենք նաև հնագիտության վերաբերյալ բազմաթիվ նյութերը, ապա պատկերն ավելի ամբողջական կդառնա:

Հայ ժողովրդի պատմության վերաբերյալ Հանդեսում տպագրված նյութերից ուշագրավ են, մասնավորապես, այն ուսումնասիրությունները, գիտական հաղորդումները, վավերագրերի հրապարակումներն ու բանավեճային հոդվածները, որոնք ընդգրկում են հայ ժողովրդի ծագումից մինչև XIX դարն ընկած շրջանը: Ըստ պրոբ-

նակության, XIX դարի առաջին կեսի հայ նկարիչների և XIII դարում Երևանում կառուցված ճարտարապետական հուշարձանների մասին: Մոսկվացի է. Բասկակովը գիտական հաղորդում է հրապարակել հայ ժողովրդի պատմության վերաբերյալ արտասահմանյան մի քանի երկրներում գտնվող փաստաթղթերի մասին: Ակադեմիկոս Հ. Օրբելու աշխատություններում արծարծված վրացագիտության հարցերին է նվիրված պրոֆ. Ի. Մեգրելիձեի հոդվածը (ուղարկված Թբիլիսիից): Ուշագրավ է նաև սուխումցի գիտնական Ռ. Խոնելիայի՝ Աբխազիայի և աբխազների պատմության հետ կապված մի քանի խնդիրների ուսումնասիրությունը՝ ըստ հայկական աղբյուրների:

Հետազոտությունների երկրորդ խումբն ընդգրկում է համակովկասյան բնույթի հարցեր և, Անդրկովկասի ժողովուրդների փոխհարաբերություններից բացի՝ արծարծում նաև կովկասագիտության որոշ խնդիրներ: Նշենք այդ ուսումնասիրություններից մի քանիսը. Շ. Չխեթիա (Թբիլիսի)—Հայերը Թբիլիսիում XIX դարի 60-ական թվականներին, Զ. Բայբուրդի (Լենինգրադ)—Միջնադարյան պարսիկ բանաստեղծ Նիզամին Անդրկովկասում, Ի. Ենիկոլոպով (Թբիլիսի)—Ռուս-իրանական հարաբերությունների և Ա. Ս. Գրիբոյեդովի դիվանագիտական գործունեության պատմությունից, Մ. Կոսվեն (Մոսկվա)—Կովկասի ժողովուրդների պատրոնիմիան, Ի. Հասանով (Բաքու)—Անդրկովկասում XX դարի սկզբում ցարիզմի վարած հողային քաղաքականության պատմությունից, Ա. Գուլիև (Բաքու)—Բաքվի պրոլետարիատի ինտերնացիոնալ միասնականության մասին 1913—1914 թթ. ընդհանուր գործադուլների ժամանակ և այլն:

Եվ, վերջապես, երրորդ խմբի ուսումնասիրությունները, որոնք նվիրված են հայ գաղթօջախների սոցիալ-տնտեսական, հասարակական-քաղաքական և կուլտուրական հարցերի քննարկմանը: Այստեղ ընթերցողը կգտնի հետաքրքրական տվյալներ ու տեղեկություններ Չերքեզիայի և Ինդոնեզիայի հայերի, Աստրախանի հայ գաղութի, ղրիմահայ գաղութի սկզբնավորման և այլնի մասին: Առանձնակի հիշատակության և գնահատության են արժանի ուկրաինացի գիտնականների հետազոտությունները Լվովի հայկական գաղութի և հայ-ուկրաինական հարաբերությունների (XV—XVIII դարեր) վերաբերյալ: Այդ հոդվածները, ինչպես և Լվովում տպագրված բազմաթիվ նույնատիպ ուսումնասիրություններ, կարևոր ավանդ են հայագիտության տվյալ բնագավառում և վկայում են այդ ուղղությամբ ուկրաինացի գիտնականների նպատակասլաց ջանքերի մասին: Հանդեսում տպագրվածներից նշենք, օրինակ, Ուկրաինական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս Ի. Կրիպյակևիչի՝ Լվովի հայ գաղութի սկզբնավորման հարցին նվիրված ուսումնասիրությունը, Մ. Կրիվոնոսի, Ն. Վրադիի գիտական արժեքավոր հաղորդումները Լվովի հայերի գրադարանների և Լվովի հայկական գաղութի ակտային գրքերի վերաբերյալ, Յա. Իսաևիչի ու Յա. Դաշկևիչի հոդվածները հայ-ուկրաինական կապերի, Ուկրաինայում հայ տպագրության պատմության (XVII դար), ուկրաինական ֆոլկլորի բանահավաք հայ գիտնական Սադոկ Բարոնչի մասին և այլն:

Մնում է ցանկալ, որ Պատմա-բանասիրական հանդեսի խմբագրությունը նույնպիսի արդյունավետ նախաձեռնություն ցուցաբերի հայկական մյուս գաղթօջախների պատմության ուսումնասիրության բնագավառում:

Ինչ վերաբերում է արտասահմանյան առաջավոր գիտնականների աշխատակցությանը Պատմա-բանասիրական հանդեսին, ապա այստեղ կարելի է նշել երկու խումբ. արտասահմանյան տարբեր երկրներում ապրող այլազգի գիտնականներին, որոնք զբաղվում կամ հետաքրքրվում են հայագիտությամբ, և սփյուռքահայ ուսումնասիրողներին: Այլազգի գիտնականների հետազոտություններից հիշատակելի են, մասնավորապես, ռումինացի հանգուցյալ ակադեմիկոս, Պատմա-բանասիրական հանդեսի խմբագրական կոլեգիայի նախկին անդամ Վլադ Բընըցիանուի հետազոտությունները հայ ժողովրդի ծագման մի քանի խնդիրների և Ռումինիայի հայ գաղթօջախների մասին (ըստ ռումինական տեղանունների տվյալների), Իոն Նանուի (Բուխարեստ) հոդվածը՝ նվիրված ռումինա-հայկական գեղարվեստական կապերի բընութագրմանը, Ջինո Արրիգիի (Իտալիա)—Հակոբ Կլայեցին Լուկկայում, Պանչանան Սահայի (Կալկաթա)—Հինդի գաղութ Հայաստանում ուսումնասիրությունները և այլն:

Ավելի ակտիվ և ծավալուն է սփյուռքահայ ուսումնասիրողների աշխատակցությունը Հանդեսին: Հայագիտության տարբեր խնդիրներին վերաբերող հոդվածներ են ստացվել Չեխոսլովակիայից ու Բուլղարիայից, Ռումինիայից ու Ֆրանսիայից, Եգիպտոսից ու Ամերիկայից: Պրագայից Ն. Մարտիրոսյանն ուղարկել է հոդված Գիլգամեշ դյուցազներգության մասին և փոքրասիական տեղանունների մի շարք ստուգաբանություններ, Բուխարեստից Դ. Ղժրիկյանը գրել է միջնադարյան Ռումինիայի դիվանագիտության մեջ հայերի մասնակցության և ռումինական միջնադարյան ժողովրդական երգերում արտացոլված հայ կերպարների մասին: Բուխարեստից են ուղարկված նաև Ս. Գոգանյանի Թրանսիլվանիո հանգուցավոր գորգերը և անոնց ծագման հարցը, պրոֆ. Հ. Ճ. Սիրունու Հայաստանը ըստ թուրք աշխարհագիրներու հոդվածները: Հայ ժողովրդի պատմության և պատմագրության տարբեր հարցերին նվիրված հոդվածներով (հայ-իսպանական, հայ-բյուզանդական հարաբերություններ, հայ գաղթօջախներ, պատմիչներ և այլն) հանդես են եկել Ա. Ալպոյաճյանը՝ Կահիրեից, Հրանտ Ք. Արմենը՝ Կալիֆոռնիայից, Ն. Մանկունին՝ Միչիգանից, Լևոն Մեսրոպը՝ Փարիզից և ուրիշներ: Հիշարժան է Ն. Գասապյանի (Բուլղարիա—Պլովդիվ) հանգամանալից ուսումնասիրությունը հայ պարբերական մամուլի բիբլիոգրաֆիայի վերաբերյալ:

Ուզում ենք այստեղ նշել Պատմա-բանասիրական հանդեսի գործունեության մի կողմը ևս. անցած տարիների ընթացքում նրա էջերում պարբերաբար տպագրվել են գիտական-ինֆորմացիոն նյութեր Սովետական Հայաստանի գիտական և ուսումնական հաստատությունների, կուլտուրայի առանձին օջախների մասին: Գիտության և կուլտուրայի պատմության ուսումնասիրությանը նպաստելու առումով ուշագրավ են, մասնավորապես, ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի լեզվի, գրականության, պատմության, արվեստի, տնտեսագիտության ինստիտուտների, առանձին սեկտորների գործունեությանը վերաբերող նյութերը, հոդվածները Երևանի պետական համալսարանի, ՄԼԻ-ի հայկական ֆիլիալի, հայկական մանկավարժական, պոլիտեխնիկական, բժշկական, գեղարվեստաթատերական ինստիտուտների, պետական կոնսերվատորիայի մասին: Հանդեսն անդրադարձել է նաև մի շարք թանգարանների, արխիվների, հրատարակչությունների և կուլտուր-պատմական այլ հիմնարկների գործունեության հետ կապված հարցերին: Եթե սրան ավելացնենք սովետահայ գիտության ու կուլտուրայի ականավոր գործիչներին բնութագրող հոդված-դիմանկարները (Մ. Աբեղյան, Հ. Մանանդյան, Ալ. Թամանյան, Հ. Աճառյան, Վ. Համբարձումյան և ուրիշներ), ինչպես նաև արտասահմանում ապրող հայագետների առանձին աշխատությունների վերաբերյալ գիտական անոտացիաները, ապա կարող ենք ասել, որ խմբագրությունն ի կատար է ածում իր ընթերցողներին տված խոստումը:

Պատմա-բանասիրական հանդեսը առաջին իսկ համարից ջերմ ընդունելություն գտավ մեր երկրի գիտական հասարակայնության կողմից և արժանացավ բարձր գնահատության: Ակադեմիկոս Հ. Օրբելին այն որակեց իբրև «շատ լուրջ ակադեմիական ժուռնալ»: Հանդեսը լայն արձագանք գտավ նաև արտասահմանյան առաջադեմ հայագետների շրջանում, ինչպես նաև սփյուռքահայ մամուլում: Այդ են վկայում ո՛չ միայն հանդեսի տարբեր համարների մասին Նոր կյանք, Լրաբեր և այլ պարբերականներում տպագրված գրախոսականները, այլև այն բազմաթիվ նամակները, որ ստացել և ստանում է խմբագրությունը ինչպես առանձին գիտնականներից, այնպես էլ գիտական հաստատություններից: Այսպես, Օքսֆորդի համալսարանից գրում են. «Մենք գտնում ենք, որ Պատմա-բանասիրական հանդեսը մեր գրադարանի ամենահետաքրքրական ու ամենաարժեքավոր համալրումն է և անհամբեր սպասում ենք հետագա համարներին»: Կարևոր է ընդգծել, որ գրախոսականների ու նամակների հեղինակները Հանդեսի հրատարակությունը համարում են գիտության զարգացման նկատմամբ սովետական երկրում ցուցաբերվող ջերմ հոգատարության արգասիքներից մեկը:

Պատմա-բանասիրական հանդեսը կատարում է գիտական լուրջ ու բազմակողմանի աշխատանք, որն արժանի է խրախուսանքի: Չի կարելի անտեսել, սակայն, առկա որոշ թերացումներն ու բացերը, որոնց վերացմամբ խմբագրությունը կկարողանա ավելի հաջող կատարել իր շնորհակալ գործը: Պետք է նշել, մասնավորապես, որ, մյուս բաժինների համեմատությամբ, թույլ և պակաս բովանդակալից է գրախոսությունների բաժինը:

Մի դիտողություն ևս: Իհարկե, լավ է, որ խմբագրությունը հատուկ ուշադրություն է նվիրում սկսնակ գիտաշխատողների, մասնավորապես ասպիրանտների հոդվածների տպագրությանը՝ նպատակ ունենալով աջակցել դիսերտացիաների պաշտպանությանը: Միշտ չէ, սակայն, որ պատշաճ խստապահանջություն է ցուցաբերվում նրանց գրածների նկատմամբ: Հետևանքը լինում է այն, որ երբեմն տպագրվում են գիտական խորությունից զուրկ, նկարագրական հոդվածներ, որոնք անհարիր են Հանդեսի գիտական բարձր մակարդակին: Ցանկալի կլիներ նաև, որ Հանդեսն ավելի շատ անդրադառնար արտասահմանում լույս տեսնող հայագիտական ուսումնասիրություններին, առավել հանգամանալից դարձնելով դրանց վերաբերյալ տպագրվող գիտական անոտացիաները:

Չենք կասկածում, որ Պատմա-բանասիրական հանդեսի խմբագրությունն այսուհետև ևս իր ուշադրությունը կկենտրոնացնի հայագիտության կարևորագույն պրոբլեմների վրա՝ նպաստելով դրանց հետագա մշակմանն ու գիտական համակողմանի լուսաբանմանը:

Հ. ՖԵԼԵՔՅԱՆ

# ԻՄ ՆԿԱՏԱՌՈՒՄՆԵՐԸ

*Դպրոցում հայ գրականության դասավանդման վերաբերյալ ընկեր Ռ. Աթայանի հոդվածում բավականաչափ ծանրակշիռ հարցեր են շոշափված՝ ի նպաստ սովորողների բարոյական ու գաղափարական դաստիարակության կազմակերպման, նրանց բանավոր ու գրավոր խոսքի մշակույթի զարգացման։ Այս տեսակետից, հիրավի, հոդվածագրի հետապնդած նպատակը բարի է։ Ինչ խոսք, հսկայական են գեղարվեստական գրականության դերն ու նշանակությունը կոմունիզմ կառուցող մեր այժմյան սերնդի կոմունիստական դաստիարակության, առանձնապես աճող սերնդի գաղափարական ու գեղագիտական դաստիարակության, լեզվական մշակույթի զարգացման, աշխարհայացքի ու բնավորության ձևավորման գործում։ Հենց այս կարևորությունից ելնելով է, որ մեր կոմունիստական կուսակցությունը «...գաղափարական աշխատանքում գլխավորն է համարում՝ բոլոր աշխատավորներին դաստիարակել բարձր գաղափարայնության և կոմունիզմի նկատմամբ նվիրվածության, աշխատանքի ու հանրային տնտեսության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով, լիովին հաղթահարել բուրժուական հայացքների ու բարքերի մնացուկները, բազմակողմանիորեն, ներդաշնակորեն զարգացնել անհատին, ստեղծել հոգևոր կուլտուրայի իսկական հարստություն» (ՍՄԿԿ ծրագիրը, էջ 140, 1961 թ.)։ Ուղեցույց հանդիսացող այս դրույթն էլ հենց հայ գրականության դպրոցական ծրագրի ելակետն է։*

*Ասենք նաև, որ գրականության դասավանդման խնդիրների վերաբերյալ սույն բանավեճը հնարավորություն կընձեռի, որպեսզի բարելավվի այս առարկայի ուսուցման որակը, մեծանան աշակերտների գրական, գրականագիտական ունակություններն ու կարողությունները։ Թեև այս հարցին նախապես անդրադարձել է մեր հանրապետության գրական ու մանկավարժական մամուլը՝* Սովետական գրականություն *և* Սովետական մանկավարժ *ամսագրերը. բայց և այնպես, անկեղծ ասած՝ անպտուղ խոսակցություններից, կարծիքների սուր պայքարից զատ շոշափելի օգուտ չեն ստացել դպրոցն ու աշակերտությունը. ո՛չ ծրագիրն է էական փոփոխության ենթարկվել, ո՛չ դասագրքերն են բարելավվել, ո՛չ գրականության դասավանդման որակն է բարձրացել և ոչ էլ աշակերտները բավականաչափ հիմնավոր գիտելիքներ են ձեռք բերել այդ առարկայից։ Որո՞նք են այս տխուր իրողության պատճառները, և ո՞րը անմխիթար վիճակից դուրս գալու ելքը. այս հարցերն է իր առջև դնում հոդվածի հեղինակը և պատասխանում յուրովի։*

*Ընկեր Աթայանը հայ գրականության դասավանդման այժմյան անբավարար վիճակի պատճառն, ամենից առաջ, համարում է շատ ուսուցիչների մեթոդական և գիտա-առարկայական անպատրաստությունը։ Միանգամայն ճիշտ է, ինչ խոսք. մեր շարքերում, դժբախտաբար, դեռևս կան շատ ուսուցիչներ, որոնք, չունենալով անհրաժեշտ գիտելիքներ գրականության տեսությունից, գրաքննադատությունից ու գրականության պատմությունից, դասի պրոցեսում պարզաբանում ու վերլուծում են միայն և միայն գեղարվեստական ստեղծագործության գաղափարական բովանդակությունը (թեև գաղափարը և բովանդակությունը այստեղ կարելի է նույն նշանակությամբ հասկանալ)։ Այսպիսի պարագայում, անտարակույս, հնարավոր չի լինում հարկ եղածին չափ գիտելիքներ տալ գեղարվեստական երկի լեզվի և ոճի, պատկերավոր և արտահայտիչ խոսքի, երկի գրական-գեղարվեստական և այլ արժանիքների մասին։ Կան այսպիսի ուսուցիչներ, այս անառարկելի փաստ է։ Նրանց առկայությունը պայմանավորված է մի շարք հանգամանքներով. ոմանք մանկավարժության բնագավառն են ոտք դրել անգործությունից, պարապությունից նեղվելով։ Ուսուցիչ լինելը այդպիսիների ներքին մղումը, կոչումը չէ, և դպրոցի համար դրանք պատահական մարդիկ են։ Ոմանք, ավարտելով ինստիտուտը, դպրոց են եկել մասնագիտական թույլ պատրաստությամբ, տեղերում էլ ինքնակրթությամբ չեն լրացրել իրենց ուսման պակասը, չեն կատարելագործել ուսուցման մեթոդները և ամենևին չեն հոգում աշակերտների ինքնուրույնության, ստեղծագործական կարողությունների զարգացման համար։ Ի՞նչ է անհրաժեշտ, ուրեմն։ Մեր կարծիքով, նախ՝ ուսուցիչների կատարելագործման հանրապետական ինստիտուտի, ինչպես նաև համալսարանի ու մանկավարժական ինստիտուտների համապատասխան ամբիոնների կարող ուժերի միջոցով պետք է այդպիսի ուսուցիչներին սովորեցնել գրականության դասավանդման օգտակար ու շահեկան մեթոդները. կարճ ասած՝ դաս տալ սովորեցնել և հետո նրանցից պահանջել իսկական աշխատանք, թե չէ՝ չիմացողից ի՞նչ պահանջես։ Այժմ էլ կան ինստիտուտների այնպիսի շրջանավարտներ, որոնք թեև առարկան քիչ թե շատ գիտեն, սակայն դժվարանում են դասավանդել։ Այդպիսիների մասին հեգնանքով ասում են. «Սա ավելի շուտ գիտական աշխատող կարող է դառնալ, քան ուսուցիչ»։*

*Եվ, եթե ուսուցիչը ո՛չ ընդունակ է կատարելագործվելու, ո՛չ էլ կարող է հասնել իր կոչման բարձրությանը, ավելի լավ է այդպիսինից ազատվել և որքան շուտ, այնքան լավ։ Այլ ասպարեզում գուցե նա հաջողությունների հասնի։*

*Հարգելի հոդվածագիրը գրականության դասավանդման ներկա վիճակի պատճառներից մեկն էլ համարում է դպրոցական ծրագրերի ու դասագրքերի անբավարարությունը։ Այո՛, ծրագրերում ու դասագրքերում էլ քիչ չեն թերությունները։ Միջնակարգ դպրոցի գրականության ծրագրերից դուրս են մնացել վերածնության շրջանի մեր հանճարեղ բանաստեղծ Գր. Նարեկացին, առակագիրներ Մխիթար Գոշն ու Վարդան Այգեկցին, ապա՝ Շահազիզն ու Ծերենցը, Սրբուհի Տյուսաբն ու Հովհ. Հովհաննիսյանը, Վրթ. Փափազյանն ու Երվանդ Օտյանը, Սիամանթոն ու Ռ. Սևակը և մի շարք այլ հեղինակներ, որոնց անուններն են միայն թվարկվում։ Սա, իհարկե, ծրագրից բխող թերություն է։ Եթե աշակերտը միջնակարգ դպրոցն ավարտելիս ծանոթ չէ մեր այսպիսի գրողների հայտնի ստեղծագործություններին, այլևս ի՞նչ կարող ենք ասել նրա ընդհանուր զարգացման մասին։ Մեր կարծիքով, անհրաժեշտ է ուսումնական պլանում ավելացնել հայ գրականության դասաժամերի թիվը, դրանով իսկ հնարավորություն ընձեռելով ուսուցչին՝ պատշաճ ձևով ավանդելու մեր բազմադարյան գրականությունը։*

*Ընկ. Աթայանն իրավացի է նաև այն հարցում, որ ծրագրով նախատեսված ուսուցանվող երկը և՛ մատչելիությամբ, և՛ հետաքրքրականությամբ պետք է համապատասխանի տվյալ տարիքի երեխաների մտավոր զարգացմանը։ Այս ավելի շուտ վերաբերում է, հատկապես, III—VII դասարանի աշակերտներին, քանի որ տվյալ դասարանի հայրենի գրականության դասագրքերում կան բազմաթիվ թարգմանական տեքստեր, որոնք ո՛չ գեղարվեստական խոսքի հուզականություն ու հմայք ունեն և ո՛չ էլ գեղեցկի զգացում են առաջացնում ընթերցողների, ներկա դեպքում՝ աշակերտների մեջ։ Սակայն, հոդվածագրի այս տեսակետը չպետք է աններկայորեն տարածել նաև VIII—X դասարանների աշակերտների վրա։ Ինչո՞ւ։ Որովհետև տվյալ դասարաններում ոչ թե պետք է ուսուցանել այն, ինչ հետաքրքրում է աշակերտներին և ձեռնտու կամ հեշտ է նրանց համար, այլ այն, ինչ նախատեսում է գրականության դպրոցական ծրագիրը՝ ելնելով հարուստ գրականության անսպառ գանձարանից։ Հակառակ դեպքում, եթե հաշվի առնենք բարձր դասարանների աշակերտների հետաքրքրասիրությունը և թողնենք աշակերտների կամքին, նրանք արկածային ու գիտաֆանտաստիկ վեպերից այն կողմ չեն ցանկանա անցնել, քանի որ այդ տարիքի պատանիները, ինչպես հոդվածագիրն է նշում, ընդունակ են տարվելու կենսաթրթիռ իրողություններով ու երևույթներով։ Պարզ չէ՞, որ IX դասարանի աշակերտը ավելի շուտ կցանկանա կարդալ Րաֆֆու* Խաչագողի հիշատակարանը*, քան* Սամվել *հուշակավոր վեպը։*

*Անվիճելի ճշմարտություն է նաև հոդվածագրի այն դիտողությունը, որը վերաբերում է ծրագրով ուսումնասիրվելիք յուրաքանչյուր գեղարվեստական երկի բազմակողմանի վերլուծությանը։ Հոդվածագիրն իրավացիորեն գտնում է, որ ուսուցիչը չպետք է բավարարվի միայն այս կամ այն երկի բովանդակությունը պատմելով ու վերապատմելով, այլ պարտավոր է բազմակողմանիորեն պարզել «ամեն մի երկի յուրահատկությունը՝ լեզվի, ոճի, պատկերների, արտահայտչական միջոցների, տրամաբանական կառուցվածքի, հոգեբանական բախումների վերլուծման միջոցով և այլն» (*Լենինյան ուղիով*, № 10, էջ 104)։ Սակայն այս հարցերը պատշաճ բացատրություն չեն ստացել միջնակարգ դպրոցի գործող դասագրքերում, որի հետևանքով և՛ շատ ուսուցիչներ, և՛ աշակերտներ չեն կարողանում գեղարվեստորեն արժեքավորել այս կամ այն գրական ստեղծագործությունը, չեն տարբերում իսկական արվեստի գործը միջակությունից, հուզաթաթավ երկը՝ անհույզ, չոր ու ցամաք փաստագրությունների շարան ներկայացնող երկից։ Ո՞րն է գրքեր որակելու չափանիշը։*

*Այս հարցի պատասխանը ո՛չ դասագրքերում կա և ոչ էլ մենք ենք սովորեցնում աշակերտներին, այդ իսկ պատճառով նրանք հաճախ*

անարվեստ ու պարզունակ, հեքիաթանման գրքերը ավելի լավ են համարում, քան իսկական արվեստի գործերը։

Ընկ. Աթայանը, քննադատելով հայ գրականության դպրոցական ծրագրերը, զարմանքով նշում է, որ աշակերտները VII դասարանում, ծրագրի համաձայն, ուսումնասիրում են Աբովյանի, Նալբանդյանի, Պատկանյանի, Դուրյանի, Պռոշյանի, Աղայանի, Րաֆֆու ստեղծագործությունները (33 դասաժամ) և նույն հեղինակների գրական գործերին անդրադառնում են երկրորդ անգամ՝ IX դասարանում (40 դասաժամ)։ Ինչո՞ւ զարմանալ. VII դասարանում տվյալ հեղինակների ստեղծագործություններն անցնում ենք որպես գրական ընթերցանության նյութ (կարդալ, պատմել, անգիր ասել), իսկ IX դասարանում բազմակողմանի վերլուծում ենք դրանք, ցույց տալիս գրվածքի թեման, գաղափարը, գեղարվեստական պատկերավորման և արտահայտչական միջոցները, բացահայտում լեզվի և ոճի, գեղարվեստական մյուս առանձնահատկությունները և այլն։ Բացի այդ, VII դասարանում անցածը դարձնում ենք այն նախագիտելիք-պատվանդանը, որի վրա խարսխվում ու ամրապնդվում են IX դասարանում անցածները։ Եթե մտածենք ընկեր Աթայանի նման, ուրեմն IV դասարանի հայոց լեզվի դասընթացից կամ ծրագրից դուրս պիտի հանենք նախադասություն, գոյական, ածական, թվական անունները, դերանունը, բայը և այլն, քանի որ դրանք անցնում ենք նաև բարձր դասարաններում։ Հասկանալի է, որ ցածր դասարաններում ծանոթացնում ենք տվյալ առարկայի տարրական գիտելիքներին ու հասկացություններին, իսկ բարձր դասարաններում անհրաժեշտության չափով ուսումնասիրում տվյալ առարկան։ Ուրեմն, հարգելի ընկ. Աթայան, սա և՛ «մանկավարժական առումով, և՛ մարդկային պարզ բանականության տեսակետից»,—ինչպես դուք եք ասում,—ոչ թե անհեթեթություն է, այլ՝ փորձված, ստուգված, գործնականում իրեն արդարացրած անհրաժեշտություն։

Ընկ. Աթայանի դիտողությունները VIII և IX դասարանների հայ գրականության դասագրքերի վերաբերյալ ընդհանուր առմամբ պետք է համարել ճիշտ։ Սակայն X դասարանի Սովետահայ գրականություն դասագրքի մասին խոսելիս, թող ներվի ինձ ասել՝ հոդվածագրի ոգևորությունը սահմանն անցել է այն աստիճան, որ նա գրում է, թե դասագիրքը պրիմիտիվ է «թե՛ ընդհանուր գրականագիտական առումով, թե՛ առանձին երկերի բնութագրմամբ, թե՛ կյանքի ու գրականության երևույթների համեմատություններով, թե՛ կառուցվածքով, թե՛ լեզվով։ Որքա՛ն ցավալի է,—շարունակում է հոդվածագիրը,—որ վաթսունական թվականներին մեր միջնակարգ դպրոցն ավարտող աշակերտներին իբրև հայ գրականության ձեռնարկ հրամցվող այս գրքի (VI հրատարակություն) շատ մասեր իրենց գիտական-գրական մակարդակով չեն բարձրանում քսանական թվականներին անվարժ ձեռքով գրված գրախոսականներից» (Լենինյան ուղիով, № 10, էջ 106)։

Այս տողերը կարդալիս՝ միամիտ մարդիկ այն կարծիքը կկազմեն, թե ընկեր Աթայանից առաջ ոչ մի գրող, ոչ մի գրականագետ կամ մանկավարժ, լուսավորության մինիստրության ոչ մի ղեկավար աշխատող չի կարդացել, չի ծանոթացել այդ դասագրքին, կամ, եթե կարդացել է, չի հասկացել լավ կամ ստվերոտ կողմերը։ Գուցե գրքի խմբագի՞րն էլ չի կարդացել։ Թվում է, թե միայն ընկ. Աթայանն է ընդունակ՝ բոլորի աչքերը բացելու, դասագրքերը ոչնչացնող քննադատության ենթարկելու։ Անկասկած արդարամտությունը թույլ է տալիս մեզ ասելու, որ նշված դասագիրքն էլ, առաջին երկուսի նման, ունի թերություններ։ Դրանցից մեկը, ես կասեի՝ գլխավորը, այն է, որ նյութերի շարադրանքը սեղմ է, սխեմատիկ, բովանդակությունը՝ բարդ և չի համապատասխանում աշակերտների մտավոր զարգացման մակարդակին (հատկապես գրականության զարգացման տարբեր էտապների բնութագրությունները)։ Իսկ ակադեմիական թեմաները մեր գրականագետ գիտնականների՝ նույն հեղինակներին նվիրված ակադեմիական աշխատությունների սեղմ շարադրանքն են, ուստի և՝ աշակերտության համար դժվարամարս։ Ինչ վերաբերում է միայն Սովետահայ գրականություն դասագրքին, ես կասեի, որ այն, թերություններով հանդերձ, հաջողված դասագիրք է և աշակերտությանը քիչ գիտելիքներ չի տվել։

Ընկ. Աթայանը քննարկվող հոդվածի վերջին մասում առաջադրում է մի քանի սկզբունքային հարցեր և աշխատում յուրովի պատասխանել դրանց։ Նա այսպիսի մի հարց է տալիս. «Արդ» կլուծվե՞ր արդյոք հարցը, եթե մի փոքր բարելավվեր, ասենք թե, դասագրքերի գրական-գիտական-մանկավարժական որակը։ Ո՛չ, չէր լուծվի»,— աներկմիտ պատասխանում է նա և անցնում հետևյալ երկու հարցին.

«ա. Ի՞նչ պետք է անցնել արդյոք դպրոցում՝ գրականության պատմությո՞ւն, թե՞ գրականություն։

բ. Հարկավո՞ր է արդյոք դպրոցում գրականության (ինչպես, ասենք, մաթեմատիկայի) դասագիրք»։

Հոդվածագիրը վերջին հարցին բացասական պատասխան է տալիս, իսկ առաջին հարցին պատասխանում է այսպես.

«Գիտակ և լրջախոհ մարդիկ, աչքի ընկնող մանկավարժներ, արվեստագետներ, գրողներ, գտնում են, որ դպրոցում չպետք է անցնել գրականության պատմություն, այլ պետք է անցնել գրականություն իբրև այդպիսին» (ընդգծումը հեղինակինն է.—Ա. Հ., էջ 109)։ Այսպես է գտնում նաև ընկեր Աթայանը։ Եվ, իր տեսակետին հարողների թիվը շատացնելու բացահայտ միտումով, խոսում է գիտակ ու լրջախոհ արվեստագետների ու գրողների անունից։ Երևի ով չընդունի հոդվածագրի տեսակետը, նա պիտի անգիտակ ու թեթևամիտ համարվի։ Ինչևէ. ես հոդվածագրի տեսակետին համամիտ չեմ, և ահա թե ինչ նկատառումներով։

Առաջին. գրականության ուսուցման վիճակը և այդ առարկայից աշակերտների գիտելիքների որակը կարելի է բարելավել, եթե ուսուցիչների որակավորման հետ միասին բարելավվի ծրագրերի ու դասագրքերի գրական-գիտական որակը՝ մանկավարժության տեսանկյունից։

Երկրորդ. «Ի՞նչ պետք է անցնել արդյոք դըպրոցում՝ գրականությո՞ւն, թե՞ գրականության պատմություն». հարցը, ըստ էության, ճիշտ չի դրված։ Գրականությունը, եթե դա դպրոցական առարկա է, նույն գրականությունն է, մի գիտություն, որն ամփոփում է երեք ճյուղ կամ երեք բնագավառ՝ գրականության պատմություն, գրականության տեսություն և գրաքննադատություն։ Միջնակարգ դպրոցի Հայ գրականություն կոչվող դասագրքերը, պահպանելով հայ գրականության պատմական զարգացման հաջորդականությունը, միաժամանակ աշակերտներին գաղափար են տալիս գրականության տեսությունից ու գրաքննադատությունից (թեև ոչ խորապես)։ Իսկ եթե վերամշակվեն ու կատարելագործվեն այդ դասագրքերը, դառնան անխափան ու կատարելագործված զենք՝ իր գործին գիտակ, քաջահմուտ զինվորի՝ ուսուցչի ձեռքին, ուրեմն, դրանով հարցը կլուծվի։ Թե չէ՝ ի՞նչ է նշանակում գրականության պատմության փոխարեն պետք է ուսումնասիրվի ինչ-որ գրականություն՝ իբրև այդպիսին։ Այդ, ըստ ընկեր Աթայանի, նշանակում է՝ VII—X դասարաններում պետք է աշակերտներին կարդալ, սերտել տանք այս կամ այն գեղարվեստական երկը, ինչպես ինքն է նշում՝ փոքրածավալ ու համառոտ գրվածքները և դրանց վրա կատարենք գրական-տեսական վարժություններ։ Չէ որ, ինչպես ինքն է ասում, պետք է «...բազմակողմանիորեն պարզել ամեն մի երկի յուրահատկությունը՝ լեզվի, ոճի, պատկերների, արտահայտչական միջոցների, տրամաբանական կառուցվածքի, հոգեբանական բախումների վերլուծման միջոցով...» (էջ 104)։ Ընկեր Աթայանն իր այս խոսքերով ակամա հաստատում է իմ միտքը—պետք է այս դեպքում և՛ գրականության պատմություն անցնենք, և՛ գրականության տեսություն և «մի քիչ էլ»՝ գրաքննադատություն։ Այլևս ո՞ւր մնաց «գրականություն իբրև այդպիսին» հասկացողությունը։

Անջրպետ դնելով հայ հին ու միջնադարյան և նոր ու ժամանակակից գրականությունների միջև՝ ընկեր Աթայանն ասում է.

«Եթե նոր ու ժամանակակից գրականության ուսուցումը դպրոցում պետք է լինի գեղարվեստական տեքստի անմիջական ուսուցումը, ապա հին ու միջնադարյան գրականության դասընթացը կարող է մի փոքր այլ կերպ կառուցվել։ Այս դեպքում աշակերտներին կարող են հանձնարարվել փոքրածավալ, դյուրամատչելի տեքստեր միայն, այն էլ մեծ մասամբ աշխարհաբարի վերածված...» (էջ 108—109)։ Մի՞թե այս դեպքում ևս հին և միջնադարյան գրականության ուսուցումը դպրոցում չպետք է լինի «Գեղարվեստական տեքստի անմիջական ուսուցումը» (ընդգծումը մերն է—Ա. Հ.)։ Անտարակույս։

Ելնելով աշակերտների գերբեռնվածությունը վերացնելու անհրաժեշտությունից՝ ընկեր Աթայանը նշում է, որ միջնակարգ դպրոցում չպետք է ուսուցանվեն «թեկուզ մեծարժեք երկերը», սեղմ, շատ համառոտ պատմական տեսության ձևով պետք է ուսուցանվի հայ հին ու միջին դարերի գրականությունը, «պետք է զգալիորեն կրճատվի գրականության դասընթացը» և այլն, և այլն։ Եզրակացությունը պարզ է. գրականության դասավանդման դպրոցական այժմյան ծրագրերի պահանջների կատարումը պետք է թողնվի բուհերի համապատասխան ֆակուլտետներին։ Այստեղից էլ մի այլ եզրակացություն. միջնակարգ կրթություն ստացած և հետագայում այլ մասնագիտություն ընտրած գիտնականն անգամ չպետք է անհրաժեշտ պատկերացում ունենա մեր բազմադարյան գրականության մասին, մանավանդ որ բուհերի այլ ֆակուլտետներում ո՛չ հայոց լեզու են անցնում և ոչ էլ հայ գրականություն։ Օգտվելով առիթից՝ պետք է ասել նաև, որ միջնակարգ դպրոցի բարձր դասարաններում էլ հայոց լեզվի ժամեր չկան, որի հետևանքով աշակերտները լեզվական անբավարար գիտելիքներ ունեն և չեն կարողանում գրավոր կամ բանավոր խոսքով անսխալ արտահայտել իրենց մտքերը, գիտելիքները։

Ինչ վերաբերում է գրականության քրեստոմատիաների անհրաժեշտությանը, ապա այդ հարցում ընկ. Աթայանը միանգամայն իրավացի է։ Քրեստոմատիաներն անհրաժեշտ են և որքան շատ, այնքան լավ։

ԱՐՏ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Մարտունու շրջանի Ալիչալու գյուղի դպրոցի ուսմասվար, հայ գրականության ուսուցիչ

## ԱՐԵՎԵԼՅԱՆ ՃԱԿԱՏԻ ՀԱՅ ԶԻՆՎՈՐՆԵՐԻ ՄԱՐՏԱԿԱՆ ՕՐԳԱՆԸ

Զբաղվելով Սովետական Ռուսաստանում 1918—1921 թվականների կուսակցական և սովետական հայ մամուլի ուսումնասիրությամբ, մեզ հաջողվել է Մոսկվայում, Կարմիր Բանակի կենտրոնական պետական արխիվում հայտաբերել մի շարք փաստաթղթեր, որոնք ակնառու ցույց են տալիս Միջին Ասիայի քաղաքներից մեկում՝ Պոլտորացկում (Աշխաբադ) 1919 թվականին հայերեն հրապարակված Շեփոր թերթի գործունեությունը: Սակայն հայ պարբերական մամուլի բիբլիոգրաֆիայով զբաղվող հեղինակներն իրենց աշխատություններում երբեք չեն հիշատակել Շեփորի մասին: Ճիշտ է, մեզ այժմ չի հաջողվել հայտաբերել թերթի հավաքածու, սակայն արխիվային փաստաթղթերի հետազոտությունը թույլ է տալիս կատարելու հետևյալ հաղորդումը:

1918 թվականի կեսերին հակասովետական ուժերն անգլո-ամերիկյան իմպերիալիստների աջակցությամբ քաղաքացիական կռիվ հրահրեցին նաև Միջին Ասիայում:

Սովետական կառավարությունը մեծ օգնություն ցույց տվեց Թուրքեստանի Հանրապետությանը. Ակտյուբինսկի կարմիր զորաբանակը Ցարիցինից ուղղվեց դեպի Կրասնովոդսկ, Թուրքեստանը մտցվեց պաշտպանության համառուսական պլանի մեջ: Կարմիր Բանակի հետ միասին Թուրքեստանի բազմազգ ժողովուրդները ոտքի ելան անգլիական ինտերվենտների ու ներքին հակահեղափոխական ուժերի դեմ: 1919 թվականի ապրիլին Արևելյան ճակատի Հարավային խումբը առանձնացվեց: Խմբի հրամանատարներ նշանակվեցին Մ. Ֆրունզեն և Վ. Կույբիշևը: Ստեղծվեց Հարավային խմբի քաղաքական բաժին՝ Դ. Ֆուրմանովի ղեկավարությամբ: Այսպիսով, ձևավորվեց Անդրկասպյան ճակատը: Կարմիր Բանակի ամրապնդման հետ մեկտեղ բարելավվում էին նաև նրա քաղաքական օրգանները: Անդրկասպյան ճակատում գործող զորամասերում կային տարբեր ազգությունների ներկայացուցիչներ (այդ թվում և շատ հայեր):

Ռազմաճակատի քաղբաժինը հրատարակում էր ռուսերեն, ադրբեջաներեն ինչպես և հայերեն թերթեր: Հայերեն Շեփոր թերթի առաջին համարը լույս է տեսել 1919 թվականի հուլիսի 25-ին Պոլտորացկ (Աշխաբադ) քաղաքում: Այն Անդրկասպյան ճակատի ռազմահեղափոխական խորհրդի քաղբաժնի օրգանն էր:

Կարճ կյանք է ունեցել Շեփորը (լույս է տեսել ընդամենը 29 համար), սակայն այն անգնահատելի գործ կատարեց Կարմիր Բանակի հայ մարտիկների և մերձճակատային ազգաբնակչության շրջանում: Թերթը հայ մարտիկներին ու հրամանատարներին դաստիարակում էր հեղափոխական կարգապահության ոգով, բարձր պատասխանատվության զգացումով, ժողովրդական բարիքների նկատմամբ հոգատարություն ցուցաբերելու սկզբունքով: Շեփորը որոշակի դեր խաղաց նաև մերձճակատային հայ ազգաբնակչության քաղաքական-դաստիարակչական աշխատանքների բարելավման ուղղությամբ:

Ս. ՍԱՐԳՍՅԱՆ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Զ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24

Տիրաժ 10513 Գինը 25 կոպ.:

ՎՖ 06064 Պատվեր 3078 Ստորագրված է տպագրության 26/XII 1966 թ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ:

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51:

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՄԱՆՈՒՉԱՐՅԱՆՑ Շ. Ն.—Վլադիմիր Իլյիչի գրադարանում: Եր., Լույս հրատ., 1966, 132:

Այս գրքույկում Վ. Ի. Լենինի գրադարանավարուհին պատմում է 1920—1924 թթ. մեծ առաջնորդի հետ կապված հետաքրքրական իրադարձությունների մասին:

ՍՏՐՈՒՄԻԼԻՆ Ս. Գ.—Ակնարկներ Ռուսաստանի և ՍՍՀՄ տնտեսական պատմության: Մ., «Наука», 1966, 514 էջ:

Այս ծավալուն մենագրության մեջ ակադեմիկոս Ստրումիլինը ուսումնասիրել է Ռուսաստանի և ապա ՍՍՀՄ աշխատանքի վարձատրության, ավատական շրջանի ռենտայի չափերն ու ձևերը, Ռուսաստանում կապիտալիզմի զարգացման և արդյունաբերական հեղաշրջումն ու ճգնաժամը (1847—1907 թթ.), ՍՍՀՄ-ում ինդուստրիայի զարգացման և այլ հարցեր:

Ժամանակակից էկզիստենցիալիզմ: Քննադատական ակնարկներ: Մ., «Мысль», հրատ. 1966, 567 էջ:

Հեղինակները խորտակիչ քննադատության են ենթարկել էկզիստենցիալիզմը, կամ՝ գոյության փիլիսոփայությունը, որպես բուրժուական փիլիսոփայության ու գրականագիտության մեջ արդի իդեալիստական խավարամոլության ծայրահեղ հետադիմական ուղղություն, որը ձգտում է ոչնչացնել վստահությունը կյանքի, գիտության հանդեպ, գոյությունը համարելով անիմաստություն, հասարակական գործունեությունը՝ ապարդյուն մի բան, բարոյականությունը՝ սնանկություն և այլն: Հեղինակները քննադատել են Գերմանիայում, Ֆրանսիայում, Իտալիայում, ԱՄՆ-ում և այլուր լույս տեսած էկզիստենցիալիզմին նվիրված աշխատությունները:

ԿՈՒԶՆԵՑՈՎ Գ. ՅԱ.—Աշխատանքի նյութական խթանումը կոլտնտեսություններում: Մ., «Мысль», 1966, 184 էջ:

ՌՍՖՍՀ-ի մի շարք կոլտնտեսությունների փորձի հիման վրա, հեղինակը նշել է աշխատանքի հիմնական ու լրացուցիչ վարձատրման առկա ձևերի կատարելագործման ուղիները, ելնելով ՍՄԿԿ XXIII համագումարի և Կենտկոմի պլենումների որոշումներից:

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ն. Վ.—Կարմիր բլուրի Ուրարտական նոր արձանագրությունները: Առաջաբան՝ Բ. Բ. Պիոտրովսկու: Ե., ԳԱ հրատ., 1966, 132 էջ (ռուսերեն):

Ուսումնասիրության մեջ վերլուծված և վերծանված են Կարմիր բլուրում հայտնաբերված արձանագրությունները, որոնք պատմում են 8-րդ դարում մ. թ. ա. Էրեբունիի՝ Երևանի կառուցման մասին:

ԲԵԼԵՆԿԻ Մ. Ս.—Հրեական կրոնը: Մ., Քաղհրատ, 1966, 240 էջ:

Ընթերցող լայն մասսաների համար նախատեսված այս գիրքը մեծ չափով կօգնի նրանց, ովքեր հետաքրքրվում են կրոնի պատմությամբ և աթեիզմով:

ԳԱԼՍՏՅԱՆ Գ. Մ.—Դիցաբանական անունների և դարձվածքների համառոտ բացատրական բառարան: Եր., Լույս հրատ., 1966, 154 էջ:

Բացատրված են հայերենում եղած հունական, հռոմեական, եբրայական, ասորական, արաբական և այլ ազգերի դիցաբանական բառերն ու դարձվածքները, նշելով դրանց ծագումը:

ԳԻՆԸ 25 Կ.



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԻԶՈՏՈՊՆԵՐԸ ԵՎ ՍԻՐՏԸ

*Եթե հուսալի շարժիչի կոնկուրս անցկացվի, ապա այդտեղ առաջին տեղը անկասկած կգրավի մարդու սիրտը։ Այն ի վիճակի է առանց «կապիտալ նորոգման» աշխատելու շատ տարիներ։ Բայց ինչ անել եթե այդ մոտորը հանկարծ, ծանր հիվանդության հետևանքով չգործի։ Այդ դեպքում դիմում են էլեկտրական շարժիչով աշխատող մինիատյուր պոմպի օգնությանը։*

*Հետազոտողները ենթադրում են, որ այդ դեպքում կարող են օգնել էլեկտրական մարտկոցները, որոնք աշխատում են հատուկ ռադիոակտիվ իզոտոպներով, նրանց ճառագայթումը փոխանցվում է էլեկտրական հոսանքի։ Այդպիսի էլեմենտները կարող են աշխատել առանց երկար տարիներ փոխելու։*

## ՋՐԱՀԱՂՈՐԴԱԿ ՊԼԱՍՏԻԿԱՅԻՑ

*Շվեդական Սիգտունա քաղաքը մատակարարվում է ջրով՝ 4360 մ երկարություն ունեցող պլաստիկայից կառուցված խողովակի օգնությամբ, առանց միացումների։ Այդ խողովակը 14 սմ տրամագծով և 12,8 մմ պատերի հաստությամբ լճի հատակն է իջեցվել արճճյան բեռով, որը ջուր է ներծծում ստորջրյա աղբյուրներից։*

## ԱՌԱՆՑ ԾԽԻ ՈՒ ՄՐԻ

*Երկարամյա հետազոտությունների հետեվանքով հունգարական գիտնականները գտել են ածխային բրիկետներ պատրաստելու եղանակը, որոնք պրակտիկորեն վառվում են առանց ծխի ու մրի, կրճատելով վառելիքի մեջ ձյութի պարունակությունը ութից մինչև մեկ տոկոս։*

## ԻՆՉՊԵՍ ՊԱՀՊԱՆԵԼ ԵԼԱԿԸ

*Բուդապեշտի սնդի արդյունաբերության գիտա-հետազոտական ինստիտուտի փորձերը ցույց են տալիս, որ մրգերի ռադիոակտիվ ճառագայթումը դրանք հուսալի պաշտպանում են փչացումից։ Օրինակ, ճառագայթման ոչ մեծ դոզան թույլ է տալիս մեծացնել ելակի պահպանման ժամկետը փոխադրման ժամանակ 2—3 անգամ, առանց փոխելու արտաքին տեսքն ու համը։*

## ԼԱԶԵՐԸ ՔԻՄԻԱՅՈՒՄ

*Լազերը վաղուց են դադարել տեխնիկական նորություն լինելուց, դրանք օգտագործում են գիտության և արդյունաբերության մեջ։ Ըստ «Բելլ տելեֆոն լաբորատորիա» ֆիրմայի տվյալների արդեն հիմա քվանտային գեներատորներ կարելի է օգտագործել քիմիայում, ամենից առաջ, մի քանի մոնոմերների ֆոտոպոլիմերիզացիայի մեջ։ Մասնավորապես, պոլիստիրոլի ստացման ժամանակ լազերը ճառագայթած լուսային հոսքից կլանում են ֆոտոններ և վեր ածվում պոլիմերի, ըստ որում պոլիմերիզացիայի պրոցեսը ընթանում է շատ արագ։*

## ԹՈՒՂԹ ԵԳԻՊՏԱՑՈՐԵՆԻ ՑՈՂՈՒՆՆԵՐԻՑ

*Եգիպտացորենի ցողուններից կարելի է ստանալ բարձրորակ կերի ալյուր։ Բայց ցողունների մեջ պարունակվող ցելյուլոզան սննդարար արժեք չունի։ Հարավսլավական գիտնականները նախագծել են կոմբայն, որը եգիպտացորենը հավաքում է, ցողուններից անջատում ցելյուլոզան, իսկ ցողունները դարձնում ալյուր։ Այդ մեքենան մի ժամվա ընթացքում կարող է մշակել ավելի քան 400 կգ ցողուն։*

*Ցողուններից անջատված ցելյուլոզան նույնպես կարելի է օգտագործել, դա հումք է, առանձնապես, թղթի արդյունաբերության համար։*